# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ, 1980

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ»** («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ









# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

## ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԴԻՄԱՎՈՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն նշում է, որ երկրի կոմունիստները, բոլոր աշխատավորները հսկայական ոգևորությամբ և հայրենասիրական խանդավառությամբ ընդունեցին ՍՄԿԿ XXVI համագումարի հրավիրման մասին Կենտկոմի 1980 թվականի հունիսյան պլենումի որոշումը:

Սովետական մարդիկ միահամուռ պաշտպանում են կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությունը, իրենց անսասան վճռականությունն են արտահայտում հարվածային աշխատանքով ամրապնդելու երկրի տնտեսական և պաշտպանական հզորությունը:

Զարգացնելով Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձին նախապատրաստվելու ընթացքում իրենց հանդես բերած աշխատանքային ակտիվությունը, արտադրության առաջավորները, բրիգադների, տեղամասերի, ֆերմաների, արտադրամասերի, ձեռնարկությունների, կազմակերպությունների և միավորումների կոլեկտիվները ստանձնում են ավելի բարձր սոցիալիստական պարտավորություններ, մեծացնում իրենց ստեղծագործական ջանքերը: Ընդլայնվում է «Հարվածային աշխատանքով եզրափակենք հնգամյակը: Արժանավայել դիմավորենք ՍՄԿԿ XXVI համագումարը» նշանաբանով համաժողովրդական շարժումը:

Մոսկվայի շատ ձեռնարկությունների աշխատավորները հանդես են եկել 1980 թվականի առաջադրանքը մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 63-րդ տարեդարձը կատարելու, տասներորդ հնգամյակը հաջողությամբ ավարտելու, 1981 թվականին կայուն աշխատանք ապահովելու նախաձեռնությամբ: Լենինգրադի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ղազախստանի, Ուզբեկստանի, Ուրալի, Սիբիրի, այլ հանրապետությունների, մարզերի, շրջանների և քաղաքների առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները որոշել են շարունակել լենինյան հարվածային հերթափոխը, ՍՄԿԿ XXVI համագումարը դիմավորել աշխատանքային մեծ նվաճումներով, լավ հիմք ստեղծել տասնմեկերորդ հնգամյակում կայուն աշխատանքի համար: Դնեպրոպետրովսկի մարզի բանվորներն ու ծառայողները պարտավորվել են արտապլանային ամբողջ արտադրանքը թողարկել նյութական և աշխատանքային ռեսուրսների խնայողության հաշվին: Երկրի կոմերիտական կազմակերպություններում հայտարարված է երիտասարդության հարվածային գործերի համամիութենական էստաֆետ:

Մրցողները գլխավոր ուշադրությունը կենտրոնացնում են առավել մեծ գործնական արդյունքների ձեռքբերման, ՍՄԿԿ XXV համագումարի, Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան և 1980 թվականի հունիսյան պլենումների

որոշումների, կուսակցության տնտեսական քաղաքականության հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումներում ու ելույթներում բովանդակվող դրույթների ու հետևությունների կենսագործման վրա: Է՛լ ավելի են զարգանում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հավանությանն արժանացած հայրենասիրական նախաձեռնությունները:

Բոլոր կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ պարտականությունն է՝ գլխավորել նախահամագումարյան համաժողովրդական մրցությունը, սովետական մարդկանց աշխատանքային և քաղաքական ակտիվությունը նպատակամղել տնտեսական և կուլտուրական շինարարության կոնկրետ խնդիրների լուծմանը: 1980 թվականի և ամբողջ տասներորդ հնգամյակի պլանի հաջող կատարումը ամուր հիմք կստեղծի տասնմեկերորդ հնգամյակում ժողովրդական տնտեսության զարգացման, մեր երկրի տնտեսական և սոցիալական հետագա առաջադիմության համար:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է.

1. Հավանություն տալ աշխատավորական կոլեկտիվների արտադրության առաջավորների նախաձեռնությանը, որոնք ստանձնել են ավելի բարձր սոցիալիստական պարտավորություններ և հարվածային հերթափոխի են կանգնել ՍՄԿԿ XXVI համագումարն արժանավայել դիմավորելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի կոմունիստներին, կոմերիտականներին, աշխատավորներին կոչ է անում հետևել մրցության նախաձեռնողների օրինակին և կուսակցության համագումարը նշանավորել աշխատանքային բարձր արդյունքներով: Ընդսմին ելնել ընկեր Լ. Ի. Բրեժնևի այն ցուցումից, որ անհրաժեշտ է առավելագույն եռանդ գործադրել՝ հաջողությամբ կատարելու և գերակատարելու տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարվա պլանը, ժամանակին գործարկելու և յուրացնելու գործարկվելիք օբյեկտների արտադրական կարողությունները, կրճատելու թերավարտ շինարարության և չտեղադրված սարքավորումների ծավալը, ապահովելու ժողովրդական տնտեսության կայուն աշխատանքը 1981 թվականին՝ տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարում:

2. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին և մարզկոմներին, ՀԱՄԿԽ-ին և ՀամԼԿԵՄ Կենտկոմին, կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին՝ քաղաքական, կազմակերպչական և դաստիարակչական աշխատանքը նպատակամղել նախահամագումարյան մրցության մեջ բանվորների, կոլտնտեսականների, գիտնականների, ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների լայն ներգրավմանը:

Հարկավոր է նախահամագումարյան մրցության ընթացքում ամենայն հաստատակամությամբ պայքարել արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու, աշխատանքի արտադրողականության աճն արագացնելու, խնայողության ռեժիմը խստիվ կիրառելու, աշխատանքային և պետական կարգապահությունն ամրապնդելու համար:

Սոցիալիստական մրցությունը պետք է ըստ ամենայնի նպաստի գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը: Գիտնականների, մասնագետների, գյուտարարների և ռացիոնալիզատորների ջանքերը նպատակամղել արտադրության տեխնիկական կատարելագործման և ինտենսիվացման արմատական պրոբլեմների լուծմանը, մեքենայացման և ավտոմատացման նորագույն միջոցների, առաջադիմական տեխնոլոգիայի, աշխատանքի գիտական կազմակերպման մշակմանը և արմատավորմանը:

Բոլոր կոլեկտիվներում մշակել և իրականացնել ՍՄԿԿ XXVI համագումարն արժանավայել դիմավորելու կոնկրետ միջոցառումներ: Մինիստրությունների և գերատեսչությունների, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների հատուկ հոգածության առարկան պետք է լինի ածխի, նավթի, գազի, մետալուրգիական, մեքենաշինական



արդյունաբերության, էներգետիկայի հետագա զարգացման ապահովումը, ժողովրդական սպառման ապրանքների տեսականու ընդլայնումը և դրանց որակի բարձրացումը, տրանսպորտի և կապիտալ շինարարության աշխատանքի բարելավումը:

Կուսակցական, սովետական, գյուղատնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, գյուղի աշխատավորները պետք է ամեն բան անեն բերքը սեղմ ժամկետներում և անկորուստ հավաքելու, պետությանը հացահատիկի և տեխնիկական կուլտուրաների, անասնապահական մթերքների վաճառքի պլաններն ու պարտավորությունները կատարելու, կեր կուտակելու, անասունների ձմեռումը կազմակերպված անցկացնելու համար:

3. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ընդգծում է, որ հարկավոր է ամեն կերպ ուժեղացնել սոցիալիստական մրցության, կոմունիստական աշխատանքի շարժման ներգործությունը յուրաքանչյուր աշխատավորի, յուրաքանչյուր կոլեկտիվի և յուրաքանչյուր ճյուղի կողմից վերջնական բարձր արդյունքների ձեռքբերման, դաստիարակչական խնդիրների լուծման վրա: Հարկավոր է խնամքով մոտենալ դրական փորձին, ակտիվորեն տարածել այն, քննադատաբար նայել տնտեսավարման պրակտիկայում տեղ գտած վրիպումներին և թերություններին, միջոցներ ձեռնարկել դրանց վերացման համար:

Հատուկ ուշադրություն դարձնել ստանձնած պարտավորությունների և հանդիպական պլանների հաջող կատարման համար անհրաժեշտ պայմանների ստեղծմանը, տնտեսավարման մեթոդների կատարելագործմանը: Ավելի լավ օգտագործել մրցության մասնակիցների բարոյական և նյութական խրախուսման բոլոր ձևերը:

4. Մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցներին՝ օպերատիվ և գործարար կերպով լուսաբանել նախահամագումարյան սոցիալիստական մրցության ընթացքը, ավելի լավ բացահայտել ու տարածել ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարող աշխատավորական կոլեկտիվների, արտադրության առաջավորների փորձը:

---

# Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

## «ՊՐԱՎԴԱՅԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԻՆ

1. ՀԱՐՑ: Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության 5-րդ տարեդարձի առթիվ Դուք ինչպե՞ս եք գնահատում Հելսինկիի Եզրափակիչ ակտի ազդեցությունը Եվրոպայի իրադրության զարգացման վրա:

ՊԱՏԱՍԽԱՆ: Այդ խորհրդակցության և նրա արդյունքների Սովետական Միության գնահատականը միանշանակ է: Այն դրական է: Բարդացած միջազգային իրադրության պայմաններում Հելսինկիի արդյունքների նշանակությունը ոչ թե նվազում է, այլ անում:

Հուզմունքով եմ հիշում 1975 թվականի օգոստոսի 1-ի հետմիջօրեն: Այն ժամանակ «Ֆինլանդիա» կոնգրեսների պալատում եվրոպական 33 պետությունների, ԱՄՆ-ի և Կանադայի ղեկավարները կողք-կողքի նստեցին նույն սեղանի շուրջը և իրենց ստորագրություններով վավերացրին Եզրափակիչ ակտը: Դա մեծ հույսերի օր էր ժողովուրդների համար: Դա նաև ապագային միտված ռեալիստական հայացք էր, որը զուրկ չէր տագնապներից այն բանի համար, թե այն ինչպիսին կլինի 5 տարի հետո կամ մեկ տասնամյակ անց:

Եվ ահա այսօր է՛լ ավելի պարզ է, որ Եզրափակիչ ակտի ծնունդը նշանավորեց ետպատերազմյան Եվրոպայի պատմության խոշոր իրադարձությունը, որը լայն հնարավորություններ է ընձեռում խաղաղ զարգացման համար, որին կոչված է ծառայելու այդ փաստաթուղթը:

Հելսինկիի համաեվրոպական խորհրդակցության ամբիոնից իմ ունեցած ելույթում ընդգծվեց, որ նրա որոշումները չպետք է երերվեն առաջին ամպրոպից: Մենք բազմիցս նախազգուշացրել ենք, և դա այնուհետև հաստատվեց. լարվածության թուլացման քաղաքականության մեջ կարող են լինել իր մակընթացություններն ու տեղատվությունները: Բայց այդ ամենով հանդերձ, կարելի է Եզրափակիչ ակտը լիովին համեմատել լավ ալեհերձի հետ, որը դիմակայում է նրան, ինչը ողողում է լարվածության թուլացման հիմքերը:

2. ՀԱՐՑ: Դուք արդյո՞ք այն կարծիքին եք, որ Եզրափակիչ ակտը այսուհետև էլ կունենա իր բարերար ներգործությունը:

ՊԱՏԱՍԽԱՆ: Այո՛, այդ կարծիքին եմ:

Այդ փաստաթուղթը եզակի է, ինչպես որ եզակի էր բուն համաեվրոպական խորհրդակցությունը: Ես կասեի այսպես. դա երկրորդ համաշխարհային պատերազմի սարսափները ապրած սերնդի ուղերձն է նրանց, ում համար պետք է հուսալիորեն ապահովված լինի մարդու **առաջնագույն իրավունքը՝** կյանքի, խաղաղության իրավունքը:

Եթե եվրոպական զարգացման ընթացքին նայենք ոչ թե տվյալ պահի պրիզմայի միջով, այլ պատմական հեռանկարով, ապա Հելսինկիից ետ գնացող ճանապարհ չկա: Եզրափակիչ ակտը, ինչպես որ ՄԱԿ-ի կանոնադրությունը, դյուրացնում է միջազգային հարաբերություններում մարդկային քաղաքակրթության անցումը նոր, ավելի բարձր մակարդակների:



Ահա թե ինչու Եզրափակիչ ակտի ստորագրման օրը կարող էր դառնալ «Եվրոպայի օրը», նման այն բանին, ինչպես որ իրենց հիշարժան օրերն ունեն մյուս մայրցամաքների ժողովուրդները: Բայց այդ օրը միայն տոն չէ: Այն միաժամանակ նաև կոչ է այն բանի, որ լարվածության թուլացումը և խաղաղությունը հաստատվեն ամուր կերպով:

Այժմ մոտակա խնդիրն է՝ կոնստրուկտիվ կերպով անցկացնել և ծանրակշիռ արդյունքներով ավարտել համաեվրոպական խորհրդակցության մասնակից պետությունների ներկայացուցիչների Մադրիդի հանդիպումը, ապահովել Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման և զինաթափման կոնֆերանսի գումարումը: Սովետական Միությունը պատրաստ է արժանի ավանդ ներդնել այդ երկու համաժողովների աշխատանքում:

Գլխավո՛րը ներկայումս և ապագայում Եվրոպայի համար, հետևաբար և ամբողջ աշխարհի համար, ռազմական սպառնալիքի նվազեցման ուղի գտնելն է: Իսկ այդ խնդիրը անհնար է լուծել առանց ռեալ տեղաշարժերի սպառազինությունների մրցավազքի սահմանափակման բնագավառում:

Եվ այսպես, լարվածության թուլացում, համագործակցություն, անվտանգություն՝ այսպիսին է մեր կուսակցության և սովետական պետության գլխավոր գիծը եվրոպական գործերում, ինչպես և ամբողջությամբ վերցված՝ համաշխարհային քաղաքականության մեջ:

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, քննարկելով 1980 թվականի հուլիս— օգոստոսին Ղրիմում ՀՍԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Կադարի, Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՉՍՍՀ-ի պրեզիդենտ Գ. Հուսակի, ԼՄԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Է. Գերեկի, Ռումինական կոմկուսի գլխավոր քարտուղար, ՌՍՀ-ի պրեզիդենտ Ն. Չաուշեսկուի, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, ԲԺՀ-ի Պետական խորհրդի նախագահ Տ. Ժիվկովի, ԳՍՄԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ԳԴՀ-ի Պետական խորհրդի նախագահ Է. Հոնեկերի, ԼԺՀԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ԼԺԴՀ-ի պրեմիեր մինիստր Ք. Ֆոմվիհանի, ՄԺՀԿ Կենտկոմի առաջին քարտուղար, ՄԺՀ-ի Ժողովրդական մեծ խուրալի նախագահության նախագահ Յու. Ցեդենբալի հետ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ունեցած հանդիպումների արդյունքները, բարձր է գնահատում այդ հանդիպումների նշանակությունը բոլոր բնագավառներում սոցիալիստական պետությունների փոխգործողության խորացման համար և լիովին հավանություն է տալիս ընկեր Լ. Ի. Բրեժնևի կատարած աշխատանքին:

Սովետա-վիետնամական բարձր մակարդակի բանակցությունների հետ միասին, որոնք տեղի ունեցան ս. թ. հուլիսի սկզբին Մոսկվայում, Ղրիմի 1980 թվականի հանդիպումները դարձան նոր, խոշոր փուլ սոցիալիստական ընկերակցությունն ամրապնդելու գործում:

Ղրիմի հանդիպումների ընթացքում հանգամանորեն քննարկվեցին եղբայրական սոցիալիստական երկրների հետ ՍՍՀՄ-ի երկկողմ հարաբերությունների վիճակն ու զարգացման հեռանկարները: Առաջիկա տարիներին նախատեսված է զգալի քայլեր իրականացնել սոցիալիստական պետությունների իրավահավասար փոխշահավետ տնտեսական համագործակցության հետագա ընդլայնման ուղղությամբ: Ընդ որում, հատուկ ուշադրություն է դարձվելու ժողովրդատնտեսական կապերի արդյունավետությանը, համաձայնեցված երկարաժամկետ ծրագրերի հիման վրա արտադրության մասնագիտացման ու կոոպերացման դերի բարձրացմանը: Այդ կապերը կխթանեն ազգային էկոնոմիկաների զարգացումը, կնպաստեն ժողովրդի բարեկեցության բարձրացմանը, սոցիալիստական ու կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանը:

Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման կատարելագործումն ու խորացումը, Տնտեսական փոխօգնության խորհրդի շրջանակներում սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կուրսի հետևողական իրականացումը, փոխադարձ կապերի բազմապատկումը՝ սա է սոցիալիստական պետություններին սոցիալ-տնտեսական զարգացման նոր բարձունքներ տանող ճիշտ ուղին:

Ղրիմի 1980 թվականի հանդիպումները, ինչպես որ Լեհաստանի մայրաքաղաքում Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի ավելի վաղ տեղի ունեցած խորհրդակցությունը, ծանրակշիռ կերպով հաստատում են, որ սոցիալիզմի երկրները իրենց արտաքին քաղաքականության մեջ ամենից բարձր են դասում խաղաղության պահ-



պանման ու ամրապնդման շահերը, բոլոր ժողովուրդների ազատ ու անկախ զարգացման իրավունքների հաստատումը:

Առաջ մղել լարվածության թուլացման պրոցեսը, նոր շունչ հաղորդել դրան, ապահովել ռեալ շրջադարձը սպառազինությունների մրցավազքից դեպի զինաթափում, հասնել գոյություն ունեցող կոնֆլիկտային իրավիճակների քաղաքական արդարացի կարգավորման՝ ահա այն գլխավոր խնդիրները, որոնց լուծմանն է նպատակամղված սոցիալիստական ընկերակցության երկրների արտաքին քաղաքականությունը:

Միջազգային իրադրությունը շարունակում է մնալ բարդ: Դրա պատճառը ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մյուս երկրների գործողություններն են, որոնք մտադրվել են խախտել զինված ուժերի ստեղծված մոտավոր հավասարությունը, ապահովել իրենց գերազանցությունը սոցիալիստական ընկերակցության նկատմամբ: Միջազգային հարաբերությունների վրա բացասական ազդեցություն է ունենում իմպերիալիստների և պեկինյան հեգեմոնիստների գործակցությունը, որոնք կողմնորոշվում են դեպի միջազգային լարվածության հետագա ուժեղացում՝ հանուն իրենց մեծապետական, շովինիստական դիտավորությունների իրականացման:

Սոցիալիստական երկրները հանդես են գալիս սոցիալական տարբեր սիստեմների պատկանող պետությունների քաղաքական երկխոսությունը շարունակելու և խորացնելու օգտին: Նրանք հանդես են գալիս այն բանի օգտին, որ երկխոսությունը առարկայորեն գործնական բնույթ ունենա, ընդգրկի արդի միջազգային կյանքի արմատական պրոբլեմները: Եվրոպայում, Ասիայում, աշխարհի մյուս մասերում չկան այնպիսի պրոբլեմներ, որոնք սոցիալիստական երկրները պատրաստ չլինեին կարգավորելու բանակցությունների սեղանի շուրջ:

Այսպիսին է սոցիալիստական երկրների մոտեցումը նաև զինաթափմանը՝ մեր օրերի ամենահիմնական պրոբլեմին:

Սպառազինությունների մրցավազքին վերջ տալ հնարավոր է: Հայտնի է, որ Սովետական Միությունը հանդես է եկել խոշոր նախաձեռնություններով, առաջարկելով անհապաղ բանակցություններ սկսել Եվրոպայում միջին հեռավորության հրթիռամիջուկային զենքի շուրջը՝ այդ հարցը օրգանապես շաղկապելով առաջավոր բազավորման ամերիկյան միջուկային միջոցների հետ: ՍՍՀՄ-ը Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերն ու սպառազինությունները կրճատելու բանակցություններում կոնկրետ առաջարկություններ արեց, որոնք հաշվի են առնում այդ բանակցությունների արևմտյան մասնակիցների դիրքավորումը:

Սովետական նոր նախաձեռնություններին Արևմուտքի դրական արձագանքը, ռազմական լարվածության թուլացման նրա պատրաստակամությունը ճանապարհ կհարթեին սպառազինությունների մրցավազքի ռեալ սահմանափակման համար, խթան կհանդիսանային այդ ուղղությամբ ավելի հեռուն գնացող միջոցառումների մշակման և իրականացման համար:

Ղրիմում հստակորեն հաստատվեց սոցիալիստական ընկերակցության երկրների կոնստրուկտիվ մոտեցումը Մադրիդում կայանալիք հանդիպման նկատմամբ: Մադրիդում գլխավոր ջանքերը պետք է կենտրոնացվեն Հելսինկիում ընդունված Եզրափակիչ ակտի բոլոր բաժինների դրույթների իրացման ուղղությամբ գործնական քայլերի համաձայնեցման վրա: Առանձնապես կարևոր նշանակություն կունենար ռազմական լարվածության թուլացման ու զինաթափման համաեվրոպական կոնֆերանս անցկացնելու շուրջը համաձայնության հասնելը:

Սոցիալիստական ընկերակցությունը նպատակասլացորեն հանդես է գալիս բոլոր ժողովուրդների անկախության ու ազգային սուվերենության հաստատման օգտին:

Եղբայրական երկրները համերաշխ են աֆղանական Ապրիլյան հեղափոխության հետ, որի նվաճումները կկամենային ի չիք դարձնել նրանք, ովքեր

հակահեղափոխական ինտերվենցիա են կազմակերպում, փորձում միջամտել այդ ինքնուրույն, չմիացած պետության ներքին գործերին: Աֆղանստանի շուրջն ստեղծված իրադրության քաղաքական կարգավորումը,— իսկ դրա ուղին նշված է ԱԴՀ-ի կառավարության հայտնի առաջարկություններում,— անշուշտ, դրականորեն կանդրադառնար այդ գոտու իրադրության վրա, կնպաստեր համաշխարհային քաղաքական կլիմայի բարելավմանը: Դրա դեմ խոչընդոտներ են հարուցվում ԱՄՆ-ի, ինչպես նաև Չինաստանի կողմից, որոնք, այդ նպատակներով օգտագործելով նախ և առաջ Պակիստանին, արհեստականորեն ուժեղացնում են լարվածությունը ԱԴՀ-ի շուրջը:

Ղրիմի հանդիպումների ընթացքում մտահոգություն հայտնվեց Հարավարևելյան Ասիայի իրադրության բարդացման կապակցությամբ: Հարավարևելյան Ասիան խաղաղության ու կայունության գոտու վերածելու նպատակ հետապնդող Վիետնամի, Լաոսի և Կամպուչիայի ջանքերը համապատասխանում են այդ ռեգիոնի բոլոր պետությունների շահերին: Այդ ջանքերը չեն կարող չարժանանալ եղբայրական սոցիալիստական պետությունների եռանդագին պաշտպանությանը:

Ղրիմի 1980 թվականի հանդիպումները, անտարակույս, կբարձրացնեն սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության կոորդինացման մակարդակը: Դրանց ընթացքում ճշտվեցին այն կոնկրետ նպատակները, որոնց ձեռքբերմանն էլ կնպատակամղվեն բարեկամական երկրների համաձայնեցված ջանքերը:

ՍՄԿԿ Կենտկոմը համապատասխան գերատեսչություններին և հիմնարկներին պարտավորեցրեց ընդունել ի կատարումն այն գործնական խնդիրները, որոնք սահմանվել են Ղրիմում եղբայրական կուսակցությունների և պետությունների ղեկավարների հետ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ունեցած հանդիպումների ընթացքում:

---

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ՂԱԶԱԽԱԿԱՆ ՍՍՀ-Ի ԵՎ ՂԱԶԱԽՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ 60-ԱՄՅԱԿԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ, 1980 ԹՎԱԿԱՆԻ ՕԳՈՍՏՈՍԻ 29-ԻՆ

Թանկագին ընկերնե՛ր:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և սովետական կառավարության անունից ի սրտե շնորհավորում եմ ձեզ նշանակալի իրադարձության՝ Ղազախական Սովետական Սոցիալիստական Հանրապետության և Ղազախստանի կոմունիստական կուսակցության 60-ամյակի առթիվ: (Ծափահարություններ): Այսօր մեծ տոն է ո՛չ միայն ձեր հանրապետության, այլև մեր ամբողջ երկրի համար:

Անկեղծորեն ուրախ եմ, որ այս հանդիսավոր օրը ձեզ հետ եմ: Ահա արդեն ուղիղ քառորդ դար ես անմիջականորեն կապված եմ Ղազախստանի, նրա կուսակցական կազմակերպության հետ: Հիմա էլ, երբ տեսնում եմ բարեկամների, աշխատանքի վետերանների դեմքերը, որոնց հետ հարկ է եղել, կարելի է ասել, առաջին իսկ ակոսից հերկել խոպանի վիթխարի շերտը, ապա ձեզ հետ մեկտեղ ուրախանում եմ, որ այն ժամանակ սկսված գործը հաջողությամբ շարունակվում է: (Ծափահարություններ):

Խոպանը ո՛չ միայն հաց է տալիս, նա բարձրացնում և դաստիարակում է մարդկանց: Եվ այդ մարդիկ ապացուցեցին, որ նրանց վրա կարելի է հույս դնել: Նրանք հուսալի ձեռքեր ունեն: (Ծափահարություններ):

Ղազախստանն այսօր երկրի գլխավոր շտեմարաններից մեկն է: Նա միաժամանակ բազմաճյուղ հզոր ինդուստրիայի երկրամաս է: Ղազախստանին այսօր ընդամենը կես օր է հարկավոր արտադրելու այնքան արդյունաբերական արտադրանք, որքան թողարկվել է ամբողջ 1920 թվականին՝ ձեր հանրապետության կազմավորման տարում: Կես օր և մի ամբողջ տարի: Ահա թե հիրավի ինչպիսի յոթմղոնանոց քայլերով է առաջ գնում Ղազախստանը: (Ծափահարություններ):

Կարագանդայի և էքիբաստուզի ածուխը, Ջեզկազգանի և Հանքային Ալթայի գունավոր մետաղները, Թեմիրտաուի պողպատը, Ջամբուլի և Չիմքենդի ֆոսֆորիտները, էմբայի և Մանղշլաղի նավթը՝ այս ամենը խիստ նշանակալի մեծություններ են մեր հայրենիքի տնտեսական պոտենցիալում:

Անցյալում Ղազախստանում դժվար էր գտնել գրագետ մարդ: Այժմ գրեթե չորս միլիոն երեխաներ, պատանիներ և աղջիկներ ամեն օր նստում են դպրոցական նստարաններին, մտնում բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատությունների լսարանները: Հեղափոխությունից առաջ ոչ մի ազգային գրող, այդ թվում նաև մեծ Աբայը, կենդանության օրոք չէր տեսել իր ստեղծագործությունը՝ մայրենի լեզվով տպագրված: Իսկ հիմա ղազախ ժողովրդի

սոցիալիստական կուլտուրան մեր հայրենիքի հոգևոր հարստության հիասքանչ նվաճումներից մեկն է։

Եվ Ասիայում քիչ պետություններ կգտնվեն, որոնք կարելի լիներ գիտության զարգացման մակարդակով համադրել այսօրվա Ղազախստանի հետ։

Ինչ-որ խորհրդանշական բան կա նրանում, որ այժմ ձեր երկրամասի արձակ տարածություններից են վեր խոյանում տիեզերանավերը։ Պատկերավոր ասած, տիեզերական թռիչք է գործել նաև ինքը՝ հանրապետությունը։ (Ծափահարություններ)։

Որո՞նք են այդպիսի շեշտակի սոցիալական առաջընթացի աղբյուրները։ Դրանք են՝ մեր սոցիալիստական հասարակարգը, կոմունիստական կուսակցության կողմից ղեկավարվող մասսաների եռանդն ու կամքը, նրանց ստեղծագործական հզոր ուժերը, որոնք ձերբազատվեցին մեծ Հոկտեմբերի կողմից։ Եվ, անշուշտ՝ լենինյան իմաստուն ազգային քաղաքականությունը, մեր սոցիալիստական հայրենիքի բոլոր ժողովուրդների միասնությունն ու փոխօգնությունը։ (Ծափահարություններ)։

Կուզենայի առանձնապես ասել Ղազախստանում գտնվող ռուսների մասին։ Իր ծննդյան պահից Ղազախստանը հենվել է ռուս ժողովրդի ամրակուռ ուսերի վրա։ Ձեր հողում աշխատող ռուս բանվորները, հողագործները, ինժեներները, ուսուցիչները, բժիշկները, գիտնականները նույնպես այսօրվա ծաղկուն Ղազախստանի կառուցողներն են։ (Ծափահարություններ)։

Բարի շատ խոսքերի են արժանի նաև մյուս ազգությունների աշխատավորները, որոնց համար հանրապետությունը հարազատ տուն է դարձել։ (Ծափահարություններ)։

Հանրապետության նվաճումների մեջ շատ միտք, սիրտ ու եռանդ են ներդրել Ղազախստանի կոմունիստները, որոնք կազմում են մեր լենինյան կուսակցության փառապանծ ջոկատը։ Ինձ համար հաճելի է նշել հանրապետության կուսակցական աշխատանքի և տնտեսական գործունեության հմուտ ղեկավարումը Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի և անձամբ մեր կուսակցության և սովետական պետության աչքի ընկնող գործիչ Դինմուհամեդ Ահմեդովիչ Կունաևի կողմից։ (Երկարատև ծափահարություններ)։

Ամբողջ երկրի հետ մեկտեղ բազում դժվարին փորձություններով է անցել Ղազախստանը։ Եվ այն բանում, որ այդ փորձություններին պատվով ենք դիմացել, ակնառու ծառայություն ունեն հանրապետության կոմունիստները, կոմերիտականները, բոլոր աշխատավորները։ Նրանց ակտիվում է այնպիսի հաղթանակ, ինչպիսին է խոպան ու խամ հողերի վիթխարի տարածությունների յուրացումը։ Եվ կամենում եմ բարի խոսքով վերհիշել նրանց, ովքեր արձագանքեցին կուսակցության կոչին և եկան այստեղ՝ ղազախ հողագործների հետ մեկտեղ կոփելու այդ հաղթանակը։ (Ծափահարություններ)։

Ձեր գործերով, ընկերնե՛ր, դուք կարող եք հպարտանալ։ (Ծափահարություններ)։

Մեր այսօրվա տոնը բանվորական, աշխատանքային տոն է։ Տասներորդ հնգամյակը թևակոխել է եզրափակիչ տարին։ Այն հարկավոր է պսակել արժանավայել արդյունքներով։ Դրանից է կախված ամբողջությամբ վերցրած հնգամյակի կատարումը։

Շատ լավ է, որ Սովետական Միության կոմունիստական կուսակցության հերթական՝ XXVI համագումարի նախապատրաստությունն արդեն դարձել է ո՛չ միայն կոմունիստների, այլև մեր ամբողջ ժողովրդի գործը։

Այս ամբիոնից ուզում եմ ջերմորեն ողջունել նախահամագումարյան մրցության մասնակիցներին և նրանց մաղթել ամենալիակատար, ամենամեծ հաջողություններ աշխատանքում՝ ի բարօրություն մեր հայրենիքի։ (Ծափահարություններ)։

Այժմ եռուն շրջան է ամենուրեք՝ գործարաններում, գիտական կենտրոններում, հիմնարկություններում և, իհարկե, դաշտերում։

Գյուղատնտեսության մեջ, ինչպես ուրիշ ոչ մի ճյուղում, տարվա արդյունքները կախված են այն բանից, թե ինչպես են կազմակերպված աշխա-



տանքները վերջնական փուլում։ Երկրում բերքի հետ կապված իրադրությունը ամենուրեք չէ, որ միատեսակ է։ Բայց քանի որ մեզ բոլորիս հետաքրքրում են բերքի հեռանկարները, ապա կարելի է ասել, որ, ընդհանուր առմամբ, դրանք համեմատաբար վատ չեն։ Վերջնական արդյունքները կամփոփենք, երբ բերքահավաքն ավարտվի։ 60 միլիոն հեկտարի հացը հավաքվել է։ Մեծանում է հացահատիկի հոսքը դեպի էլևատորները։ Հացահատիկի մթերման գործում մեծ ավանդ են մուծում Կուբանի, Ստավրոպոլի, Զապորոժիեի, Դնեպրոպետրովսկի, Խարկովի, Օրենբուրգի, Ռոստովի մարզերի, Բաշկիրական ԻՍՍՀ-ի և երկրի այլ շրջանների գյուղատնտեսության աշխատողները։

Ղազախստանի հողագործներից երկիրն ընթացիկ հնգամյակում արդեն երեք անգամ ստացել է ավելի քան մեկ միլիարդ փութ հացահատիկ։ Այդպիսի արդյունքներին մենք արդեն սկսում ենք ընտելանալ։ Ընկ. Կունաևը իր ելույթում ասաց, մարզկոմների քարտուղարներն էլ ասում են, որ այս տարի ևս դուք մտադիր եք գրավել միլիարդի բնագիծը։ Դա շատ լավ է, ընկերնե՛ր։ (Ծափահարություններ)։ Ես հավատում եմ, որ դուք կկատարեք ձեր խոսքը։ (Ծափահարություններ)։ Ձեզ շնորհակալություն կասի ամբողջ երկիրը։ (Ծափահարություններ)։

Այժմ ամեն մի հանրապետություն, երկրամաս և մարզ ձգտում է հաջողությամբ ավարտել բերքահավաքը և առավելագույն ավանդ մուծել երկրի հացի ռեսուրսների մեջ։

Հարվածային աշխատանքը անուշադրության չի՛ մատնվի, միշտ էլ արժանի գնահատական կստանա։ (Ծափահարություններ)։

Հացը մեր գլխավոր հոգսն է։ Բայց անհրաժեշտ է մշտապես տեսադաշտում պահել բերքահավաքի աշխատանքների ամբողջ կոմպլեքսը։ Գյուղի յուրահատկությունն էլ հենց այն է, որ, հավաքելով այս տարվա բերքը, հարկավոր է հոգ տանել գալիք բերքի մասին։ Ժամանակին և ավելի շատ աշնանացան կատարել, կուտակել լավորակ սերմացու, հողը նախապատրաստել հաջորդ տարվա բերքի համար. սրանք նույնպես, ընկերներ, օրվա անհետաձգելի խնդիրներն են։

Չի կարելի չխոսել անասնապահության մասին։ Մանավանդ որ Ղազախստանում անասնապահությունը նկատելի և աճող ճյուղ է։

Անցյալ տարվա վատ բերքը երկրում մեծ դժվարություններ հարուցեց։ Բայց, չնայած դրան, կոլտնտեսություններն ու սովխոզները պահպանեցին անասունների և թռչունների գլխաքանակը։ Այնպես որ՝ կա անասնապահական մթերքների ավելացման լավ հիմք։ Բայց դրա համար հարկավոր է անել ամեն հնարավոր բան՝ լիուլի կեր կուտակելու նպատակով։ Դա վերաբերում է ո՛չ միայն հանրային անասնապահությանը։ Հարկավոր է օգնել քաղաքացիներին՝ անասնակերով ապահովելու անձնական սեփականությունը կազմող թռչուններն ու անասունները։

Կարծես թե այնքան էլ լավ բան չէ տոն օրերին խոսել գործերի մասին։ Բայց եկեք հաստատորեն կատարենք լենինյան պատվիրանը՝ հոբելյանական տարեթվերը ենթարկել գործնական աշխատանքի շահերին։

Ընկերնե՛ր, այժմ պլանային մարմիններում, մինիստրություններում և գերատեսչություններում, արտադրական կոլեկտիվներում պատասխանատու աշխատանք է կատարվում. ձևավորվում են գալիք հնգամյակի պլանները։

Կուսակցությունը հարկ է համարում առաջադրել բոլոր շրջանները, մեր հսկայական ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն ընդգրկող հիրավի մասշտաբային խնդիրներ։ Միաժամանակ՝ անպայման ռեալ խնդիրներ։

Տնտեսական ու սոցիալական հետագա զարգացման առանցքը պետք է դառնա արդյունաբերության բազային ճյուղերի՝ էներգետիկայի, մետալուրգիայի և մեքենաշինության, քիմիայի և տրանսպորտի արդիականացումը։ Եվ այստեղ մենք պետք է ընդգրկենք առնվազն մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանը։ Կարևոր է ունենալ հատուկ պարենային ծրագիր։ Թե ինչո՞ւ է հարկավոր նման ծրագիրը, կարծում եմ, բացատրության կարիք չունի։

Պետք է վճռականապես կարգավորել կապիտալ շինարարությունը։ Մենք

շատ ենք կառուցում: Բայց, ցավոք, միջոցները հաճախ փոշիացվում են: Լինում է, որ շինարարները չեն կարողանում ամեն ինչ հասցնել: Հարկավոր է, հնարավորությունները ցանկություններին համապատասխանեցնելով, առավելագույնս համակենտրոնացնել ռեսուրսները գլխավոր ուղղություններում: Թող կանոն դառնա՝ կառուցել արագ, խնայողաբար և ժամանակակից տեխնիկական մակարդակով: Իսկ ավելի ճիշտ ասած՝ վաղվա օրվա պահանջների մակարդակով: Դա վերաբերում է թե՛ արդյունաբերությանը, թե՛ գյուղին:

Գյուղին է ընկնում կապիտալ ներդրումների ավելի քան մեկ քառորդը: Հենց դրա համար էլ գյուղատնտեսությունն ավելի ու ավելի ինտենսիվ է դառնում, ինդուստրիալ կերպարանք ստանում:

Շատերը, երևի, հիշում են, թե ինչ տեսք ունեին գյուղական շրջանները բերքահավաքի ժամանակաշրջանում 25—30 տարի առաջ: Կալերից դեպի մթերակայաններն էին ձգվում դումակները: Եվ ձիասայլերի ու եզնասայլերի արանքում հազվադեպ տեսնում էիր փոքրիկ բեռնատար մեքենան: Իսկ որքա՜ն շատ էր ձեռքի աշխատանքը:

Հիմա պատկերը միանգամայն այլ է: Գյուղի բնորոշ գիծն է դարձել բազմազան բարդ մեքենաների առատությունը: Աշխատանքի որակն ու մակարդակը խիստ բարձրացել են: Բայց բոլոր նվաճումների հետ մեկտեղ կան նաև չլուծված պրոբլեմներ: Երկրի շատ շրջաններում ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը: Չափից ավելի է մեր կախումը կլիմայական պայմաններից: Եվ միանգամայն անհանդուրժելի են արդեն աճեցված բերքի կորուստները: Մեզանում ետ է մնացել վերամշակող արդյունաբերությունը, քիչ են մթերքների, հատկապես կարտոֆիլի ու բանջարեղենի պահպանման բազաները, վատ են ճանապարհները:

Հետևությունը մեկն է. այն միջոցները, որոնք հատկացվում են գյուղատնտեսության զարգացմանը, հարկավոր է այնպես ծախսել, որ նեղ տեղեր չմնան: Այստեղ էլ հարկ չկա սպասել վերևից տրվող ցուցումների: Կոլտնտեսություններն ու սովխոզները բոլոր լիազորություններն ունեն տնտեսությունը ռացիոնալ վարելու համար:

Արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնությունը միշտ եղել է մեր զարգացման հզոր արագացուցիչը: Տնտեսավարման հիանալի փորձ կա ամենուրեք: Այդ փորձն էլ պետք է դարձնել բոլորի սեփականությունը:

Ես այս մասին ասում եմ, քանի որ մենք գտնվում ենք քաղաքական կարևոր կամպանիայի՝ կուսակցական կազմակերպություններում հաշվետվությունների և ընտրությունների շեմին: Այդ կամպանիան մեծ դպրոց է, կարելի է ասել, համալսարան ամեն մի կոմունիստի համար:

Կուսակցական քաղաքականության, իրենց կազմակերպությունների աշխատանքի հարցերի լայն շրջանակի վերաբերյալ կոմունիստների դատողություններն ու մտքերը, գործի շահերով թելադրված սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը, անտարակույս, կհարստացնեն կուսակցական կյանքը: Կուսակցական ժողովներում ու կոնֆերանսներում յուրաքանչյուր կոնստրուկտիվ ելույթ, յուրաքանչյուր գործնական առաջարկություն պետք է մարմնավորվի պրակտիկայում: Դա լավ կծառայի կոմունիստական շինարարության շահերին:

Ուզում եմ ցանկալ, որ Ղազախստանի կոմունիստական կուսակցության համար, ամբողջ հանրապետության համար նախահամագումարյան ժամանակաշրջանը նշանավորվի կենդանի, եռանդուն աշխատանքով, աշխատանքային նոր հաջողություններով: Վստահ եմ, որ այդպես էլ կլինի: (Երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր:

Ինչպես գիտեք, վերջին ժամանակներս ես Ղրիմում մի շարք ավանդական հանդիպումներ ունեցա Եվրոպայի և Ասիայի եղբայրական սոցիալիստական երկրների ղեկավարների հետ: Դրանք անկեղծ բարեկամների, խաղաղության պաշտպանության, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման մեծ գործում զինա-



կիցների հանդիպումներ էին: Զրույցները բովանդակալից էին և շատ օգտակար: Թեև թվում էր, թե դրանց մասնակիցները «հանգստանում» են, բայց, ձեզ անկեղծորեն կասեմ, մեզ բոլորիս հարկ եղավ շատ աշխատել:

Տեղի ունեցած զրույցների ընթացքում մենք հնարավորություն ունեցանք մանրամասնորեն կարծիքներ փոխանակելու նաև միջազգային դրության վերաբերյալ, թե ինչպիսին է դառնում այն տվյալ ժամանակաշրջանում:

Մենք միահամուռ էինք այդ դրության գնահատման հարցում: Այն ներկայումս բավական բարդ է: Համաշխարհային ասպարեզում քաղաքական պայքար է տեղի ունենում խաղաղության, ժողովուրդների իրավունքների հարգման և լարվածության թուլացման օգտին հանդես եկող ուժերի և ճնշման, միլիտարիզմի ու ագրեսիայի ուժերի միջև:

Եվ այստեղ հատկապես հարկ է ասել այն քաղաքականության մասին, որը ներկայումս վարում է Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարությունը:

Նրանք, ովքեր այսօր որոշում են ԱՄՆ-ի արտաքին քաղաքականությունը, բացահայտորեն չեն տեսնում կամ չեն ուզում տեսնել համաշխարհային ասպարեզում տեղի ունեցող պատմական փոփոխությունները, աշխարհում ուժերի նոր հարաբերակցությունը: Նրանք շարունակում են հուսալ, թե իրենց կհաջողվի դեմ գնալ ժողովուրդների կամքին, իրենց տիրապետությանը ենթարկել իրենց պաշտպանելու հնարավորություն չունեցող մյուս սուվերեն պետություններին, ուզում են այդ պետություններին թելադրել քաղաքականություն, տնօրինել նրանց բնական հարստությունները:

Վաշինգտոնը շանթ ու կայծակ է արձակում Աֆրիկայում և Ասիայում տեղի ունեցող սոցիալական հեղափոխությունների առթիվ, Լատինական Ամերիկայում առաջադիմական վարչակարգերի իշխանության գլուխ անցնելու առթիվ, քաղաքականության մեջ որոշակի ինքնուրույնություն դրսևորելու և իրենց երկրների ազգային շահերի մասին մտածելու՝ արևմտաեվրոպական լիդերների հակման առթիվ:

Արևմտյան Եվրոպայում միջուկային լիցքեր ունեցող ամերիկյան նոր հրթիռներ տեղաբաշխելու մասին Միացյալ Նահանգների կողմից ՆԱՏՕ-ին պարտադրված որոշումը հասկանալի պատճառներով հարուցեց արևմտաեվրոպական և համաշխարհային հասարակայնության տագնապն ու բողոքները:

Վերջերս ԱՄՆ-ի կառավարությունը հռչակեց, այսպես կոչված, «նոր միջուկային ստրատեգիա»: Դրա գլխավոր էությունը փաստորեն հանգում է մի բանի՝ միջուկային պատերազմի բուն գաղափարը, ասես, ավելի ընդունելի դարձնել հասարակական կարծիքի համար: Դրան են ծառայում նաև միջուկային զենքի իբր «սահմանափակ», «մասնակի» կիրառման վերաբերյալ դատողությունները, որոնք ընդհանուր ոչինչ չունեն իրողության հետ և սոսկ մոլորության մեջ են գցում մարդկանց: Ամբողջ աշխարհի ժողովուրդների համար ծա՛յր աստիճան վտանգավոր քաղաքականություն: Նույնիսկ դժվար է պատկերացնել, որ դա ելնում է այն երկրի կառավարությունից, որը համաձայնագիր է ստորագրել Սովետական Միության հետ միջուկային պատերազմը կանխելու մասին: Պատահական չէ, որ Վաշինգտոնի այդ քայլն արժանացավ աշխարհի հասարակական-քաղաքական լայն շրջանների ցասումնալի դատապարտմանը:

Ցանկանալով ցուցադրել իր դժգոհությունը Սովետական Միության քաղաքականությունից, որը բնականորեն հոգատարություն է ցուցաբերում իր անվտանգության նկատմամբ և փորձանքի մեջ չի թողնում բարեկամներին, ԱՄՆ-ի վարչակազմը վճռեց կազմակերպել ՍՍՀՄ-ի բոյկոտի նման ինչ-որ բան:

ԱՄՆ-ի կառավարությունն սկսեց իրար ետևից սահմանափակել մեր երկրի հետ ունեցած քաղաքական և մյուս կոնտակտները, սահմանափակել բանակցությունները զինաթափման մի շարք հարցերի շուրջը, չքաշվեց առևտրի հարցերն օգտագործել որպես քաղաքական ճնշման գործիք, ամեն տեսակ մեթոդներ գործադրեց Մոսկվայի օլիմպիադան վիժեցնելու համար, համառորեն մյուս երկրներից պահանջեց միանալ այդպիսի հակասովետական կուրսին:

Եվ ի՞նչ: Այժմ ամենքը տեսնում են՝ լարվածության թուլացումը թաղելու, աշխարհը նոր «սառը պատերազմի» մեջ նետելու այդ փորձերը բնավ էլ հաջո-

նություն չստացան ժողովրդական լայն մասսաների և կառավարությունների մեծամասնության կողմից և օդում չբերեցին դրանց նախաձեռնողներին:

Այն ապրանքների անհրաժեշտ քանակությունը, որոնց վաճառքը Սովետական Միությանն արգելեց ԱՄՆ-ի վարչակազմը, մենք գնեցինք ուրիշ երկրներից, իսկ վնասը կրեցին միայն ամերիկյան ֆերմերներն ու արդյունաբերողները:

Օլիմպիադան, ընդհանուրի խոստովանությամբ, հիանալի անցավ, դարձավ սպորտի և ժողովուրդների բարեկամության իսկական տոն (Ծափահարություններ), իսկ անհարմար դրության մեջ ընկան դրա հակառակորդները:

Դե, իսկ ինչ վերաբերում է ՍՍՀՄ-ի «քաղաքական մեկուսացմանը», ապա այդպիսի բան չեղավ, չկա և երբեք չի լինի: (Ծափահարություններ): Շատ կառավարությունների հետ մեր վերջին ժամանակվա կոնտակտները, այդ թվում՝ Ֆրանսիայի պրեզիդենտի և ԳՖՀ-ի կանցլերի հետ իմ բանակցությունները, համոզիչ կերպով ցույց տվեցին, որ լարվածության թուլացման պահպանման ու խորացման և միջազգային խաղաղ համագործակցության անհրաժեշտությունը, սպառազինությունների մրցավազքի սանձահարման անհրաժեշտությունը հասկանում են ամենուրեք, այդ թվում՝ նաև ԱՄՆ-ի դաշնակիցների շրջանում:

Միանգամայն բնական է, որ Սովետական Միությունը, հավատարիմ լինելով իր արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքներին, հավատարիմ լինելով հինգ տարի առաջ Հելսինկիում ստորագրված Եզրափակիչ ակտի ոգուն ու տառին, ամենալուրջ ուշադրությունն է նվիրում և այսուհետ ևս կնվիրի Ֆրանսիայի, ԳՖՀ-ի և Արևմտյան Եվրոպայի մյուս պետությունների հետ խաղաղ, փոխշահավետ հարաբերությունների զարգացմանը:

Մի խոսքով, կարելի է, թերևս, ասել, որ հետզհետե աճում է այն բանի ըմբռնումը, որ այժմ աշխարհում գոյություն ունեցող լուրջ պրոբլեմներից և ոչ մեկը ենթակա չէ լուծման «ուժի դիրքից», զենք շաչեցնելու միջոցով: Պետք է կարծել, որ վաղ թե ուշ ԱՄՆ-ի ղեկավարները նույնպես կրկին կհանգեն այսպիսի հետևության: Իհարկե, որքան շուտ, այնքան լավ:

Մեր երկրի արտաքին քաղաքականությունը խաղաղության հաստատ և ազնիվ քաղաքականություն է, որն ուղղված չէ որևէ երրորդի դեմ: Մենք ոտնձգություն չենք կատարում որևէ մեկի հողի նկատմամբ, չենք միջամտում որևէ մեկի ներքին գործերին: Բայց մենք միշտ կկարողանանք պաշտպան կանգնել մեր իրավունքներին և օրինական շահերին: (Երկարատև ծափահարություններ):

Մեր քաջարի զինված ուժերը ամեն անհրաժեշտ բան ունեն ամեն մի ագրեսորի հակահարված տալու համար: Մենք ունենք զենքի ամուր եղբայրություն սոցիալիստական ընկերակցության երկրների ազգային բանակների հետ:

Փա՜ռք խաղաղության հուսալի պահապաններին: (Երկարատև ծափահարություններ):

Միջազգային քաղաքականության երկու հիմնական ուղղությունները, որոնց մասին ես ասացի, միմյանց հակադիր են նաև ասիական մայրցամաքում, որտեղ գտնվում է ձեր հանրապետությունը:

Ասիայում խաղաղության և կայունության կարևորագույն գործոնն են Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը, մեր բարեկամությունը, համագործակցությունն ու փոխգործողությունը եղբայրական սոցիալիստական պետությունների՝ Մոնղոլիայի, Վիետնամի, Լաոսի, Կամպուչիայի, Կորեական Ժողովրդադեմոկրատական Հանրապետության հետ:

Ընկերներ Լե Զուանի և Ֆամ Վան Դոնգի, Յեդենբալի, Քեյսոն Ֆոմվիհանի, Հենգ Սամրինի և Փեն Սովանի հետ վերջերս տեղի ունեցած իմ հանդիպումներն ու զրույցները կրկին հաստատեցին, որ այդ երկրների հետ համագործակցությունը հաջողությամբ զարգանում է բոլոր գծերով: (Ծափահարություններ):

Նույն Ասիայում դրական կարևոր դեր է խաղում Հնդկաստանի խաղաղասիրական ռեալիստական քաղաքականությունը: Մենք մեծ նշանակություն ենք տալիս այդ երկրի հետ ունեցած բարեկամությանն ու փոխշահավետ համագործակցությանը: Մենք հնդիկ մեծ ժողովրդին անկեղծորեն մաղթում ենք խաղաղություն և բարգավաճում: (Ծափահարություններ):



Նշանակալի և երկու կողմերի համար շահավետ են մնում մեր տնտեսական և մյուս կապերը հարևան Ճապոնիայի հետ: Մենք պատրաստ ենք այսուհետ ևս զարգացնել այդ կապերը: Թե ինչ չափով դա կհաջողվի, կախված է ճապոնական կողմից, այն բանից, թե ճապոնական ղեկավարությունը որքանով կկարողանա իր քաղաքականության մեջ պահպանել ինքնուրույն, ռեալիստական կուրս, չենթարկվելով արտաքին ազդեցությանը, որը Ճապոնիային մղում է դեպի ռազմականացման և Սովետական Միության նկատմամբ թշնամական գործողությունների վտանգավոր ուղին:

Պեկինը և Վաշինգտոնը միաբերան Ճապոնիային սարսափեցնում են «սովետական սպառնալիքի» մասին մաշված հերյուրանքներով: Բայց ճապոնական քաղաքագետները, պետք է կարծել, կկարողանան դրության գնահատման հարցում դրսևորել զգաստություն և ընդունակություն՝ իրերը տեսնելու այնպես, ինչպես դրանք կան, և ոչ թե այնպես, ինչպես դրանք պատկերում են Ամերիկայում կամ Չինաստանում:

Իսկ ինչ վերաբերում է իրեն՝ Չինաստանին, ապա այդ երկրում այժմ ներքին լուրջ պրոցեսներ են տեղի ունենում: Դրանք, ինչպես ասում են, կարելի է տեսնել նույնիսկ անզեն աչքով: Դրանց իսկական նշանակությունը գնահատել, ըստ երևույթին, դեռ վաղ է: Սակայն պարզ է, որ արդեն այժմ թե՛ տեսության մեջ, թե՛ երկրի ներքին զարգացման պրակտիկայում մաոիստական որոշ կոնցեպցիաներ, որոնք սոցիալիզմի հետ ընդհանուր ոչինչ չունեն, Չինաստանում բացահայտ կամ գաղտնի քննադատության են ենթարկվում: Օրինակ՝ տխրահռչակ «կուլտուրական հեղափոխությունը» այժմ այնտեղ բացահայտորեն գնահատում են որպես մեծագույն աղետ չին ժողովրդի համար:

Ցավոք, Չինաստանի արտաքին քաղաքականության վրա այս ամենն առայժմ չի անդրադառնում: Այդ քաղաքականությունը մնում է Սովետական Միության, Վիետնամի, Մոնղոլիայի, մյուս սոցիալիստական երկրների նկատմամբ նույնքան թշնամական, խաղաղության և լարվածության թուլացման գործի նկատմամբ նույնքան թշնամական, որքան և առաջ:

Ավելին, տեղի է ունենում Պեկինի հետագա մերձեցում ԱՄՆ-ի և իմպերիալիստական մյուս պետությունների առավել ագրեսիվ շրջանների հետ, ակտիվանում են նրա փորձերը՝ ընդհարելու այդ պետություններին Սովետական Միության հետ. այն ժամանակ, երբ իմպերիալիստական քաղաքագետները ձգտում են Չինաստանին ավելի խոր կերպով ներքաշել հակասովետական գործողությունների մեջ:

Ամերիկյան իմպերիալիզմը, օրինակ, Չինաստանի, ինչպես նաև Պակիստանի ծառայությունները եռանդուն կերպով օգտագործում է աֆղանական հեղափոխությունը խեղդելու և Աֆղանստանը Սովետական Միությանը ու Արևելքի ազատասեր անկախ երկրներին սպառնացող նոր պլացդարմ դարձնելու իր փորձերում: Բայց այդ փորձերը ձախողման են դատապարտված:

Արձագանքելով ագրեսիան ետ մղելու գործում օգնություն ցույց տալու մասին Աֆղանստանի կառավարության կոչին, մենք մինչև վերջ կկատարենք մեր պարտքը՝ բարեկամության սովետա-աֆղանական պայմանագրին և ՄԱԿ-ի կանոնադրությանը լիովին համապատասխան: Դրանում ոչ ոք չպետք է կասկածի:

Մենք կողմնակից ենք իրավիճակի քաղաքական կարգավորման: Դրա միակ ուղին հակահեղափոխական ինտերվենցիայի դադարեցումն է, Աֆղանստանի ու նրա հարևանների, և ամենից առաջ Պակիստանի, կառավարությունների միջև պայմանավորվածությունը:

ԱՄՆ-ը միջազգային իրադրության սրման և սպառազինությունների մրցավազքի ուժեղացման համար որպես պատրվակ օգտագործում է նաև Իրանում տիրող դրությունը: Չի դադարեցվում այդ երկրի տնտեսական շրջափակումը: Առաջվա պես նրա շուրջը պտտվում են ԱՄՆ-ի ռազմական նավատորմի նավերը, որոնք ունեն ավիացիա և դեսանտային զորամասեր:

Մենք այդպիսի գործողություններն անթույլատրելի ենք համարում և հաստատ հետևում ենք այն սկզբունքին, որ միայն ինքը՝ Իրանի ժողովուրդը կարող







է որոշել, թե ինչ ուղիով առաջ ընթանա: Կարծում ենք, որ Իրանի ղեկավարներից նույնպիսի մոտեցում իրավունք ունեն սպասելու մյուս պետությունները և, ամենից առաջ՝ նրա հարևանները:

Ամբողջությամբ վերցրած՝ միջազգային դրությունը, կրկնում եմ, հաստատուն չէ: Այժմ պետություններն ու ժողովուրդները չունեն ավելի կարևոր խնդիր, քան թույլ չտալ, որ «ուժի դիրքից» իմպերիալիստական քաղաքականությունը դուրս մղի լարվածության թուլացումը, որ սպառազինությունների մրցավազքի թափանիվը նոր, խիստ վտանգավոր արագություն վերցնի:

ՍՍՀՄ-ը և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրները պատրաստ են անհապաղ ձեռնամուխ լինելու այդ բնագավառներին վերաբերող պրոբլեմների քննարկմանը: Դրա վկայությունն է Վարշավյան պայմանագրի երկրների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի մայիսյան խորհրդակցությունում առաջ քաշված լայն ծրագիրը և Եվրոպայում հրթիռամիջուկային զենքին վերաբերող հարցերի շուրջ բանակցություններ վարելու, ինչպես նաև Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերն ու սպառազինությունները կրճատելու մասին Սովետական Միության՝ վերջերս արած նոր առաջարկությունները:

Արևմտյան տերությունների ղեկավարներից մենք սպասում ենք մեր առաջարկությունների պատասխանը: Մենք պատրաստ ենք կոնկրետ գործերի դիմելու հանուն խաղաղության ամրապնդման, միջազգային իրադրության առողջացման և նրանցից սպասում ենք նույնը:

Սոցիալիստական պետությունների քաղաքականությունը համապատասխանում է բոլոր ժողովուրդների արմատական շահերին, այդ քաղաքականությունը հավանություն են տալիս ամբողջ աշխարհի հարյուր միլիոնավոր մարդիկ: Եվ ես կարող եմ ամենայն որոշակիությամբ հայտարարել. մենք այսուհետ ևս հետևողականորեն և անշեղորեն կվարենք այդ քաղաքականությունը: (Երկարատև ծափահարություններ):

Թանկագին ընկերնե՛ր:

Հիմա հասավ ժամանակը կատարելու հաճելի հանձնարարությունը՝ Ղազախստանին հանձնելու Լենինի շքանշանը: (Բոլորը ոտքի են կանգնում: Բուռն, երկարատև ծափահարությունների ներքո Լ. Ի. Բրեժնևը Լենինի շքանշանն ամրացրեց հանրապետության դրոշին):

Այդ բարձր պարգևին ձեր հանրապետությունն արժանացել է պետությանը անցյալ տարի ավելի քան մեկ միլիարդ 250 միլիոն փութ հաց հանձնելու համար:

Փա՜ռք ու պատիվ հողագործներին, բոլոր նրանց, ովքեր իրենց աշխատանքն են ներդրել այդ ակնառու նվաճման մեջ: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Թո՛ղ ամրապնդվի ու բարգավաճի մեր մեծ սոցիալիստական հայրենիքը: (Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում: Հնչում են ողջույնի բացականչություններ՝ «Փա՜ռք ՍՄԿԿ-ին», «Փա՜ռք սովետական ժողովրդին»):

---

# ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԴԻՄԱՎՈՐԵԼ XXVI ԿՈՒՍՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ կոմունիստական կուսակցությունը թևակոխել է իր հերթական՝ XXVI համագումարի նախապատրաստման պատասխանատու շրջանը: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը որոշել է համագումարը հրավիրել 1981 թվականի փետրվարի 23-ին, հաստատել է համագումարի օրակարգը, սահմանել համագումարում ներկայացուցչության նորմանները:

«Ամեն մի համագումար նոր հորիզոններ է բացել մեր կուսակցության ու երկրի առջև,— պլենումում ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը:— Հավատացած եմ, որ այդպիսին կլինի նաև առաջիկա համագումարը, որը կոչված է սահմանելու պայքարի ստրատեգիան ու տակտիկան կոմունիստական շինարարության սկսվող փուլում»:

ՍՄԿԿ XXVI համագումարին նախապատրաստվելը համընկնում է նշանակալից տարեթվի՝ լենինյան «Իսկրա» լրագրի 80-ամյակի մոտենալու հետ, լրագիր, որի առաջին համարը լույս է տեսել 1900 թվականի դեկտեմբերի 11-ին (24-ին), Պուշկինին հղած՝ դեկաբրիստների պատասխանից քաղված «Կայծից բոց կբռնկի» նշանաբանով: Այս բանի հիշատակումը սոսկ տուրք չէ բոլշևիզմի պատմության սկզբնական ամենակարևոր փուլերից մեկին: Այն կոչված է ծառայելու կոմունիստների, սովետական բոլոր մարդկանց այն համոզմունքի հետագա ամրապնդմանը, թե կուսակցության պանծալի անցյալը անքակտելիորեն կապված է բուռն այժմեականության հետ, թե նրա հեղափոխական տեսությունը, պրոլետարական գաղափարախոսությունը, գիտականորեն հիմնավորված քաղաքականությունը հետևողականորեն հաջորդական են:

«Իսկրայի» ժամանակներին են վերաբերում Վ. Ի. Լենինի լիովին խորիմաստ խոսքերը բանվորական կուսակցության ապագայի մասին, կուսակցություն, որն իր գլխավոր խնդիրն էր համարում «պրոլետարիատի դասակարգային պայքարի կազմակերպումը և ղեկավարումն այդ պայքարի, որի վերջնական նպատակն է՝ քաղաքական իշխանության նվաճումը պրոլետարիատի կողմից և սոցիալիստական հասարակության կազմակերպումը» (ԵԼԺ, հ. 4, էջ 229): Ծրագրային այս միտքը, որն անցել է տասնամյակների ու դարաշրջանների հաջորդմամբ, կենդանի է և այսօր: Այն համակողմանի զարգացել և գիտականորեն ապացուցվել է «Իսկրայում», որի էջերում Լենինը՝ այդ լրագրի կազմակերպիչն ու ոգեշնչողը, երեք տարում հրապարակել է ավելի քան 50 հոդված, որոնցում նա մշակել է բանվոր դասակարգի մարքսիստական կուսակցության գաղափարական, տեսական, քաղաքական, կազմակերպական սկզբունքները և Ռուսաստանում կուսակցության ստեղծման պլանը, սահմանել նրա կանոնադրության, ծրագրի, ստրատեգիայի ու տակտիկայի բնույթը և հիմքերը:

«Իսկրան» վճռական դեր է խաղացել 1903 թվականին կայացած ՌՍԴԲԿ II համագումարի նախապատրաստման գործում: Համագումարում ավարտվեց հեղափոխական մարքսիստական կազմակերպությունների միավորման պրոցեսը և Լենինի սահմանած հիմունքներով կազմավորվեց բանվոր դասակարգի կուսակցություն: Ստեղծվեց նոր տիպի պրոլետարական կուսակցություն՝ բոլշևիկների կուսակցությունը: Այսպիսով, բանվորական շարժման ընդերքում «Իսկրայի» ցանած մարքսիստական հեղափոխական տեսության սերմերը բերքի

հող դտան և առատ բերք տվին: Բանվոր դասակարգի, աշխատավոր ժողովրդի, հեղափոխական մարքսիզմի, սոցիալիզմի գործի նկատմամբ հավատարմության իսկրայական ավանդույթները մշտապես արմատավորվել են մեր կուսակցության կյանքում, դարձել միս ու արյուն:

Լենինի հիմնադրած կոմունիստական կուսակցությունը դարձել է հասարակական-քաղաքական հզոր ուժ: Նրա ղեկավարությամբ բանվոր դասակարգը և ընչազուրկ գյուղացիությունը, առաջավոր ինտելիգենցիայի, ողջ աշխատավոր ժողովրդի աջակցությամբ, կատարեցին Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը, որն սկզբնավորեց համաշխարհային մասշտաբով կապիտալիզմից սոցիալիզմին անցման պատմական դարաշրջանը. Նրա ղեկավարությամբ սովետական ժողովուրդը ագրեսորների և ինտերվենտների դեմ մղած ծանր մարտերում պաշտպանեց իր հեղափոխական նվաճումները, կառուցեց աշխարհում առաջին զարգացած սոցիալիստական հասարակությունը: Կոմունիզմ կառուցող մեր ժողովրդի այսօրվա մեծագործությունները լենինյան «Իսկրայի» սկսած գործի շարունակությունն են, առաջնորդի գաղափարների կենսագործումը:

Լենինը կարևոր նշանակություն էր տալիս կուսակցության համագումարներին: Երբ այն դարձավ կառավարող կուսակցություն, իր ձեռքը վերցրեց հասարակության ու պետության ղեկավարումը, Լենինն ասաց. «Մեր կուսակցությունը կառավարական կուսակցություն է, և այն որոշումը, որ կկայացնի կուսակցական համագումարը, ամբողջ հանրապետության համար պարտադիր կլինի» (Երկեր, հ. 32, էջ 268):

Իրոք, այսպես են ընկալում սովետական մարդիկ լենինյան կուսակցության համագումարների որոշումները, ջանք չեն խնայում դրանց կատարման համար:

Արդի պայմաններում այժմեական է հնչում ՌԿ(բ)Կ IX համագումարի նախապատրաստման վերաբերյալ Լենինի նամակը՝ ուղղված կուսակցական կազմակերպություններին: Այդ համագումարը տեղի էր ունենում այն ժամանակ, երբ սովետական իշխանությունն արդեն ձեռնամուխ էր եղել խաղաղ տնտեսական շինարարությանը: Վլադիմիր Իլյիչն այն ժամանակ կուսակցության առջև խնդիր դրեց ամրապնդել կապերը բանվորական, աշխատավորական մասսաների հետ, հասնել աշխատանքի առավելագույն արտադրողականության, կոչ էր անում կուսակցականներին՝ աշխատանքում լինել առավել գործարար, հետևողական, գերազանցապես տիրապետել կազմակերպչական ու վարչական արվեստին: Նա նշում էր, որ ժամանակն է ընդհանուր հարցեր քննարկող համագումարներից ու ժողովներից անցնելու **պրակտիկ փորձն** ամփոփող համագումարների ու ժողովների և դա համարում էր ժամանակի լոզունգը: Սահմանելով համագումարի ողջ նախապատրաստման գլխավոր խնդիրը՝ Լենինը նշում էր. «Պետք է առաջ գնալ, պետք է առաջ նայել, պետք է համագումար բերել լավ մտածված և ուշադրությամբ, կուսակցության բոլոր անդամների ընդհանուր աշխատանքով, ընդհանուր ջանքերով մշակված տնտեսական շինարարության **գործնական փորձ**... Թող, ուրեմն, կուսակցության բոլոր անդամները լարեն իրենց ուժերը, կուսակցության համագումար բերելու համար ստուգված, վերամշակված, ամփոփված գործնական փորձը» (Երկեր, հ. 30, էջ 516, 518):

Տեսական բարձր մակարդակը, սկզբունքայնությունը, գործարարությունը, բոլոր հնարավորությունների հաշվառումը, թերությունների բացահայտման, առաջ նայելու և ընթացիկ գործերն ու խնդիրները հարատև լայն հեռանկարների հետ կապակցելու կարողությունը մեր համագումարների գործունեության անհրաժեշտ հատկությունն են: Դրանք մարմնավորում են վերլուծության ու աշխատանքի լենինյան ոճի, նոր, ավելի ու ավելի բարդ պրոբլեմների քննարկման ու լուծման վերաբերյալ լենինյան մոտեցման հատկանիշները:

Կատարելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները՝ կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները նոր, արժեքավոր փորձ կուտակեցին կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում՝ ժողովրդական տնտեսության կառավարման, սոցիալիստական պետության և նրա դեմոկրատա-



կան հիմքերի ամրապնդման, գաղափարախոսական ու կազմակերպչական աշխատանքի կատարելագործման մարզում: Այդ ողջ փորձը, Լենինի խոսքերով ասած, կոմունիստները կբերեն իրենց համագումար, այն կպատկանի բոլորին, կդառնա հետագա գործունեության ելակետը:

Կոմունիստական կուսակցության համագումարը երկրի բարձրագույն ամենահեղինակավոր դեմոկրատական օրգանն է: Այն հաշվի է առնում և ընդհանրացնում կուսակցության ու ժողովրդի բոլոր նվաճումները, սահմանում տնտեսական ու սոցիալական զարգացման գլխավոր ուղղությունները նոր հնգամյակի և ավելի տևական հեռանկարի համար, կանխորոշում ներքին ու արտաքին քաղաքականության ուղղությունը:

Համագումարին նախորդում է ներքևից վերև, կուսակցության ողջ գործունեությունն ընդգրկող հաշվետու-ընտրական կամպանիան: Սկզբնական կուսակցական կազմակերպությունների ընդհանուր ժողովներում, շրջանային, քաղաքային, օկրուգային, մարզային ու երկրամասային կոնֆերանսներում, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում հնարավորություն է ստեղծվում, հենվելով ներկուսակցական դեմոկրատիայի վրա, համակողմանիորեն քննարկելու կուսակցության գործունեությունը հաշվետու ժամանակաշրջանում և հանգամանորեն, օբյեկտիվորեն ու ինքնաքննադատաբար վերլուծելու սեփական նվաճումներն ու թերացումները, նշելու կուսակցական-քաղաքական, տնտեսական, կազմակերպական ու գաղափարադաստիարակչական ողջ աշխատանքի հետագա բարելավման գործնական միջոցներ: Վերջին տարիներս հաշվետու ընտրական ժողովներում ու կոնֆերանսներում առավել չափով են դրսևորվում կոմունիստների ակտիվությունն ու կազմակերպվածությունը: Եթե 1966 թվականին այդ ժողովներին մասնակցել է կոմունիստների 86,7 տոկոսը, ապա 1979 թվականին՝ 95,4 տոկոսը: Ընդ որում, այդ ընթացքում ժողովներում ելույթ է ունեցել յուրաքանչյուր երրորդ-չորրորդ կոմունիստը: Անտարակույս, այդ ակտիվությունն ու կազմակերպվածությունն առավել ակնբախ կլինի առաջիկա հաշվետու-ընտրական կամպանիայի ժամանակ: Կենտկոմի պլենումը սահմանել է կամպանիայի ժամկետները, և այժմ հարկավոր է արժանավայել նախապատրաստվել կուսակցության կյանքի այդ կարևոր, պատասխանատու ժամանակաշրջանին, հոգածությամբ վերաբերվել այն ողջ դրականին, ինչ կուտակվել է աշխատանքում:

Արժանավայել դիմավորել ՍՄԿԿ XXVI համագումարը՝ նշանակում է մնացած ժամանակն օգտագործել լարված աշխատանքի, XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյակի խնդիրների լուծման համար, նոր հաջողությունների ամուր հիմք դնել արտադրության կուլտուրայի և արդյունավետության բարձրացման, աշխատանքային կոլեկտիվների, ամբողջ երկրի տնտեսական ու սոցիալական հարցերի լուծման գործում նոր, տասնմեկերորդ հնգամյակում: Այժմ այդ նպատակին են ծառայում սովետական մարդկանց եռանդուն ջանքերը: Նրանք վերանայում են նախկինում ընդունած պարտավորությունները, ծավալում սոցիալիստական մրցություն ի պատիվ առաջիկա կուսակցական համաժողովի:

Ինչպես հայտնի է, XXV համագումարը սահմանեց կուսակցության տնտեսական ստրատեգիան և մի անգամ ևս շեշտեց, որ իր գերագույն նպատակը եղել և մնում է ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ վերելքը: Համագումարը մասնանշեց այդ ստրատեգիայի առանցքը— երկրի տնտեսական հզորության հետագա աճ, արտադրաֆոնդերի ընդլայնում և արմատական նորացում, տնտեսության հիմքի՝ ծանր արդյունաբերության, կայուն, հաշվեկշռված աճի ապահովում:

Համագումարը մեծ ուշադրություն նվիրեց տնտեսավարման մեխանիզմի կատարելագործմանը, տնտեսության կառավարման, պլանավորման բարելավմանը, նպատակամղեց պլանային տնտեսական մարմիններին հասնելու վերջնական բարձր արդյունքի, ավելի ռացիոնալ օգտագործելու տնտեսական լծակները, նյութական ու բարոյական խթանները: Համագումարից հետո այդ պրոբլեմներն առավել զարգացան ու կոնկրետացան պլենումների, կուսակցու-

որ անքակտելի է դրանից, մեծապես պայմանավորված է նրանով, թե ինչպես են ընթանում հարաբերությունները տարբեր պետությունների միջև։ Սոցիալիզմի և խաղաղության անքակտելիության գաղափարը հռչակել, այն համակողմանի հիմնավորել է Լենինը։

Սովետների երիտասարդ հանրապետության առաջին իսկ օրենսդրական ակտում՝ խաղաղության լենինյան դեկրետում, հռչակվել են մեր խաղաղասիրական արտաքին քաղաքականության հիմնական սկզբունքները։ Այստեղից իսկ ելնելով՝ կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը անխոնջ ու հետևողական պայքար են մղում բովանդակ աշխարհի խաղաղության համար, ագրեսիայի և ազգային ճնշամանքի, գաղութային կեղեքման ու կողոպտիչ պատերազմների իմպերիալիստական քաղաքականությանը հակադրելով աշխատավորների ինտերնացիոնալ եղբայրության և բոլոր երկրների ժողովուրդների բարեկամության, հասարակական-քաղաքական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության արդարացի քաղաքականությունը։

Մեր արտաքին քաղաքականությունն արտահայտվել է ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների հռչակած և ողջ պրոգրեսիվ մարդկության հավանությանն արժանացած խաղաղության ծրագրում։ Վերջինիս իրականացման, սոցիալիստական համագործակցության երկրների համաձայնեցված խաղաղ հարձակման շնորհիվ, հարձակում, որին աջակցում են խաղաղասիրական բոլոր ուժերը, հաջողվեց վերջին ժամանակներս ակտիվացած «սառը պատերազմի» ջատագովների գործողություններին հակադրել միջազգային լարվածության թուլացման ոլորտում եղած նոր հաջողությունները։ Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների խաղաղասիրական հաստատուն կուրսը դիմակայում է ռեակցիոն ավանտյուրիստներին և զսպում միլիտարիստական, ագրեսիվ շրջաններին, որոնք, մի կողմից, կկամենային խափանել լարվածության թուլացումը, իսկ մյուս կողմից վախենում են դրա ձախողման հնարավոր հետևանքներից, «սառը պատերազմը» ջերմամիջուկայինի վերածվելուց։ Այդ շրջաններում չեն կարող հաշվի չառնել այն անհերքելի փաստը, որ սոցիալիստական համագործակցության ուժերը հզոր են, և դրանց դեմ կատարված ոչ մի ագրեսիա չի մնա անպատիժ։

ՍՄԿԿ-ն գիտակցում է, որ լարվածության թուլացման նավն առաջ է լողում միջազգային հարաբերությունների խռովահույզ ծովում, նավ, որին վերջին տարիներս ճգնում է տորպեդահարել մարտնչող իմպերիալիզմի ռեակցիոն ուժերի ղեկի մոտ գտնվող ԱՄՆ-ի ներկայիս ղեկավարությունը։ Քարտերի վարչախումբը ՆԱՏՕ-ի եվրոպական երկրներին հարկադրել է ընդունել արագացված սպառազինության երկարամյա ծրագիրը, հանդես է գալիս զինաթափման դեմ, ընդլայնում էքսպանսիան Ասիայում, վտանգավոր օջախներ ստեղծում Մերձավոր ու Միջին Արևելքի երկրներում, ձգտում է ակտիվացնել հակասովետական գործողությունները Հեռավոր Արևելքում։ ԱՄՆ-ը շարունակում է երկրագունդը շղթայել ռազմական բազաների ցանցով, իր գործակալություններ հաստատել սուվերեն պետություններում՝ հաշվի չառնելով նրանց ազգային շահերը, բացահայտորեն սպառնում է Սովետական Միությանը և սոցիալիստական մյուս երկրներին։

Ինչպե՞ս հասկանալ ամերիկյան վարչախմբի այս պարսավելի, ավանտյուրիստական գործողությունները։ Ասում են, թե դրանք թելադրվում են Միացյալ Նահանգներում ընթացող նախընտրական պայքարով։ Եվ դա մասամբ ճիշտ է։ Հայտարարում են նաև, թե դրանք հարուցված են սպառազինությունների մրցավազքով, որով շահագրգռված է ռազմաարդյունաբերական կոմպլեքսը։ Դա ևս ճիշտ է։ Բայց գլխավորն այստեղ այն է, որ գործ ունենք իմպերիալիստական տերության հետ, ընդ որում, ամենահզոր և ամենաագրեսիվ տերության։ Լարվածության թուլացման ու խաղաղության թշնամիների գործողությունները բոլոր իսկական մարքսիստ-լենինյանների համար անակընկալ չէին։ Մեր կուսակցության համար միշտ էլ պարզ է եղել, որ իմպերիալիզմը երբեք չի փոխի իր ագրեսիվ-շահագործողական բնույթը։



Վերջին ժամանակներս հաղորդագրություններ երևացին պենտագոնի կոմպյուտերի սխալների մասին, որը երկու անգամ անընդմեջ «միջուկային տագնապի» կեղծ ազդանշան է տվել։ Բայց, ըստ երևույթին, բանը ամենևին էլ միայն կոմպյուտերը չէ, և դրա մեջ եղած անսարքությունը վկայակոչում էին լոկ ուշադրություն շեղելու և հասարակայնությանը խաբելու համար։ Ավելի շուտ պենտագոնը ցանկանում էր «խաղ սկսել», անհամբերությամբ ցանկալով փորձել, ստուգել, թե իր հրեշավոր ռեալությամբ ինչպիսի տեսք կունենա ամերիկյան ռազմական մեքենայի արձակումը։ Այստեղ պարզ է լոկ մի բան, նման «սխալները», «փորձերը» և «խաղերը» ոչ մի լավ բան չեն խոստանում ոչ կրակի հետ խաղացողներին, ոչ էլ մոլորակի բազում միլիոնավոր մարդկանց։

«Խաղաղությունն անանց արժույթ է մարդկության համար։ Խաղաղության և ժողովուրդների համագործակցության դրոշը բարձրացրեց Վ. Ի. Լենինը։ Այդ դրոշին մենք հավատարիմ կլինենք»»,— հայտարարեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը Կենտկոմի հունիսյան պլենումում։

ՍՄԿԿ-ն հաստատ համոզված է, որ լարվածության թուլացումն անհաղթահարելի է, այն օգտավետ է բոլոր պետություններին ու ժողովուրդներին և շարունակում է մնալ որպես արդի միջազգային հարաբերությունների գլխավոր միտում։ Եվ մեր երկիրը սոցիալիզմի մյուս երկրների հետ մեկտեղ հետևողականորեն պայքարում է հանուն դրա պահպանման, ծավալման ու խորացման, հանուն զինաթափման, խաղաղության ու ժողովուրդների անվտանգության։ Սոցիալիստական համագործակցության այս հաստատուն կուրսը միջազգային գործերում վիթխարի դրական ազդեցություն է ունենում աշխարհի պրոգրեսիվ սոցիալական պրոցեսների զարգացման վրա։

Խաղաղության համար առաջիկայում ևս ակտիվորեն պայքարելու անհողդողդ վճռականությունը կրկին հաստատվեց Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի՝ մայիսին բարձր մակարդակով կայացած հոբելյանական խորհրդակցության փաստաթղթերում։ Խորհրդակցության մասնակիցները խորապես վերլուծեցին վտանգներով հղի արդի միջազգային իրադրությունը, նորացրին իրենց նախկին խաղաղասիրական առաջարկությունները և հանդես եկան նոր նախաձեռնություններով, պատրաստակամություն հայտնելով շարունակել ու խորացնել խաղաղամետ երկխոսությունը սոցիալական տարբեր սիստեմի երկրների միջև։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի 1980 թվականի հունիսի 23-ի «Սովետական Միության միջազգային դրության և արտաքին քաղաքականության մասին» որոշման մեջ արտահայտված է այն համոզումը, որ կան օբյեկտիվ հնարավորություններ ու հասարակական-քաղաքական ուժեր, որոնք կարող են կասեցնել նոր «սառը պատերազմի» սահարկումը, ապահովել սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների նորմալ, խաղաղ գոյակցությունը, կանխել համաշխարհային ջերմամիջուկային կոնֆլիկտի սպառնալիքը։ Պլենումը հանձնարարեց Կենտկոմի քաղբյուրոյին՝ ներկա իրադրության պայմաններում ևս, երբ ԱՄՆ-ի ու նրա մեղսակիցների ավանտյուրիստական գործողություններն ուժգնացրել են պատերազմի վտանգը, անշեղորեն շարունակել ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների կուրսը՝ ըստ ամենայնի ամրապնդել սոցիալիստական պետությունների եղբայրական դաշինքը, աջակցել ազատության ու անկախության համար ժողովուրդների մղած արդարացի պայքարին, խաղաղ գոյակցել, սանձել սպառազինությունների մրցավազքը, պահպանել ու զարգացնել միջազգային լարվածության թուլացումը, փոխշահավետ համագործակցությունը տնտեսական, գիտական ու կուլտուրական բնագավառներում։

Սովետական Միության լենինյան խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը համապատասխանում է բոլոր երկրների ժողովուրդների, բոլոր աշխատավորների կենսական շահերին. այդ է նրա, հիրավի, անհաղթահարելի ուժը։ Բայց մենք չենք մոռանում, որ իմպերիալիստական պետությունների կողմից հնարավոր են ամեն կարգի պրովոկացիաներ, ավանտյուրաներ, ագրեսիայի գործողություններ։ Մեր հայրենիքի լիակատար անվտանգության համար ՍՄԿԿ-ն անում է ամեն հնարավոր բան՝ ուժեղացնելու նրա պաշտպանունակու-

թյունը: «Կուտակված ամբողջ փորձը, միջազգային առկա իրադրությունը, հատկապես վերջին ժամանակների փաստերը,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը մարտի 31-ին, Լենինյան մրցանակ ստանալու ժամանակ,— մեզ պարտավորեցնում են վառոդը չոր պահել, խաղաղության գործի պաշտպանության հարցում լինել հաստատակամ ու հետևողական, հիշել մեր պատմական պատասխանատվությունը հայրենիքի և համայն մարդկության ճակատագրի համար»:

Ավանդույթ և հրամայական անհրաժեշտություն է դարձել, երբ մեր կուսակցության համագումարներում հանգամանորեն, մարքսիստորեն, լենինաբար վերլուծվում է միջազգային դրությունը, քննարկվում են ՍՄԿԿ արտաքին քաղաքական գործունեության պրոբլեմները, մոմենտը հաշվի առնելով՝ սահմանվում է երկրի արտաքին քաղաքական ստրատեգիան, քննարկվում են նրա պաշտպանունակության խնդիրները: Այս հարցերը, անշուշտ, իրենց ողջ այժմեական բարդությամբ հանդերձ կծառանան նաև XXVI համագումարի առջև:

ՍՄԿԿ XXV համագումարում խոր, համակողմանի վերլուծվեց կոմունիստական կուսակցության գործունեությունը զարգացած սոցիալիզմի պայմաններում, նշվեց, որ դառնալով ամբողջ սովետական ժողովրդի կուսակցությունը, այն այժմ ոչ թե կորցնում է իր դասակարգային բնույթը, այլ եղել և մնում է բանվոր դասակարգի կուսակցությունը: Լենինյան կուսակցությունն այսօր հասարակական-քաղաքական հզոր օրգանիզմ է: Համագումարը նշեց կուսակցության ղեկավար դերի աճման օրինաչափությունը, հավաստեց նրա անսասան հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին, պրոլետարական ինտերնացիոնալիզմին, նրա շարքերի կազմակերպական ու գաղափարաքաղաքական միասնությունը:

Մարքս-լենինյան հեղափոխական տեսությամբ զինված, ստեղծագործաբար զարգացնելով այն՝ ՍՄԿԿ-ն ղեկավարում է սովետական ժողովրդի ստեղծարար վիթխարի գործունեությունը, երկիրը վարում սոցիալական, տնտեսական ու կուլտուրական հետագա պրոգրեսի ուղիով: Բնորոշելով սոցիալիստական հասարակական հարաբերությունների ողջ սիստեմի զարգացման գլխավոր միտումը՝ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասել է, որ դա սովետական հասարակության միասնության, համախմբվածության հետագա ամրապնդումն է, սոցիալիզմի եզակի հարստությունը, մեր անգին, անպարտելի ուժը: Ամբողջ հասարակության այդպիսի միասնություն, համախմբվածություն չկա և չի կարող լինել կապիտալիզմի օրոք, որը բզկտվում է սոցիալական հակասություններից:

Սովետական հասարակության օրգանական միասնությունը դրսևորվում է գաղափարաբարոյական, սոցիալ-քաղաքական և ազգամիջյան հարաբերություններում: Նրա գաղափարաքաղաքական հիմքը սովետական ողջ ժողովրդի համար ընդհանուր բանվոր դասակարգի մարքս-լենինյան գաղափարախոսությունն է, ողջ ժողովրդի հավանությունն ու պաշտպանությունն արժանացած կուսակցության քաղաքականությունը: Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական ինտելիգենցիայի դաշինքը, աշխատավորների սոցիալական բոլոր խմբերի ու խավերի արմատական շահերի ընդհանրությունը, սոցիալական միատարրության իշխող միտումը բնորոշում են սովետական հասարակության անքակտելի սոցիալական միասնությունը: Նրա համազգային միասնության հուսալի բազան են՝ երկրի բոլոր ազգերի ու ազգությունների բարեկամությունն ու համագործակցությունը, միասնական, ընդհանուր միութենական ժողովրդատնտեսական կոմպլեքսի ստեղծումը, ազգային կուլտուրաների փոխներթափանցումը և միասնական կոմունիստական կուլտուրայի հասունացումը, սովետական մարդկանց հոգում սոցիալիստական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի հետագա զարգացումն ու խորացումը:

Սովետական հասարակությունը ցեմենտող հիմնական գործոնը կուսակցության ու ժողովրդի միասնությունն է: Այդ միասնությունը կոփվել և անխորտակելի է դարձել տասնամյակների համատեղ պայքարում, ընդդեմ ցա-



րիզմի և բուրժուակալվածատիրական կարգի, հանուն սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման խնդիրների կենսագործման:

ՍՄԿԿ-ն XXV համագումարի բացման ժամանակ իր շարքերում ուներ 15 միլիոն 694 հազար կոմունիստ: 1980 թվականի ապրիլի 1-ի դրությամբ նրա շարքերում կար 17 միլիոն 193 հազար 376 մարդ, որից 43 տոկոսը բանվորներ էին, 13 տոկոսը՝ կոլտնտեսային գյուղացիներ: Համագումարից հետո առաջին երեք տարիներում կուսակցության մեջ տարեկան միջին հաշվով ընդունվել է 625 հազար մարդ: Կուսակցությունը չի արագացնում նոր անդամների ընդունելությունը, այլ ամենից առաջ հոգում է իր շարքերի որակական կազմի մասին: Թեկնածու ընդունվածների 59,2 տոկոսը բանվորներ են, բոլոր կոմունիստների 39,3 տոկոսն զբաղված է արդյունաբերության ու շինարարության մեջ, 8,2 տոկոսը՝ տրանսպորտում և կապի բնագավառում, 20,2 տոկոսը՝ գյուղատնտեսության մեջ: Բարձրացել են կոմունիստների կրթվածության, քաղաքական գիտակցության, տեսական պատրաստության մակարդակը, փորձն ու ակտիվությունը, նրանց ավանգարդային դերը կոմունիստական ստեղծագործության բոլոր տեղամասերում:

Գիտական կոմունիզմի կուսակցությունը՝ ՍՄԿԿ-ն, իր ողջ գործունեությունը ծավալում է, ղեկավարվելով մարքս-լենինյան տեսությամբ, որը տալիս է պատմական հեռանկարի ըմբռնումը, օգնում է սահմանելու սոցիալ-քաղաքական ու տնտեսական զարգացման նկրտումները, ճիշտ կողմնորոշվելու միջազգային իրադրության մեջ: Մարքսիզմ-լենինիզմի՝ որպես գործողության անփոխարինելի գիտական ղեկավարման, կենսունակության պարտադիր նախապայմանը նրա ստեղծագործական կիրառումն է և մշտական հարստացումը նոր եզրակացություններով, որոնք ծնում են հեղափոխական պրակտիկան, օբյեկտիվ պատմական պրոցեսը: Մեր կուսակցությունը շատ բան է անում հեղափոխական տեսության հրատապ պրոբլեմների մշակման բնագավառում: Կուսակցական փաստաթղթերում, ՍՄԿԿ և սովետական պետության ղեկավար գործիչների ելույթներում, մեր գիտնականների աշխատություններում ընդհանրացված է դասակարգային պայքարի, սոցիալիստական ու կոմունիստական հասարակության կառուցման վիթխարի փորձը, հանգամանորեն, մարքս-լենինյան դիրքերից վերլուծվել է արդի միջազգային զարգացումը: Այդ ընդհանրացումն ու վերլուծությունն անհերքելիորեն վկայում են, որ նրանք, ովքեր այժմ արտասահմանում ձգտում են «հաղթահարել լենինյան հեղափոխության գաղափարը և տրադիցիոն կոմունիզմի քաղաքական կուլտուրան», չեն կարող իրենց առջև լրջորեն կոմունիստական նպատակներ դնել: Առաջվա պես հրատապ են Լենինի այն խոսքերը, որ նա գրել է դեռևս դարաշեմին. «Սոցիալիստական ամուր կուսակցություն չի կարող լինել, եթե չկա հեղափոխական տեսություն, որը միավորում է բոլոր սոցիալիստներին, որից նրանք քաղում են իրենց բոլոր համոզմունքները, որը նրանք կիրառում են իրենց պայքարի ձևերի և գործունեության եղանակների նկատմամբ. այդպիսի տեսությունը, որը քո ամենախորին ըմբռնողությամբ ճշմարիտ ես համարում, անհիմն հարձակումներից և վատթարացնելու փորձերից պաշտպանելը բոլորովին էլ չի նշանակում ամեն մի քննադատության թշնամի լինել: Մենք Մարքսի տեսության վրա բնավ չենք նայում որպես մի ինչ-որ ավարտուն և անձեռնմխելի բանի. մենք համոզված ենք, ընդհակառակը, որ այդ տեսությունը դրել է միայն անկյունաքարերն այն գիտության, որը սոցիալիստները պետք է առաջ շարժեն բոլոր ուղղություններով, եթե նրանք չեն ցանկանում կյանքից ետ մնալ» (ՆԼԺ, հ. 4, էջ 230): Մարքս-լենինյան տեսական մտքի աչքի ընկնող նվաճումն է զարգացած սոցիալիստական հասարակության գիտական կոնցեպցիան, որ համատեղ մշակել են ՍՄԿԿ-ն և եղբայրական մյուս կուսակցությունները: Այն բովանդակում է տնտեսական հիմքերի, սոցիալական կառուցվածքի, քաղաքական կազմակերպության, հասարակական գիտակցության ձևերի խոր վերլուծությունը զարգացած սոցիալիզմի պայմաններում, ինչպես նաև կոմունիստական շինարարության այլ պրոբլեմների լուծումը, պրոբլեմներ, ինչպիսիք են պրոլետա-

րական դիկտատուրայի պետության վերաճումը համաժողովրդական սոցիալիստական պետության, բանվոր դասակարգի առաջատար դերի պահպանումը հասարակության մեջ և կուսակցության ղեկավար դերի բարձրացումը, սովետական ժողովրդի՝ որպես մարդկանց պատմական նոր հանրության, կազմավորումը:

Հոգալով մարքս-լենինյան տեսության մշտական զարգացման համար՝ կուսակցությունն իր տեսադաշտում է պահում նաև սոցիալիստական հասարակության հոգևոր կյանքի մյուս կարևորագույն բնագավառը՝ աշխատավորների գաղափարաբարոյական դաստիարակությունը:

Կոմունիստական շինարարության տնտեսական, սոցիալ-քաղաքական, գաղափարախոսական սրմատական խնդիրները հաջողությամբ կարելի է լուծել միայն ժողովրդական մասսաների ամենաակտիվ մասնակցությամբ, երբ նրանք խորապես ըմբռնում են այդ խնդիրները, վստահորեն, գիտակցաբար և լիակատար գործիմացությամբ են կենսագործում կանխանշված պլանները: Իսկ դա արվում է միայն մարքս-լենինյան գիտության, նրա դրույթներն ու եզրակացությունները գործնականում կիրառելու ունակության շնորհիվ:

Կիրառելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները՝ մենք շատ բան ենք անում կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողների պատրաստման ու դաստիարակության համար, որոնք տիրապետում են հեղափոխական տեսության խոր գիտելիքների, ունեն գործարար ու քաղաքական վսեմ հատկանիշներ, ունակ են տնտեսավարելու և կառավարելու ժամանակակից պահանջների մակարդակով: Արդեն երկու տարի է, ինչ գործում է որակապես նոր կուսակցական բարձրագույն ուսումնական հաստատությունը՝ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիան, որի պարտականությունն է կենտրոնական, հանրապետական, երկրամասային և մարզային մարմինների, կենտրոնական գաղափարախոսական հիմնարկությունների ու կազմակերպությունների համար պատրաստել բարձրորակ ղեկավար կադրեր: Այն կոչված է ունկնդիրներին տալու մարքս-լենինյան հիմնարար պատրաստություն: Այդ ակադեմիայի ստեղծմամբ ավելի բարձր մակարդակի վրա կդրվի կուսակցական ու սովետական կադրերի տեսական կոփման և որակավորման բարձրացման ողջ համակարգը: Տնտեսական կադրերի պատրաստման առաջատար կենտրոն է դարձել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ակադեմիան:

Հոգևոր կյանքի բնագավառում կուսակցությունը հենվում է իր գաղափարական ներգործության արդյունավետության վրա, խոսքի ու գործի միասնության, կյանքի հետ սերտ կապի, գաղափարական-քաղաքական, բարոյական ու աշխատանքային դաստիարակության զուգորդման վրա: Այս ամենն արտացոլված է ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ, որտեղ ընդհանրացված է կուսակցության վիթխարի պրակտիկ փորձը, նշված են գաղափարախոսական գործունեության այժմեական պրոբլեմների լուծման, թերությունների հաղթահարման ուղիները: Ղեկավարվելով այդ փաստաթղթով, կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները լայնորեն ծավալում են պրոպագանդան ու ագիտացիան, կարգավորում մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքը: ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը կուսակցական մարմիններին, գաղափարախոսական հիմնարկություններին նպատակադրում է՝ հիմնավորված ու ժամանակին հակահարված տալու թշնամական պրոպագանդայի ամեն տեսակ ոտնձգություններին ու կրպարտություններին, հմտորեն մերկացնելու այդ պրոպագանդայի կեղծիքը, ամեն կարգի պրովոկացիաները, ինչպիսի խորամանկությամբ էլ որ մտահղացված լինեն դրանք:

1980 թվականին սովետական ժողովուրդը նշեց երկու կարևորագույն պատմական տարեթիվ՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը և ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի 35-ամյակը: Դա նպաստեց սովետական ժողովրդի կոմունիստական գիտակցականության հետագա աճին, սովետական մարդկանց



սոցիալիստական կոլեկտիվիզմի, հայրենասիրության ոգով և ինտերնացիոնալ պարտքի զգացումով համակելուն:

Կուսակցության XI համագումարում— վերջին համագումարը, որի աշխատանքին մասնակցեց Լենինը— նա ներշնչանքով էր խոսում կուսակցության համախմբվածության, միահամուռության ու կազմակերպական միասնության՝ որպես նրա մեծ նվաճումների մասին: Պատասխանելով թշնամիների զրպարտությանը, թե, իբր, մեր կուսակցությունը կորցնում է մտքի ճկունությունը և իր ողջ օրգանիզմի ճկունությունը, Վլադիմիր Իլյիչն ասաց.

«Ո՛չ: Մենք այդ ճկունությունը չենք կորցրել:

Երբ պետք էր— իրերի ամբողջ օբյեկտիվ դրության համաձայն թե՛ Ռուսաստանում, թե՛ ամբողջ աշխարհում— առաջ գնալ, թշնամու վրա հարձակվել անձնվեր արիությամբ, արագությամբ, վճռականությամբ, մենք այդպես էլ հարձակվում էինք: Երբ պետք լինի, կկարողանանք մի անգամ էլ անել այդ և էլի շատ անգամ» (Երկեր, հ. 33, էջ 384): Հենց այդպես է վարվել մեր կուսակցությունը պատմական բոլոր փուլերում, հենց այդպես է վարվում այժմ և կվարվի առաջիկայում:

Մեր լենինյան կուսակցության համագումարների փայլուն համաստեղության մեջ մտավ նրա XXV համագումարը, դրանց մեջ պատշաճ տեղ կգրավի նաև առաջիկա XXVI համագումարը, որին այժմ խնամքով նախապատրաստվում են ողջ կուսակցությունը, ողջ երկիրը: Սերտորեն համախմբվելով լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը՝ կուսակցությունն ամբողջ ժողովրդի հետ միասին իր հերթական համագումարը դիմավորում է ստեղծագործական ուժերով, սոցիալական լավատեսությամբ, տոգորված խաղաղության ու կոմունիզմի մեծ գործի ճշմարտացիության հավատով:

«Коммунист», № 10, 1980 г.

# ՀԱՆՈՒՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՇԱՐՔԵՐԻ ԱՆԱՂԱՐՏՈՒԹՅԱՆ

Հ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ կազմակերպությունը, աշխատավորական բոլոր կոլեկտիվները բուռն խանդավառությամբ ընդունեցին կուսակցության հերթական՝ XXVI համագումարը հրավիրելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումը: «Ամեն մի համագումար,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— նոր հորիզոններ է բացել մեր կուսակցության և երկրի առջև: Վստահ եմ, որ այդպիսին կլինի նաև առաջիկա համագումարը, որը կոչված է որոշելու պայքարի ստրատեգիան ու տակտիկան կոմունիստական շինարարության սկսվող փուլում»:

Կուսակցության համաժողովը հանրագումարի կբերի տասներորդ հնգամյակում մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերված կարևորագույն նվաճումները, ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների կենսագործման, տնտեսական, սոցիալ-կուլտուրական և հասարակական-քաղաքական կյանքի անշեղ առաջընթացի ապահովման նպատակով կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի ծավալած բազմակողմանի ու տիտանական գործունեության արդյունքները: Անտարակույս, համագումարը կանդրադառնա նաև իր շարքերի միասնության, կազմակերպական և գաղափարական ամրապնդման, կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման խնդիրներին, որոնց լուծման վճռական գործոններից մեկը ՍՄԿԿ շարքերի համալրման և որակական կազմի բարելավման ճիշտ կազմակերպումն է:

Կուսակցության շարքերի համալրման նպատակով կուսկազմակերպությունների ծավալած աշխատանքը մշտական և բարդ պրոցես է: «Եվ որքան առաջ ենք շարժվում, որքան ավելի խոշոր խնդիրներ է լուծում կուսակցությունը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— այնքան ավելի շատ պետք է հոգ տանենք նրա շարքերը համալրելու թարմ ուժերով, այն մարդկանց հաշվին, ովքեր արժանացել են սկզբնական կուսակցական կազմակերպության, ամբողջ կոլեկտիվի ճանաչմանը, ովքեր իրենց ակտիվորեն են դրսևորում արտադրության մեջ և հասարակական կյանքում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 95):

Կուսակցության շարքերի աճը և որակական կազմի բարելավումը կարևորագույն նշանակություն ունեն կուսակցության հետագա ամրապնդման, հասարակության մեջ նրա ղեկավար դերի բարձրացման համար: Կոմունիստական կուսակցության ղեկավար դերի մեծացումը՝ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման այդ օրինաչափությունը, խորապես ու համակողմանիորեն հիմնավորված է ՍՄԿԿ XXIII, XXIV և XXV համագումարների նյութերում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի աշխատություններում: ՍՄԿԿ-ն, նրա Կենտրոնական կոմիտեն միշտ շեշտել են, որ կուսակցության դերի մեծացումն ապահովվում է ոչ թե ինքնաբերաբար, ոչ թե տարերայնորեն, այլ բոլոր կուսակցական կազմակերպությունների, ամեն մի կոմունիստի նպատակասլաց, արդյունավետ ու գիտականորեն հիմնավորված գործունեությամբ և պայմանավորված է բուն կուսակցության ներքին վիճակով ու զարգացմամբ:



Կոմունիզմի կառուցման պրոցեսում մասսաների շրջանում կուսակցության ազդեցության ընդլայնումը և ուժեղացումը ապահովվում են բազմապիսի միջոցառումներով: Այդ ամբողջության մեջ էականներից մեկը ՍՄԿԿ կազմի ամրապնդման, նրա շարքերում ընդունելության բարելավման գործն է: Քաղաքական առաջնահերթ կարևորություն ունեցող այդ խնդրի ճիշտ լուծման վրա մեր կուսակցությունը միշտ էլ հրավիրել է իր բոլոր կազմակերպությունների սևեռուն ուշադրությունը:

Հոգատարություն ցուցաբերելով իր շարքերի աճի և որակական կազմի բարելավման նկատմամբ, կուսակցությունը ելել և ելնում է մարքս-լենինյան այն դրույթից, որ կուսակցության կազմի կատարելագործումը ենթարկված է որոշակի օրինաչափությունների: Նախ, դա օբյեկտիվորեն պայմանավորված պրոցես է: Այլ կերպ ասած, կուսակցության աճը, նրա սոցիալ-դասակարգային կազմի ձևավորումը մեծապես պայմանավորված են սոցիալական այն բազայի վիճակով ու զարգացմամբ, որոնց վրա կուսակցությունը հենվում է: Կուսակցության զարգացման հիմնական օրինաչափություններից մեկը Վ. Ի. Լենինը համարում էր դրանց պայմանավորվածությունը հասարակության մեջ կուսակցության սոցիալական հիմքը կազմող դասակարգային ուժերի վիճակով: Երկրորդ, կուսակցության շարքերի աճի և նրա որակական կազմի բարելավման ոչ պակաս կարևոր խնդիրը այդ պրոցեսի կարգավորումն է կուսակցության, նրա տեղական մարմինների և սկզբնական կազմակերպությունների կողմից: Կարգավորումը բարդ ու բազմակողմանի պրոցես է, որն ընդգրկում է կուսակցության և նրա բոլոր կազմակերպությունների գործունեությունը:

Կուսակցությունն իր զարգացման բոլոր փուլերում զանազան կազմակերպական միջոցառումներով կարգավորել է իր շարքերի աճը: Իր որակական կազմը բարելավելու և աճը կարգավորելու համար կուսակցության ծավալած գործունեությունը եղել և մնում է ներկուսակցական պրոցեսների զարգացմանը նրա գիտական մոտեցման հիմնական հատկանիշներից մեկը: Այստեղ պետք է նկատել, որ մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնության ամրապնդման պայմաններում բուն «կարգավորում» հասկացությունը ոչ հեռու անցյալում ոմանք սխալմամբ մեկնաբանում էին որպես անցած-գնացած, արդի փուլում իր իմաստը կորցրած պրոցես: Իսկ իրականում նոր սոցիալ-տնտեսական պայմանները սոսկ ձևափոխում են կուսակցության շարքերի կարգավորման կազմակերպական միջոցների բնույթը, կուսակցական կազմակերպություններին բնավ չձերբազատելով այդ կարևոր խնդրի լուծումից, մի հանգամանք, որն ամենայն որոշակիությամբ շեշտեցին ՍՄԿԿ XXIV և XXV համագումարները:

Սովետական հասարակության զարգացման արդի փուլում հատկապես նոր, բարձր պահանջներ են ներկայացվում կուսակցության որակական կազմի նկատմամբ: Այժմ ակնբախ է դարձել կոմունիստական շինարարության մասշտաբների աճը, բարդացել նրա խնդիրները, երկրում տնտեսական-սոցիալական խոր վերափոխումներ են կատարվում, արագ տեմպերով զարգանում է գիտատեխնիկական հեղափոխությունը, սովետական մարդիկ դարձել են ավելի գիտակից ու ակտիվ. այս պայմաններում կոմունիզմի համար մղվող պայքարի ավանգարդում կարող են լինել միայն ժողովրդի առաջավոր, առավել գիտակից և ակտիվ ներկայացուցիչները: Ուստի, հաշվի առնելով իր շարքերի աճի սոցիալ-տնտեսական, դասակարգային բարենպաստ նախադրյալները, ՍՄԿԿ-ն միաժամանակ մի ամբողջ շարք միջոցներ է ձեռնարկում՝ բարձրացնե-

լու պահանջները կուսակցության յուրաքանչյուր անդամի ու թեկնածուի, նրա շարքերն ընդունվողների նկատմամբ:

Ընդ որում, կուսակցության սոցիալական բազայի որակական նոր վիճակը ոչ թե նվազեցնում, այլ մեծացնում է կուսակցության շարքերի կազմի կարգավորման նշանակությունը: Այն դիտվում է որպես գաղափարաքաղաքական, դաստիարակչական, կազմակերպական բնույթի միջոցառումների իրականացման բարդ պրոցես: Այդ հարցի վերաբերյալ հիմնարար փաստաթղթեր են կուսակցության XXIII, XXIV և XXV համագումարների որոշումները, «Կուսակցության մեջ ընդունելության և ՍՄԿԿ անդամության թեկնածուների դաստիարակության ասպարեզում Կիրգիզիայի կուսակցական կազմակերպության աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, որոնց սկզբունքային դրույթներն ու կոնկրետ հանձնարարականները բոլոր կուսակցական կազմակերպություններին ավելի բարձր պահանջներ են ներկայացնում կուսակցության մեջ ընդունելությունը կազմակերպելու և կոմունիստի կոչումն ու դերը բարձրացնելու գործում:

Առաջնորդվելով կուսակցության համագումարների ցուցումներով, Կիրգիզիայի կուսակցական կազմակերպության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ, հանրապետության կուսակցական կազմակերպություններն զգալի աշխատանք են կատարել կուսակցության մեջ ընդունելության գործը բարելավելու, նրա շարքերի որակական կազմը կարգավորելու ասպարեզում: Այդ հարցերը մշտապես գտնվել են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ուշադրության կենտրոնում: Կիրգիզիայի կուսակցական կազմակերպության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հրապարակումից հետո Հայաստանի կոմկուսի Կենտկոմը 1977 թվականի ապրիլի 27-ի իր հերթական պլենումում քննարկեց «ՍՄԿԿ XXV համագումարի պահանջների լույսի ներքո կուսակցության մեջ ընդունելության և ՍՄԿԿ անդամության թեկնածուների դաստիարակության ասպարեզում հանրապետության կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին» հարցը: Պլենումն ամփոփեց կուսակցության մեջ ընդունվելու համար մարդկանց ընտրության և երիտասարդ կոմունիստների դաստիարակության ասպարեզում հանրապետության կուսակցական կազմակերպության աշխատանքի արդյունքները: Նշվեց, որ Հայաստանի կուսակցական կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել իրենց շարքերը համալրելու և որակական կազմը բարելավելու, կուսակցության համար բարձր գաղափարական, ակտիվ մարտիկներ դաստիարակելու, կոմունիզմի կառուցման գործում կոմունիստների ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու ասպարեզում:

Կենտկոմի պլենումը դրա հետ մեկտեղ բացահայտեց նաև այդ գործում եղած մի շարք թերություններ ու վրիպումներ և քաղաքային ու շրջանային կոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց դրանց վերացման վրա: Պլենումը կուսակցական կազմակերպություններին պարտավորեցրեց գործուն միջոցներ ձեռնարկել՝ աճած պահանջներին համապատասխան կուսակցության մեջ ընդունելության գործը բարելավելու համար:

Կուսակցության շարքերի որակական կազմի բարելավման հարցերը քննարկվեցին կուսակցության քաղկոմների և շրջկոմների պլենումներում, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում: Հետագայում ևս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմները, շրջկոմները անդրադարձել են այդ հարցերին:

Այսօր կարելի է լիակատար վստահությամբ ասել, որ կատարված աշխատանքը տվել է իր դրական արդյունքը: Այդ աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունները, ամբողջությամբ վերցրած, ապահովում են կուսակցության որակական կազմի հետագա բարելավումը՝ լենինյան նորմերի և սկզբունքների հիման վրա, կուսակցական շինարարության հարցերի վերաբերյալ կուսակցության համագումարների դրույթներին, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումներին խստիվ համապատասխան: Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները ձգտում են հասնել այն



բանին, որ կուսակցության նոր համալրումը որքան կարելի է լավ համապատասխանի մասսաների մեջ կուսակցության գաղափարաքաղաքական ազդեցությունն ուժեղացնելու, հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա կուսակցական ներգործության արդյունավետությունը բարձրացնելու խնդիրներին: Չորս տարում Հայաստանի կոմկուսի կազմն ավելացել է 17.478 մարդով: ՀԿԿ XXVI համագումարի պահին այն իր շարքերում ուներ 142.959 կոմունիստ, իսկ 1980 թվականի հունվարի 1-ի դրությամբ՝ ՍՄԿԿ 160.437 անդամ և անդամության թեկնածու: Ներկայումս կոմունիստ է մոտավորապես յուրաքանչյուր իններորդ աշխատողը և 18 տարեկան ու դրանից բարձր յուրաքանչյուր տասներկուերորդ քաղաքացին:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունները, կարգավորելով իրենց շարքերի աճը, հետևողականորեն վարում են դրանք նախ և առաջ բանվոր դասակարգի լավագույն ներկայացուցիչների հաշվին ամրապնդելու կուրս: Կուսկազմակերպությունների համար սկզբունքային նշանակություն ունի կուսակցության XXV համագումարի այն դրույթը, որ ՍՄԿԿ-ն, դառնալով ամբողջ ժողովրդի ավանգարդը, չի կորցնում իր դասակարգային բնույթը, իր էությամբ եղել և մնում է բանվոր դասակարգի կուսակցություն: Նրա սոցիալական կազմի մեջ բանվոր դասակարգի առաջատար տեղի ապահովումը հաստատուն բնույթ է կրում: Չորս տարում կուսակցության անդամության թեկնածու է ընդունվել 13.075 բանվոր: 1979 թվականին կուսակցության անդամության թեկնածու ընդունվածների 62,9 տոկոսը բանվորներ էին: Մի շարք կազմակերպություններում նրանք կազմում են կուսակցության շարքերը նոր ընդունվածների 70—77 տոկոսը և ավելին: 1976-ից մինչև 1980 թվականը հանրապետության կուսակցական կազմակերպության մեջ բանվորների ընդհանուր թիվն ավելացել է 12.161 մարդով և այժմ կազմում է ավելի քան 63,5 հազար, կամ 39,6 տոկոս: Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպություններն առանձնահատուկ հոգատարություն են ցուցաբերում կուսակցության մեջ արդյունաբերական բանվորներին ներգրավելու նկատմամբ: Վերջին տասնամյակներին հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ տեղի ունեցան լուրջ տեղաշարժեր. ստեղծվեցին արդյունաբերության նոր ճյուղեր, հիմնվեցին նոր, խոշոր ձեռնարկություններ: Եվ բնորոշ է, որ եթե ամբողջությամբ վերցրած արդյունաբերության մեջ կոմունիստների թիվը չորս տարում ավելացել է 20,5 տոկոսով, ապա գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար առավել կարևոր նշանակություն ունեցող ճյուղերում այդ աճը է՛լ ավելի նշանակալի է: Այսպես, օրինակ, էլեկտրոնային արդյունաբերության մեջ կոմունիստների թիվն աճել է 59,3 տոկոսով, հաստոցաշինական, գործիքաշինական արդյունաբերության մեջ՝ 22 տոկոսով: Զգալիորեն աճել է կոմունիստների թիվը նաև ուրիշ առաջատար ճյուղերի ձեռնարկություններում:

Ուսումնասիրությունները, սակայն, ցույց են տալիս, որ բանվորներին կուսակցության մեջ ընդունելու, նրանց տեղաբաշխելու պրակտիկայում կան լուրջ թերություններ ու վրիպումներ: Դեռևս լինում են փաստեր, երբ թերագնահատվում է կուսակցության շարքերում բացառապես առաջավոր բանվորներին ընդունելու սկզբունքը: Չի կարելի հաշտվել և այն բանի հետ, որ կուսակցության մեջ բանվորներին ընդունելիս առանձին կազմակերպություններում անհրաժեշտ պահանջկոտություն չի ցուցաբերվում նրանց գործնական, քաղաքական և բարոյական հատկանիշները գնահատելիս: Որոշ տեղերում հրապուրվում են այնպիսի մարդկանց թեկնածու ընդունելով, որոնք նոր են միայն համալրել ձեռնարկությունների ու կառույցների կոլեկտիվները և չունեն բանվորական ամուր կոփվածք: Նման պայմաններում, բնականաբար, տեսադաշտից դուրս են մնում բարձր որակավորում ունեցող կադրային բանվորները:

Իր ժամանակին Վ. Ի. Լենինը նախազգուշացրել է կուսակցությունն այնպիսի մարդկանցով համալրելուց, որոնք միայն կարճ ժամանակով են դարձել բանվորներ և խոշոր արդյունաբերության մեջ փոքրիշատե լուրջ դպրոց չեն անցել: Ուստի, կուսակցության շարքերը բանվորներով համալրելիս, կուսակցական կազմակերպությունները պետք է ելնեն նաև այն հանգամանքից, թե ինչպիսի կատեգորիաների հաշվին է կատարվում այդ համալրումը, ինչպիսի

քաղաքական ու պրոֆեսիոնալ պատրաստականություն և արտադրական փորձ ունի բանվորը, որքան ժամանակ է աշխատում նա տվյալ կոլեկտիվում։

Կուսակցական շատ կազմակերպություններ հոգ են տանում ամենից առաջ այն մասին, որ կուսակցության շարքերը համալրվեն արտադրության, հասարակական-քաղաքական աշխատանքի դպրոց անցած բանվորներով, որոնք տվյալ կոլեկտիվում իրենց լավ են դրսևորել և պատրաստ են լինել կուսակցության հուսալի ու հետևողական մարտիկներ, օրինակ ծառայել աշխատանքում, կենցաղում և հասարակական-քաղաքական կյանքում։

Բանվորական միջավայրից նոր անդամներ ընդունելու հետ մեկտեղ, կուսակցական կազմակերպությունները շարունակում են համալրվել առաջավոր կոլտնտեսականների հաշվին։ Դա համապատասխանում է, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքի ամրապնդման, կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման շահերին։ Չորս տարում մեր հանրապետությունում ՍՄԿԿ անդամության թեկնածու են ընդունվել 1595 կոլտնտեսական։ Ճիշտ է, կոլտնտեսությունների մի մասը սովխոզների վերակազմվելու, ագրոարդյունաբերական ձեռնարկություններ և միավորումներ ստեղծվելու կապակցությամբ թեկնածու ընդունվածների մեջ կոլտնտեսականների տեսակարար կշիռը նվազել է, բայց հանրապետության կոմկուսի կազմում կոլտնտեսային գյուղացիության ներկայացուցիչների ընդհանուր թիվն աճել է։ Ներկայումս Հայաստանի կուսակցական կազմակերպությունն իր շարքերում ունի 10.924 կոլտնտեսական, իսկ գյուղական կոմունիստների ամբողջ ջոկատը կազմում է 77.520 մարդ, այսինքն՝ հանրապետության կուսակցական կազմակերպության ամբողջ կազմի 48,6 տոկոսը։

Գյուղական կուսկազմակերպությունների ամրապնդման նպատակով հատկապես մեծ աշխատանք է կատարվել ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո։ Այդ ժամանակամիջոցում գյուղական շրջանների կոմունիստների թիվն ավելացել է մոտ 21 հազար մարդով։ Կոլտնտեսություններում կոմունիստ մեխանիզատորների թիվն աճել է 2,1, մասնագետներինը՝ 1,3 տոկոսով։ Միաժամանակ չի կարելի նորմալ համարել, որ վերջին չորս տարվա ընթացքում նվազում է գյուղատնտեսության այնպիսի կարևոր ճյուղում աշխատող կոմունիստների թիվը, ինչպիսին է անասնապահությունը։ Մի շարք կազմակերպություններում, առհասարակ, հանիրավի կրճատվում է անմիջականորեն արտադրության մեջ զբաղված շարքային կոլտնտեսականների ընդունելությունը կուսակցության մեջ։

ՍՄԿԿ XXV համագումարը կարևորեց այն հանգամանքը, որ ժողովրդական տնտեսության մասնագետների, ուսուցիչների և բժիշկների, գիտության, գրականության և արվեստի գործիչների շրջանում էապես աճել է կուսակցական միջնախավը։ Եվ դա բնական է. չէ՞ որ այն դերը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ սովետական ինտելիգենցիան խաղում է գիտատեխնիկական հեղաշրջման իրականացման, ժողովրդի կուլտուրայի բարձրացման, կոմունիստական շինարարության բոլոր խնդիրների լուծման գործում, շատ նշանակալի է (ՍՄԿԿ XXV համագումարի նյութեր, էջ 94)։ Ելնելով համագումարի այդ դրույթից և կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումները, հանրապետության կուսակցական կազմակերպությունները մեծ աշխատանք են կատարում մտավորականության լավագույն ներկայացուցիչներին կուսակցության մեջ ընդունելու համար։ Կազմակերպելով այդ աշխատանքը, կուսկազմակերպությունները հաշվի են առնում, որ սոցիալիստական հասարակության հետագա զարգացմամբ օրինաչափորեն աճում է մտավորականությունը, բարձրանում է նրա դերը երկրի տնտեսական, սոցիալ-կուլտուրական և հասարակական-քաղաքական կյանքում։ Դա լուրջ ազդեցություն է գործում թե՛ կուսակցության աճի, թե՛ նրա սոցիալական կազմի վրա։

Մտավորականության տարբեր խմբերը, իհարկե, միատեսակ ազդեցություն չեն գործում կուսակցության աճի ու կազմի վրա։ Նյութական արտադրության հսկայական մասշտաբները, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կատարվող տեխնիկական առաջընթացը, կոմունիզմի գիտակուլտուրական



հիմքերի ձևավորումը պայմանավորում են զբաղված բնակչության մեջ նախ և առաջ ինժեներատեխնիկական մտավորականության, գյուղատնտեսության մասնագետների, գիտության, կուլտուրայի աշխատողների քանակական աճը և նրանց տեսակարար կշռի մեծացումը։ Մտավորականության այդ կատեգորիաների հաշվին ամենից շատ աճում է ծառայող կոմունիստների խումբը։ Այժմ հանրապետության կուսկազմակերպության ամբողջ կազմի 16 տոկոսը տեխնիկական մտավորականության ներկայացուցիչներ են։ ՍՄԿԿ անդամ են գիտությունների թեկնածուների շուրջ 60 տոկոսը, գիտությունների դոկտորների ավելի քան 80 տոկոսը, բուհերի դասախոսների 60 տոկոսը, միջնակարգ ուսումնական հաստատությունների դասատուներից յուրաքանչյուր չորրորդը, բժիշկներից յուրաքանչյուր հինգերորդը, գրողներից յուրաքանչյուր երկրորդը և այլն։ Չորս տարում հանրապետության կուսկազմակերպության մեջ մտավորականության ներկայացուցիչների թիվն աճել է գրեթե վեց հազար մարդով և ներկայումս հասնում է մոտ 60 հազարի։

Այսպիսով, երբեմն-երբեմն արտահայտվող այն կարծիքը, թե, իբր, մեզանում մտավորականության ներկայացուցիչներին քիչ են ընդունում կուսակցության շարքերը, հիմքեր չունի։ Նման կարծիքի պատճառը, հավանաբար, այն է, որ որոշ կուսկազմակերպություններ պատշաճ լրջությամբ չեն վերաբերվում իրենց շարքերի աճի կարգավորմանը, անհատական, մանրակրկիտ ընտրության փոխարեն սահմանելով կուսակցության մեջ մասնագետների ընդունելության, այսպես կոչված, լիմիտներ, հերթականություն։

ՍՄԿԿ-ի գլխավոր ուժերն այսօր կենտրոնացված են նյութական արտադրության ոլորտում։ Կուսակցության շարքերն ընդունվողների մոտավորապես 76 տոկոսը հասարակական կյանքի այդ վճռական տեղամասում զբաղված մարդիկ են։ Մեր հանրապետությունում նյութական արտադրության տարբեր բնագավառներում աշխատում են կուսակցության 93.885 անդամ և թեկնածու կամ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված կոմունիստների 66,2 տոկոսը։ Ոչ արտադրական ճյուղերում զբաղված են կուսակցության 47.914 անդամ և թեկնածու կամ 33,8 տոկոսը։

Զգալիորեն մեծացել է երիտասարդության ներհոսը կուսակցության շարքերը, բարձրացել է կոմերիտմիության դերը՝ որպես կուսակցության անմիջական ռեզերվի։ Եվ օրինաչափ է կուսակցության XXV համագումարի գնահատականը. «ՍՄԿԿ-ի մեջ երիտասարդության հարաճուն հոսքը ակնբախորեն ցույց է տալիս, որ կուսակցության կենսական ուժերն անսպառ են, որ երիտասարդությունը խորապես նվիրված է կոմունիզմի իդեալներին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութեր, էջ 94)։ Այս իրողության ապացույցը նաև մեր հանրապետությունն է։ 1979 թվականին կոմերիտականները կազմեցին կուսակցության մեջ ընդունվածների ընդհանուր թվի 75,6 տոկոսը։ ՍՄԿԿ անդամության թեկնածուների միջին տարիքը հասնում է 26-ի։ Միայն վերջին չորս տարում մինչև 30 տարեկան կոմունիստների թիվն ավելացել է 10.395-ով և հասել է 28.891-ի։ Ամրապնդվում է կուսակցական միջուկը կոմերիտմիության մեջ, ավելի քան 21 հազար կոմունիստներ ակտիվ աշխատանք են կատարում ՀամԼԿԵՄ շարքերում։ Երիտասարդության թվից կուսակցության շարքերի մշտական համալրումը ամենևին չի նշանակում, թե պետք է արհեստականորեն կասեցնել կուսակցության մեջ այնպիսի մարդկանց ընդունելությունը, որոնք արտադրական երկար ու լավ դպրոց են անցել, հեղինակություն և հարգանք են վայելում աշխատավորական կոլեկտիվներում։

ՍՄԿԿ շարքերն ակտիվորեն համալրում են աշխատավոր կանայք։ Կուսակցության մեջ ընդունվողների կազմում նրանց տեսակարար կշիռը տարեցտարի մեծանում է նաև մեր հանրապետությունում։ 1979 թվականին այն կազմեց 35,7 տոկոս։ Ներկայումս կոմունիստներից 35.040-ը կամ 22 տոկոսը կանայք են։ Սակայն, ընդհանուր առմամբ, հանրապետության կուսակցական կազմակերպության մեջ կուսակցության շարքերն ընդունվող կանանց թիվը դանդաղ է աճում, որի վրա հանրապետության կուսկազմակերպության ուշադրությունն է հրավիրել ՍՄԿԿ Կենտկոմը։ Վիճակն ավելի վատ է Մարտունու, Ամասիայի,

Աղիզբեկովի, Արագածի, Ախուրյանի, Թալինի և այլ շրջանային կազմակերպություններում, որտեղ կանայք կոմունիստների ընդհանուր թվի 13—15 տոկոսից չեն անցնում։ Նաիրիի շրջանում աշխատող 740 ուսուցիչներից 500-ը (67,5 տոկոսը) կանայք են, սակայն ՍՄԿԿ անդամներ են միայն 40-ը, կամ կոմունիստ ուսուցիչների ընդհանուր թվի 8 տոկոսը։

Զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում, կոմունիզմի ուղիով մեր երկրի առաջընթացին համաքայլ, աստիճանաբար ավելի ակնբախ է դառնում կուսկազմակերպությունների կազմի բազմազանության միտումը։ Կուսակցության կազմում, այդ թվում նաև մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունում տեղի ունեցող փոփոխությունները բխում են ՍՄԿԿ վարած սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության և եղբայրության քաղաքականությունից։ Կուսկազմակերպությունները, մեծ ուշադրություն նվիրելով հիմնական ազգության ներկայացուցիչների հաշվին իրենց շարքերի համալրմանը, դրա հետ մեկտեղ հոգում են, որ կոմունիստների շրջանում ըստ արժանվույն ներկայացված լինեն մյուս ազգությունների մարդիկ։ Ներկայումս հանրապետության կուսկազմակերպությունը միավորում է 43 ազգությունների ներկայացուցիչների։ Նրանցից հայերը կազմում են 93,1 տոկոս, ադրբեջանցիները՝ 3,6, ռուսները՝ 1,8, քրդերը՝ 0,4 տոկոս և այլն։ Այս իրողությունը լիովին արտացոլում է հանրապետության ազգային կազմը։

Կուսակցության շարքերի նոր համալրումն իր գերակշռող մեծամասնությամբ աչքի է ընկնում քաղաքական հասունությամբ, պրոֆեսիոնալ և հանրակրթական բարձր մակարդակով։ Դա համապատասխանաբար դրականորեն է անդրադառնում, ամբողջությամբ վերցրած, կուսակցության շարքերի որակի վրա։ Այսօր կոմունիստները հանրապետության աշխատավորների առավել կրթված մասն են, նրանց 76 տոկոսն ունի բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ կրթություն։

ՍՄԿԿ շարքերն ընդունվածների հիմնական մասն արագ ներգրավվում է կուսկազմակերպությունների գործունեության ոլորտը, դառնում նրանց ակտիվ ուժը։ Դրանում մեծ է կուսակցության շրջանային ու քաղաքային կոմիտեների, սկզբնական կազմակերպությունների ծառայությունը։ Կատարելով ՍՄԿԿ XXV համագումարի ցուցումները, «Կուսակցության մեջ ընդունելության և ՍՄԿԿ անդամության թեկնածուների դաստիարակության ասպարեզում Կիրգիզիայի կուսակցական կազմակերպության աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, նրանք առանձնահատուկ ուշադրություն են նվիրում արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերի բարձրացմանը, հասարակական աշխատանքում նրանց նախաձեռնության զարգացմանը, գաղափարական կոփմանը։

Կուսակցական կազմակերպություններում դրսևորվում է կոմունիստների փոխադարձ պահանջկոտությունը, պահպանվում սկզբունքային ընկերական մթնոլորտ։ Դրա հետ մեկտեղ պետք է խոստովանել, որ ՍՄԿԿ շարքերի համալրման նպատակով կուսկազմակերպությունների ծավալած աշխատանքում դեռևս կան լուրջ վրիպումներ ու թերություններ։ Մի շարք կազմակերպություններում պարզունակ մոտեցում է ցուցաբերվում կուսակցության մեջ ընդունելության գործի նկատմամբ, անբավարար են ուսումնասիրվում ՍՄԿԿ շարքերն ընդունվողների գործնական, քաղաքական և բարոյական հատկանիշները։ Այդ ամենի հետևանքով երբեմն կուսակցության շարքերն են ընդունվում համապատասխան արժանիքներ չունեցող մարդիկ։ Այդպիսի փաստեր են եղել Կալինինոյի, Կամոյի, Սևանի, Շամշադինի, Ապարանի և այլ շրջանների կուսկազմակերպություններում։ Այսպես, 1979 թ. մայիսի 26-ին Շամշադինի շրջանի Վարդավանի սովխոզի սկզբնական կազմակերպությունը ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունեց զոոտեխնիկ Կ. Մանուչարյանին։ Նույն տարվա հուլիսին շրջկոմի բյուրոն հաստատեց սկզբնական կազմակերպության ժողովի որոշումը։ Հետագայում պարզվեց, որ Կ. Մանուչարյանը 1971 թվականին դատապարտված է եղել պետական ունեցվածքի հափշտակության համար և այդ



փաստը թաքցրել է կուսակցության մեջ ընդունվելիս։ Իհարկե, նա դեռևս թեկնածուական շրջանում վտարվեց կուսակցությունից, սակայն հարց է ծագում՝ մի՞թե այդպես են ուսումնասիրվում ընդունվողների գործնական ու քաղաքական հատկանիշները։ Արդյոք որոշ պատահական, անարժան մարդկանց չափից ավելի դյուրությամբ չի՞ հաջողվում թափանցել կուսակցության շարքերը։

Ցավոք, այսպիսի օրինակները եզակի չեն։ Անհրաժեշտ է վճռականորեն վերջ տալ կուսակցության մեջ ընդունելիս ցուցաբերվող քաղաքական անփութությանը, լրջորեն ուսումնասիրել մարդկանց, հիշելով, որ նույնիսկ նման առանձին դեպքերը բացասաբար են անդրադառնում կուսկազմակերպության գործունեության, նրա հեղինակության վրա։

Կարևոր նշանակություն ունի ՍՄԿԿ անդամության թեկնածուների հետ տարվող դաստիարակչական աշխատանքի ճիշտ դրվածքը։ ՍՄԿԿ XXV համագումարը կուսկազմակերպություններից պահանջեց բարձրացնել թեկնածուական ստաժի նշանակությունը, ամենայն խստությամբ մոտենալ կուսակցության անդամության թեկնածուի քաղաքական ու գործարար հատկությունների համակողմանի ստուգմանը, նրա մարքս-լենինյան դաստիարակությանը։ Հանրապետությունում այս պահանջի կատարման ասպարեզում որոշ փորձ կուտակված է։ Կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին առընթեր և բազմաթիվ խոշոր սկզբնական կուսկազմակերպություններում գործում են երիտասարդ կոմունիստների դպրոցներ։ Նրանք ներգրավվում են կուսակցական լուսավորության ցանցում, նրանց մեծամասնությունն ունի մշտական կամ ժամանակավոր հանձնարարություններ։

Սակայն այդ գործում դեռևս իսպառ չեն վերացվել թերությունները։ Որոշ կազմակերպություններում պատշաճ ուշադրություն չի նվիրվում կուսակցության անդամության թեկնածուների հետ տարվող աշխատանքին, որի հետևանքով նրանց մի մասը քննություն չի բռնում և դուրս է մնում կուսակցությունից։ Անցած չորս տարում ՍՄԿԿ շարքերից դուրս է մնացել և վտարվել 342 անդամության թեկնածու։ Կուսակցության անդամության թեկնածուների հետ տարվող անբավարար աշխատանքի մասին է վկայում այն, որ առ 1-ը հունվարի 1980 թվականի թեկնածուների 9,6 տոկոսը, իսկ որոշ շրջաններում մինչև 15 տոկոսն ունի ժամկետանց ստաժ։

Կուսակցության քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները պարտավոր են բարձրացնել ՍՄԿԿ անդամության թեկնածուների շրջանում տարվող աշխատանքի մակարդակը, միջոցներ ձեռնարկել, որ նրանք խորապես յուրացնեն մարքսիզմ-լենինիզմի հիմունքները և նրանց գաղափարայնությունն արտացոլվի կոմունիստական շինարարության համաժողովրդական գործում ներդրված ավանդում։

Վերջին տարիներս հանրապետության կուսակցական կազմակերպությունները մեծ աշխատանք են կատարել ժողովրդական տնտեսության վճռական բնագավառներում կոմունիստների ուժերի տեղաբաշխումը բարելավելու, նրա տարբեր օղակներում կուսակցության ազդեցությունն ուժեղացնելու համար։ Այնուամենայնիվ, առանձին կուսշրջկոմներ, սկզբնական կուսկազմակերպություններ այդ գործին պատշաճ նշանակություն չեն տալիս, խորապես չեն վերլուծում կազմակերպությունների կազմում տեղի ունեցող փոփոխությունները, չեն կարևորում կոմունիստների ճիշտ տեղաբաշխման, նրանց ավանգարդային դերի բարձրացման, առաջավոր, ակտիվ աշխատողների հաշվին կուսակցության շարքերը համալրելու միջոցով այս կամ այն տեղամասում կուսակցական ազդեցությունն ուժեղացնելու անհրաժեշտությունը։ Այդ ամենը հանգեցնում է այն բանին, որ առանձին աշխատավորական կոլեկտիվներից կուսշարքերն են ընդունվում մեծ թվով այնպիսի մարդիկ, որոնց աշխատանքի բնույթը լիովին չի արտացոլում տվյալ ձեռնարկության և կազմակերպության պրոֆիլը։ 1978 թ. ընթացքում Լենինյան շրջանում գիտական հիմնարկություններից ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների միայն կեսն են եղել գիտնականներ, ինժեներատեխնիկական աշխատողներ։ Նման երևույթներ են նկատվում նաև կու-

# ՈԳԵՇՆՉՈՂ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ, ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ

**ԴՈՐԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀԿԿ Կամոյի շրջկոմի առաջին քարտուղար

ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱՍՊԵՏ ԿԱՄՈՅԻ անունը կրող շրջանի աշխատավորները Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմկուսի կազմավորման պանծալի 60-ամյա հոբելյանը դիմավորում են տնտեսական և սոցիալ-կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած աննախադեպ նվաճումներով: Անցած 60 տարիները շրջանի արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, ժողկրթության ու առողջապահության բնագավառի աշխատողների համար եղել են պայքարի ու հաղթանակների մեծ ու փառահեղ ժամանակաշրջան: Այսօր մեր շրջանը դարձել է Սովետական Հայաստանի ծաղկուն ու բարեշեն անկյուններից մեկը:

Մեր աշխատավորները լավ են գիտակցում, որ այսօրվա բարեկեցիկ ու երջանիկ կյանքի համար պարտական են մեծ Լենինին, նրա ստեղծած կոմունիստական կուսակցությանը: Այդ սերն ավելի վառ արտահայտվեց մեծ առաջնորդի ծննդյան 110-ամյակի նախապատրաստման ու անցկացման օրերին, մասնավորապես, լենինյան շաբաթօրյակի ընթացքում մեր մարդկանց կատարած հայրենանվեր գործերում: Առաջիկա ՍՄԿԿ XXVI համագումարը քաղաքական ու աշխատանքային նոր թափ է հաղորդել շրջանի աշխատավորությանը: Դիմելով տարեգրությանը՝ փորձենք ցույց տալ, թե ինչպիսին էր նախասովետական շրջանի Նոր Բայազետը (ներկայիս Կամոն), ինչ ժառանգեց հնից և պատմական կարճ ժամանակամիջոցում ինչպիսի նաճումներ ձեռք բերեց:

Աննախանձելի է եղել նորբայազետցու անցյալը: Մարդիկ ապրել են գետնափոր, կավածեփ հյուղակներում, հողը մշակել նահապետական արորով ու բահով, ստացած չնչին բերքով մի կերպ քարշ տվել ընտանիքի գոյությունը: Հազարավոր նորբայազետցիներ պանդխտության մեջ կորցնում էին իրենց ջահել կյանքը, իսկ հեռու հայրենիքում մնացած ընտանիքը կործանվում էր տառապանքի ու անհուսության մեջ: Այն ժամանակվա Նոր Բայազետը դիպուկ է նկարագրել Մարգար Ավետիսյանն իր Հրեղեն ալիքներ վիպակում. «Այստեղ-այնտեղ երևում են երկհարկանի մեծ շինություններ՝ սրբատաշ քարե ճակատներով ու գեղեցիկ պատշգամբներով, որոնք, կարծես, պատահականորեն բուսել են, ապա համատարած գորշությունը խախտելու համար և գաճաճների աշխարհն ընկած հսկայի պես զարմանքով ու արհամարհանքով նայում են իրենց շուրջը տափած թզուկներին»:

Աննշան էր դպրոցների ու նրանցում սովորող աշակերտների թիվը: Շրջանի յոթ դպրոցներում սովորում էր ընդամենը 300 աշակերտ, որոնց գերակշռող մասը հարուստների երեխաներ էին: Անմխիթար վիճակում էր բնակչության բուժսպասարկումը: Շրջանում կար հինգ մահճակալանոց մեկ հիվանդանոց, ուր աշխատում էին մեկ բժիշկ և մի քանի բուժքույր: Խոսք լինել չէր կարող աշխատավորների կուլտուրական մակարդակի բարձրացման մասին: Նրանց համար անհասանելի, խորթ և տարօրինակ էին թատրոնը, գրադարանը, ռադիոն, էլեկտրականությունը: Շրջանի մի շարք գյուղեր նույնիսկ չունեին խմելու ջուր, ապրելու տարրական պայմաններ, խիստ անբարեկարգ էին փողոցները:

Սոցիալ-տնտեսական ծանր վիճակը ավելի ու ավելի էր խորացնում աշխա-



տավորների ատելությունը տիրող կարգերի նկատմամբ, բայց նրանք չգիտեին պայքարի, երջանիկ կյանք ստեղծելու ուղին: Այդ ուղին ցույց տվեց մարքս-լենինյան ամենահաղթ ուսմունքը: Մարքսիստական գաղափարները Նոր Բայազետ թափանցեցին XX դարի սկզբներին: Դրանց տարածողները Թիֆլիսի և Բաքվի արդյունաբերական ձեռնարկություններում աշխատող նորբայազետցիներն էին: Դեռևս ռուսական առաջին բուրժուադեմոկրատական հեղափոխության նախօրյակին՝ 1904 թ., աննկուն հեղափոխական Հովհաննես Սարուխանյանը Նոր Բայազետում կազմակերպեց մարքսիստական խմբակ, իսկ հետագայում, դաշնակների տխրահռչակ տիրապետության տարիներին, դրանց թիվը հասավ 15-ի: Այդ խմբակները աշխատավորներին պայքարի էին կոչում՝ ընդդեմ տիրող կարգերի: Նոր Բայազետի բոլշևիկները հմտորեն օգտագործում էին բոլոր լեգալ հնարավորությունները դաշնակների դեմ մղվող պայքարում: Արհմիութենական ժողովները, ուսուցչական հավաքները, կոոպերատիվ կազմակերպությունները, քաղաքային դուման այն միջավայրն էին, ուր ելույթ էին ունենում նրանք ու մերկացնում դաշնակների խժդժությունները:

Եվ ահա, մայիսյան մի առավոտ, մահվան սարսափները հազար անգամ տեսած աշխատավորությունը, այլևս չկարողանալով դիմանալ դաշնակների ավազակային բռնություններին ու կամայականություններին, զինված ապստամբության դրոշ պարզեց: Եվ նորբայազետցին ընդվզեց: Ապստամբվեց, որ ցրի իր հոգում ծանրացած թանձր մառախուղը, կարողանա վայելել լույսն ու արևը, ջերմանա նրանով և ծաղկեցնի իր երկիրը:

Նոր Բայազետում և հարևան Ղարանլուղում ծագած Մայիսյան ապստամբության ղեկն իր ձեռքը վերցրեց աննկուն հեղափոխական Հ. Սարուխանյանը: Թեժ մարտեր տեղի ունեցան, Նոր Բայազետը ձեռքից ձեռք անցավ: Բոլշևիկները և նրանց դրոշի ներքո համախմբված մարտիկները կռվում էին արիաբար: Բայց ուժերն անհավասար էին: Դաշնակներին հաջողվեց ճնշել ապստամբությունը: Ստոր մատնությամբ Հ. Սարուխանյանն ընկավ թշնամու ձեռքը: Անմարդկային, աննկարագրելի տանջանքների ենթարկելուց հետո, ծանր վիճակում թշնամին նրան բանտ նետեց: Մինչև գնդակահարության տանելը, դաշնակները փորձում էին Սարուխանյանից գրավոր փաստաթուղթ վերցնել այն մասին, որ նա հրաժարվում է կոմունիստական գաղափարներից: «Կճոճվեմ կախաղանի վրա,— պատասխանել է Սարուխանյանը,— բայց հեղափոխությանը չեմ դավաճանի»:

...Նոր Բայազետի գավառը տվեց հեղափոխական գործիչների մի փայլուն համաստեղություն՝ Հովհաննես Սարուխանյան, Բատիկ Բատիկյան, Սուրեն Մակարյան, Գրիգոր Դադիկյան և ուրիշներ: Շրջանի երախտապարտ աշխատավորները չմոռացան նոր կյանքի արշալույսին զոհված հերոսներին, նրանց, ովքեր ընկան հրաբորբ Մայիսին՝ ազատաբեր Նոյեմբերի համար, մեր այսօրվա երջանիկ ու ապահով կյանքի համար: Այժմ նրանց անուններով են կոչվում գյուղեր, դպրոցներ, փողոցներ: Քաղաքային զբոսայգին, որտեղ հանգչում են Հ. Սարուխանյանի, Բ. Բատիկյանի, Ն. Պետրովի, Փ. Միքայելյանի և Հ. Պետրոսյանի աճյունները, ի պատիվ նրանց սխրանքների, կոչվում է Մայիսյան ապստամբության անվան: Մեծ Հոկտեմբերի 60-ամյակի տարում, 1977 թ. նոյեմբերին այստեղ կանգնեցվեց Մայիսյան ապստամբության հերոսների հուշարձան-կոթողը:

...Եկավ 1920 թ. ազատարար Նոյեմբերը: Նոր կարգեր ստեղծվեցին նաև Նոր Բայազետում և շրջակա գյուղերում: Սովետական իշխանության տարիներին աննախադեպ վերափոխումներ կատարվեցին ամենուրեք: Նորը հաղթանակեց: Այսօր հինը հիշեցնող գրեթե ոչինչ չի մնացել: Նախկին հողաշեն ու գետնափոր խրճիթների փոխարեն քաղաքում ու շրջանի գյուղերում վեր են խոյացել տուֆակերտ շենքեր, դպրոցներ, հիվանդանոցներ, մանկապարտեզներ, մշակույթի պալատներ ու ակումբներ, հասարակական ու արտադրական բազմաթիվ օբյեկտներ: Արմատական փոփոխություններ են տեղի ունեցել շրջանի ժողտնտեսության բոլոր ճյուղերի զարգացման, գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ասպարեզում:

Սովետական իշխանության տարիներին ծնվեց, հասակ առավ Կամո քա-

զաքը՝ բազմահազարանոց բնակչությամբ։ Երբեմնի փինաչիների արհեստանոցներ ունեցող Նոր Բայազետն այսօր դարձել է հանրապետության արդյունաբերական խոշոր կենտրոններից մեկը։ Քաղաքում գործող 18 արդյունաբերական ձեռնարկությունները երկրին տալիս են ավելի քան 100 տեսակի արտադրանք։ «Պատրաստված է Կամոյում» մակնիշը կրող շատ արտադրատեսակներ (կաբելային արտադրանք, ճշգրիտ սարքեր, հայկական գորգեր) լայն պահանջարկ են վայելում ո՛չ միայն Սովետական Միությունում, այլև չորս տասնյակից ավելի արտասահմանյան երկրներում։ Տարեցտարի մեծանում են ձեռնարկությունների կարողությունները, արտադրության ծավալը։ Միայն անցած տարի քաղաքի գործարաններն ու ֆաբրիկաները թողարկեցին 81 միլիոն ռուբլու համախառն արտադրանք։ Ընթացիկ տարում նախատեսված է այն հասցնել ավելի քան 92 միլիոն ռուբլու։

Չնայած առանձին դեպքերում նյութատեխնիկական և կոմպլեկտավորող իրերի մատակարարման դժվարություններին, արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները հաջողությամբ են լուծում իրենց առջև ծառացած խնդիրները։ Նրանք պատվով դուրս եկան Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակի առթիվ ծավալված սոցմրցությունից, բազմաթիվ բանվորներ պարգևատրվեցին լենինյան պատվոգրով։ Շարունակելով մրցությունը ի պատիվ Հայաստանի վերածննդի 60-ամյակի, նրանք առաջին կիսամյակին պլանից ավելի թողարկել են 928 հազար ռուբլու և իրացրել 677 հազար ռուբլու արտադրանք։ Իսկ կարի ֆաբրիկայի կոլեկտիվն արդեն զեկուցել է տասներորդ հնգամյակի պլանային առաջադրանքները կատարելու մասին։ Այժմ մեր խնդիրն է՝ չունենալ առաջադրանքները չկատարող ոչ մի ձեռնարկություն։

Արդյունաբերությունն ընդլայնում է իր շրջանակները. ձեռնարկությունների մասնաճյուղեր են հիմնվել Սարուխան, Կարմիր, Լճափ, Լանջաղբյուր, Ծովազարդ, Նորադուզ գյուղերում։ Բացի այդ, Կամո քաղաքի մի քանի գործարաններ իրենց մասնաճյուղերն ունեն նաև Վարդենիսի, Ղափանի, Եղեգնաձորի շրջաններում։

Այստեղ ի՞նչն է կարևորը։ Առաջին հերթին այն, որ արդյունաբերության բուռն վերելքը բարերար ներգործություն է թողել շրջանի ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալ-կուլտուրական առաջընթացի, մարդկանց հոգևոր աշխարհի հարստացման վրա։ Արդյունաբերության զարգացման շնորհիվ նախ՝ ձևավորվել է մեր հասարակության առաջատար ուժը ներկայացնող բանվոր դասակարգի մի ստվար ջոկատ, առաջացել է մի նոր խավ՝ տեխնիկական մտավորականություն։ Բավական է ասել, որ արդյունաբերության մեջ զբաղված են ավելի քան 11 հազար բանվորներ և երկու հազար ինժեներատեխնիկական աշխատողներ։ Տեխնիկական մտավորականությունն ակտիվորեն մասնակցում է շրջանի հասարակական-քաղաքական կյանքին։ Նրանցից 950-ը կուսակցական ու կոմերիտական քաղաքական լուսավորության ցանցի և տնտեսագիտական կրթության պրոպագանդիստներ, քաղինֆորմատորներ, ագիտատորներ են։ Երկրորդ՝ տարիներ շարունակ շրջանի համար առաջնային համարվող արտագնացության պրոբլեմն այսօր լիովին հաղթահարվել է և լուծվել է աշխատունակ բնակչությանը արտադրության մեջ ընդգրկելու հարցը։ Այս հանգամանքը, ինչ խոսք, ո՛չ միայն բարձրացնում է շրջանի բնակչության զբաղվածությունը, որը շատ կարևոր է, այլև ստեղծում է հարազատ վայրերում մնալու, աշխատելու, դրանք ծաղկեցնելու ու շենացնելու նոր հոգեբանական մթնոլորտ։ Մեզ ուրախացնում է, որ երիտասարդությունը, ավարտելով միջնակարգ դպրոցը, հաճույքով անդամագրվում է բանվորական կոլեկտիվին և մնում հայրենի վայրերում։ Վերջին հինգ տարում միջնակարգն ավարտած 2000 պատանիներ ու աղջիկներ ոտք են դրել գործարաններն ու ֆաբրիկաները։

Երրորդ, լուծվում են սոցիալական մի շարք կարևոր խնդիրներ։ Խոշոր ձեռնարկությունները կառուցում են բնակելի տներ, ակումբներ, մանկապարտեզներ, հանգստի օբյեկտներ, հիմնում գրադարաններ, որոնք հսկայական դեր են խաղում աշխատավոր մարդկանց կենսամակարդակի բարձրացման, նրանց հոգևոր աշխարհի հարստացման գործում։ Այսպես, նրանց ուժերով կառուցվել են 35000 քմ օգտակար մակերեսով բնակելի տներ, 10 ակումբ, 5 մանկապար-



տեզ, երկուական հանգստի տուն ու պիոներական ճամբար։ Գործարանային 5 գրադարանում կա 13 հազար կտոր գրականություն։

Շրջանի աշխատավորության եռանդուն ջանքերի շնորհիվ անշեղ վերելք է ապրում նաև գյուղատնտեսությունը։ Տարեցտարի ընդարձակվում են ոռոգելի հողատարածությունները, ավելանում է հանրային հոտի գլխաքանակը, բարձրանում են ցանքադաշտերի բերքատվությունը, անասունների մթերատվությունը։ Ահա բնորոշ փաստ. 1933 թվականին շրջանում կար 9900 հեկտար վարելահող, իսկ այժմ տնտեսությունները մշակում են 15 հազար հեկտար հողատարածություն, 2736-ի փոխարեն պահում են 18400 գլուխ խոշոր, 5500-ի դիմաց՝ 88 հազար մանր եղջերավոր անասուն։ Տասներորդ հնգամյակի անցած չորս տարում շրջանի տնտեսությունները պետությանն են վաճառել 11500 տոննա հացահատիկ, 15600 տոննա կարտոֆիլ, 2305 տոննա ծխախոտի հումք, 8609 տոննա միս, 31677 տոննա կաթ, 857 տոննա բուրդ և այլ մթերքներ։ Այս ցուցանիշները զգալիորեն գերազանցում են նախորդ հնգամյակների մակարդակը։

Կուսակցության ու կառավարության անդուլ հոգատարության շնորհիվ տարեցտարի բարձրանում է մեքենայացման աշխատանքի մակարդակը գյուղատնտեսության մեջ, մեքենատրակտորային հավաքակայանները համալրվում են ժամանակակից գյուղատնտեսական բարձրարտադրողական նոր մեքենաներով ու կցվող գործիքներով, դյուրին ու հաճելի է դառնում հողագործի աշխատանքը։ Հատուկ ուշադրություն է նվիրվում հողերի պարարտացմանը։ Վերջին երկու հնգամյակում շրջանի գյուղատնտեսությունը ստացել է 22700 տոննա հանքային պարարտանյութ, 201 տրակտոր, հացահատիկի 71 կոմբայն, 113 բեռնատար ավտոմեքենա, 1 միլիոն 950 հազար ռուբլու գյուղատնտեսական այլ մեքենաներ, գործիքներ։ Դաշտ է փոխադրվել 197 հազար տոննա օրգանական պարարտանյութ։ Վերջին 3—4 տարիներին շրջանի տնտեսությունների և «Գյուղտեխպետկոմի» շրջանային միավորման մելիորատիվ ջոկատի ուժերով արմատական և մակերեսային բարելավման են ենթարկվել 6800 հեկտար բնական խոտհարք ու արոտավայր, հարթեցվել է 1200 հեկտար վարելահող։ Գավառագետի ջրարբիացման վարչության միջոցով ջրարբիացվել են 8000 հեկտար արոտավայր ու խոտհարք։

Գիտատեխնիկական առաջընթացի հիմքի վրա մեր շրջանում ևս կրճատվում է գյուղատնտեսության մեջ զբաղվածների թիվը։ Գոյավորվում է նոր մարդը, խոր արմատներ է գցում սոցիալիստական ապրելակերպը։ Մեզանում ի հայտ է գալիս գիտելիքներով հարուստ աշխատողի նոր կերպարը, որի համար աշխատանքը կոլեկտիվում ինքնահաստատման միջոց է։ Վերջինս կատարվում է հատկապես արդյունաբերության մի շարք օղակների մեքենայացման ու ավտոմատացման հիմքի վրա, որպիսիք առկա են քաղաքի ձեռնարկություններում։ Հիրավի, այսօր լայն է բանվորի, գյուղացու մտավոր գործունեության ոլորտը և ավելի ակնհայտ է դառնում նրանց ստեղծագործական հակումը։ Նրանց ջանքերը բարձր են գնահատվում։ Ձեռք բերած հաջողությունների համար նախընթաց տարիներին շրջանի գյուղատնտեսության 18 առաջավորներ արժանացել են սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման։ Արդյունաբերության, գյուղատնտեսության բնագավառում աչքի ընկած շատ բանվորներ ու ծառայողներ պարգևատրվել են Լենինի, Հոկտեմբերյան հեղափոխության, Աշխատանքային կարմիր դրոշի և կառավարական այլ շքանշաններով ու մեդալներով, ստացել զանազան պարգևներ։

ՍՄԿԿ XXV համագումարը կադրային քաղաքականությունը համարեց մի հզոր լծակ, որով կուսակցությունը ներգործում է հասարակական զարգացման ընթացքի վրա։ Մենք էապես բարելավել ենք կադրերի հետ տարվող աշխատանքը, նրանց ընտրության ու դաստիարակության գործը։ Մեր ղեկավար ու միջին օղակի կադրերն այսօր ձգտում են լավ տիրապետել արտադրության կազմակերպման ու ղեկավարման գիտական հիմունքներին, ղեկավարման վարչատնտեսական մեթոդներին, դառնալ գիտատեխնիկական առաջընթացի ակտիվ ջատագով, մասսաների հմուտ կազմակերպիչ ու դաստիարակ։ Կուսակ-

ցության շրջկոմը նույն պահանջներն է առաջադրում նաև նրանց, ովքեր ղեկավարում են կուսկազմակերպությունների գործունեությունը:

Զարգացած սոցիալիզմի արդի փուլում շրջանի բոլոր հիմնարկ-ձեռնարկությունները, գյուղատնտեսական, կրթական, կուլտուր-լուսավորական հիմնարկություններն ու նրանց առանձին օղակներն ապահովված են հմուտ, բանիմաց, հիմնականում բարձրագույն կրթությամբ կադրերով: Հիմա չափանիշներն այլ են: Այսօր արդեն հուշ է դարձել թեկուզ այն իրողությունը, երբ շրջանի հեռավոր գյուղը այս կամ այն առարկայի դասատու կամ բժիշկ չուներ: Գյուղի կյանքում տեղի ունեցած կարևոր փոփոխություններից է այն, որ ամենուրեք ձևավորվել է մտավորականության ստվար ջոկատ, որի կազմում կան ուսուցիչներ, բժիշկներ, ինժեներներ, ինչպես և գյուղատնտեսական բարձրագույն կրթություն ունեցող երիտասարդներ: Այժմ վերջիններս համալրում են պետական տնտեսությունների միջին օղակի ղեկավար կազմը, հողագործի ավանդական աշխատանքին բերելով գիտություն և փորձ: Արտադրության բնագավառի միջին ղեկավար կադրերի շուրջ 60 տոկոսը կոմունիստներ են և դրանով իսկ մեզ հաջողվում է բարձրացնել նրանց անձնական պատասխանատվությունը կուսակցության առաջադրած խնդիրների լուծման համար:

Սոցիալիստական հասարակության անդամների կենսամակարդակի բարձրացումը, նրանց բազմազան պահանջմունքների առավել լրիվ բավարարումը կուսակցության տնտեսական քաղաքականության գերագույն նպատակն է: Մեր երկրում լայն հնարավորություններ են ստեղծվել կուսակցության առաջադրած հիմնական սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման համար: «Դա վերաբերում է նախ և առաջ սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացմանը, նրանց աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավմանը, առողջապահության, կրթության, կուլտուրայի զգալի առաջադիմությանը՝ այն ամենին, ինչը նպաստում է նոր մարդու ձևավորմանը, անհատի համակողմանի զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 60): Կուսակցության այս պահանջների կատարման կոնկրետ օրինակը կարող է տալ նաև մեր շրջանը:

Արդյունաբերության և գյուղատնտեսության առաջընթացի հետ միասին ակնբախ նվաճումներ են ձեռք բերվել նաև ժողովրդական կրթության ասպարեզում: Դպրոցական գործը խոր պրոցես ապրեց և հասավ այսօրվա բարձր մակարդակին: Կուլտուրական հեղափոխության աննախադեպ նվաճումներից մեկը համատարած գրագիտության ապահովումն է: Ի՞նչ համեմատության եզր գտնես հնի հետ, երբ այժմ շրջանում գործող 26 հանրակրթական, բանվորի, գյուղերի և հեռակա դպրոցներում, անասնաբուծական-անասնաբուժական ու ինդուստրիալ տեխնիկումներում, պրոֆտեխուսումնարանում, երաժշտական և գեղարվեստի դպրոցներում, սովորում են ավելի քան 15 հազար պատանիներ ու աղջիկներ, դասավանդում են 1000 ուսուցիչներ: 2000 մանուկներ դաստիարակվում են 20 մսուր-մանկապարտեզներում: Մեր նախորդները երազել անգամ չէին կարող այս մասին: Բոլոր դպրոցներն ու մանկապարտեզներն ապահովված են նոր, հարմարավետ տիպային շենքերով, որոնք հիմնականում կառուցվել են վերջին մի քանի տարիներին: Դա հնարավորություն է ընձեռել գյուղական դպրոցներում անցնել մեկհերթյա պարապմունքի՝ կաբինետային համակարգով:

Դպրոցը դաստիարակչական պրոցեսի բոլոր ուղղությունների ու ձևերի թվում երիտասարդ մարդու անձնավորության, նրա սոցիալիստական ապրելակերպի ձևավորման գործում հատուկ դեր է հատկացնում աշխատանքային դաստիարակությանը: Այն զուգորդվում է աշակերտի հասարակական-քաղաքական, բարոյական, էսթետիկական և ֆիզիկական դաստիարակության հետ: Երիտասարդության շրջանում արդյունավետ աշխատանք է տարվում նրանց ակտիվ կենսադիրքորոշման առումով:

Մշակութային կյանքի բնագավառում շրջանը հնից գրեթե էական բան չի ժառանգել: Իսկ հիմա Կամո քաղաքն ու գյուղերը ծածկված են կուլտուրայի օջախների խիտ ցանցով: Գործում են տասնհինգ կուլտուրայի տուն ու ակումբ, գրադարանների կենտրոնացված համակարգ, որի գրքային ֆոնդն անցնում է



250 հազար կտորից: Բոլոր գյուղերում կան ստացիոնար կինոկետեր: Վերջին տարիներին կուլտուրայի տներ են կառուցվել Բատիկյանում, Կարմիրում, Նորադուզում, Լանջաղբյուրում, Գեղարքունիքում, Սարուխանում, Այրիվանում, Լճափում և այլուր: Քաղաքում գործում են պետական թատրոն, երկրագիտական թանգարան: Շատ ձեռնարկություններ ունեն իրենց ակումբ-գրադարանները:

Մեծ ուշադրություն է նվիրվում բնակչության առողջապահության գործի կազմակերպմանը: Այժմ շրջանում գործում են 225 մահճակալանոց կենտրոնական հիվանդանոց, սանլուսատուն, սանէպիդկայան, մանկական ու կանանց կոնսուլտացիաներ, ծննդատուն, ստոմատոլոգիական պոլիկլինիկա, որոնք ապահովված են բժշկական նորագույն սարքավորումներով: Բոլորովին վերջերս շահագործման հանձնվեց ժամանակակից սարքավորումներով հագեցած պոլիկլինիկայի նոր շենքը, որն օրական կարող է ընդունել 500 այցելու: Բոլոր գյուղերն ունեն բժշկական տեղամասեր կամ բուժկետեր: Դրանցում բժիշկների թիվը հասնում է 62-ի, միջին բուժաշխատողներինը՝ 220-ի: Եվ օրինաչափ է, որ իսպառ վերացել են նախասովետական շրջանում մարդկային հարյուրավոր կյանքեր խլող շատ հիվանդություններ, նվազագույնի է հասել երեխաների մահացության տոկոսը, բարձրացել է երկարակեցության մակարդակը:

Բնակարանային ապահովվածությունն այսօր մեր սոցիալական գլխավոր պրոբլեմներից է և այդ ասպարեզում հասել ենք էական հաջողությունների: Արագ թափով առաջ է ընթանում բնակելի տների շինարարությունը: Ամեն տարի կառուցվում և աշխատավորության օգտագործմանն են հանձնվում բազմաթիվ բնակելի և վարչական, կուլտուր-կենցաղային, դպրոցական, նախադպրոցական շենքեր և այլն: Բավական է ասել, որ միայն այս տարի շրջանի շինարարական չորս կազմակերպությունների ուժերով կատարվելու է ավելի քան 10 միլիոն ռուբլու շինարարություն: Ամեն տարի մի քանի հարյուր առանձնատուն են կառուցում գյուղական աշխատավորները:

Վերջին տասնամյակում մեծ գործ է կատարված գյուղերի, բնակելի տների, դպրոցների, ակումբների վերակառուցման ու բնակչության սպասարկման օբյեկտների կառուցման բնագավառում: Ընդլայնվել է առևտրի, հասարակական սննդի և կենցաղային ծառայության ցանցը, բարձրացել սպասարկման կուլտուրան:

Շրջանում կա 10 գյուղ: Ճիշտ է, դրանք քանակով քիչ են, բայց հանրապետությունում՝ ըստ բնակչության թվի, առաջնակարգ տեղ են գրավում: Վերցնենք թեկուզ Սարուխանը: Գյուղի բնակչությունը հասնում է 6500 մարդու: Դժվար է տարբերել սարուխանցու և մոտակա քաղաքների բնակիչների կուլտուր-կենցաղային պայմաններն ու ապրելակերպը: Առանձնապես վերջին տարիներին, արտադրության վերելքին զուգընթաց, ավելացել են սովխոզների բանվորների եկամուտները: Գյուղում կառուցվել է տիպային հանրախանութ, գործում են պարենային և տնտեսական ապրանքների չորս խանութ, հասարակական սննդի օբյեկտներ: Գյուղն ունի երկու միջնակարգ դպրոց և 1467 աշակերտ: Նրանց կրթության և դաստիարակության գործով զբաղված են 93 ուսուցիչներ, որոնց 85 տոկոսը՝ բարձրագույն կրթությամբ, և բոլորն էլ տեղացիներ: Ամեն տարի մոտ 120 պատանիներ ու աղջիկներ են ավարտում միջնակարգ դպրոցը, նրանց մի մասը ուսումը շարունակում է բարձրագույն ուսումնական հաստատություններում, իսկ մեծ մասը՝ գնում արտադրություն: Գյուղի երկու դպրոցներն էլ այսօր ունեն տիպային, հարմարավետ շենքեր, ուսման ու դաստիարակության անհրաժեշտ պայմաններ՝ ընդարձակ, լուսավոր դասասենյակներ, հարուստ լաբորատորիաներ, առարկայական կաբինետներ, մարզահրապարակ ու մարզադահլիճ:

Գյուղի կառուցապատումը, բարեկարգումն ու բարեփոխություններն իրականացվում են ըստ մշակված հատակագծի: Բնակավայրի այսօրվա դեմքը բնորոշում են երկհարկանի գեղեցիկ առանձնատները՝ ապակեպատ պատշգամբներով, հարմարավետ սենյակներով, ժամանակակից մարդու պահանջմունքները բավարարող կահկարասիով, կենցաղային անհրաժեշտ հարմարություննե-

բով: Գյուղը գազիֆիկացված է, ապահովված է խմելու ջրով, ունի 700 համարանոց հեռախոսային ցանց: Շատ բան է արված աշխատավորների հոգևոր պահանջմունքների բավարարման համար: Մշակույթի տունն՝ իր ինքնագործունեության խմբերով, խաղասենյակներով, ստացիոնար կինոկետը ի սպաս են դրված մարդկանց կուլտուրական սպասարկմանը: Գրադարանների գրքային ֆոնդն անցնում է 20 հազարից, որոնցից օգտվում են երկու հազար ընթերցողներ: Աշխատավորներն ստանում են 3705 օրինակ թերթ ու ամսագիր:

Շրջանի բազմամարդ գյուղերից է նաև Նորադուզը: Դարերի պատմություն ունի և մինչև հիմա էլ պահպանել է իր անունը: Երբ մտնում ես բնակավայր, առաջին հայացքից աչքի են զարնում սովխոզի բանվորների գեղեցիկ ու լուսավոր առանձնատները: Աշխատավորների կենցաղում մուտք է գործել բնական ու հեղուկ գազը: 210 աշխատավորներ ունեն անձնական օգտագործման մարդատար ավտոմեքենա: Լայն թափ է ստացել կապիտալ շինարարությունը: Վերջին տարիներին այստեղ կառուցվել են 964 տեղանոց միջնակարգ դպրոցի, հանրախանութի, կապի բաժանմունքի, մանկապարտեզի, հացի փռի, գյուղսովետի գործկոմի, գործարանային մասնաճյուղի և այլ շենքեր: Աշխատավորները կուլտուրական հանգիստն անցկացնում են մշակույթի տանը, որն ունի 600 տեղանոց դահլիճ և զանազան հարմարություններ: Գյուղում գործում են հանրակրթական միջնակարգ և ութնամյա, բաներիտ միջնակարգ դպրոցներ, ուր սովորում են 1186 աշակերտներ: Հարյուրից ավելի պատանիներ ու աղջիկներ կրթությունը շարունակում են հանրապետության բուհերում ու միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում: Գործող երկու մանկապարտեզում դաստիարակվում են 200 երեխաներ: Նորադուզն ունի իր մտավորականության բազմամարդ, 130 մարդուց բաղկացած ջոկատը. ուսուցիչներ, բժիշկներ, գյուղատնտեսներ, անասնաբույծներ, անասնաբույժներ և այլն:

Առանձնապես վերջին տարիներին մեծ վերելք է ապրել գյուղի պետական տնտեսությունը: Այժմ մեքենատրակտորային հավաքակայանում հաշվվում են 37 ավտոմեքենա, 33 տրակտոր, 6 հացահատիկային կոմբայն, մեծ քանակությամբ կուլտիվատորներ, շարքացաններ, կցասայլակներ, խոտհնձիչներ, մամլող-հակավորող մեքենաներ և այլն: Տնտեսությունը հայտնի է իր առաջավոր, անվանի մարդկանցով: Այն ղեկավարում է սոցիալիստական աշխատանքի հերոս Սաշիկ Կարապետյանը: Համընդհանուր հարգանքի են արժանացել Լենինի շքանշանակիր կթվորուհի Արաքսյա Սարգսյանը, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր մեխանիզատոր Խաչիկ Ստեփանյանը, ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավոր, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Սիրուն Գևորգյանը, սոցիալիստական աշխատանքի հերոս Պարգիկ Ասոյանը և ուրիշներ:

Սարուխանն ու Նորադուզը եզակի չեն: Նորոգ ու բարեկեցիկ կյանքով են ապրում նաև շրջանի Կարմիր, Բատիկյան, Լանջաղբյուր, Գեղարքունիկ գյուղերի բնակիչները: Մեր շրջանը վաղուց ի վեր անտառազուրկ է եղել, այժմ մեր անտառաբույծները տնօրինում են չորս հազար հեկտար կանաչ տարածություն, որտեղ կարելի է հանգստանալ և վայելել բնության անկրկնելի հմայքը: Եվ դրանից 1200 հեկտարը սոճու անտառ է:

Սովետական իշխանության տարիներին վերստեղծվեցին մեր հանրապետության գյուղատնտեսությունը, արդյունաբերությունը, հիմնովին փոխվեցին հայ գյուղի դեմքը, գյուղացու բարոյական-քաղաքական, կուլտուր-տեխնիկական կերպարը: Եվ այդ ամենից, ինչպես տեսանք, անմասն չի մնացել Կամոյի շրջանը: Անշուշտ, այս հաջողություններին շրջանը հասել է շրջանային կուսակցական կազմակերպության ամենօրյա անդուլ ջանքերի, հոգատար աշխատանքի, սկզբնական կուսկազմակերպությունների բարձր մարտունակության, կուսակցական ու պետական ամուր կարգապահության շնորհիվ:

Այժմ, երբ հանրագումարի ենք բերում վեց տասնամյակում ձեռք բերած նվաճումները, մեր դեմ բացվում է թվերի ու փաստերի մի խմառասպի համակարգ, որը վկայում է, թե պատմական կարճ ժամանակամիջոցում, ժողովուրդների եղբայրական ընտանիքում, կոմունիստների պանծալի կուսակցության ղեկավարությամբ, մեր ժողովուրդը վերելքի ինչպիսի բազմախորհուրդ ճանապարհ է անցել:

Իրոք, սովետական իշխանության տարիներին ձեռք բերած նվաճումներն ակնառու են: Սակայն սխալ կլինի կարծել, թե մեզ մոտ բոլոր խնդիրները լուծված են և այլևս անելիք չունենք: Կան և հոգսեր, և չլուծված խնդիրներ թե՛ արդյունաբերության, թե՛ գյուղատնտեսության մեջ: Առանձին տնտեսություններում ցածր են անասունների մթերատվությունն ու գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը: Քաղաքում և շրջանի առանձին գյուղերում կենցաղսպասարկումը դեռևս չի բավարարում բնակչության ներկայիս օրըստօրե աճող պահանջը: Որոշ գյուղերում այն սահմանափակվում է հիմնականում 1—2 ծառայությամբ: Ցածր է սպասարկման կուլտուրան: Դեռևս նկատվում են սոցիալիստական համակեցությանն անհարիր երևույթներ:

Շրջանի աշխատավորությունը հսկայական խանդավառությամբ ընդունեց ՍՄԿԿ XXVI համագումար հրավիրելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի և ի պատիվ կուսակցության XXVI համագումարի սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները: Ակտիվորեն մասնակցելով նախահամագումարյան համամիութենական սոցմրցությանը՝ արդյունաբերական ձեռնարկությունների և սովխոզների կոլեկտիվները պայքարում են տասներորդ հնգամյակի ծրագրերը ժամկետից շուտ կատարելու համար:

Նոր, տասնմեկերորդ հնգամյակը լայն հեռանկարներ կբացի մեր շրջանի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների զարգացման համար: Նախատեսվում է ապահովել մթերատվության և բերքատվության, աշխատանքի արտադրողականության զգալի աճ: Դա հնարավորություն կընձեռի արդյունաբերության և գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելացնել 15—20 տոկոսով: Շրջանի էկոնոմիկայի զարգացման համար վճռական նշանակություն կունենա Սևան—Կամո—Մարտունի—Վարդենիս երկաթուղու կառուցումը, որն այսօր հրամայական պահանջ է դարձել:

Զգալի վերափոխումներ կկատարվեն կրթամշակութային կյանքում: Կկառուցվեն պոլիտեխնիկական ինստիտուտի մասնաճյուղի, երաժշտական ուսումնարանի, դպրոցական, մշակույթի օջախների շենքեր, կենցաղսպասարկման տաղավարներ, առևտրի օբյեկտներ, կտեղծվի գրադարանների կենտրոնացված համակարգի համալիր: Ահա տասնմեկերորդ հնգամյակում մեր անելիքների ոչ լրիվ ցանկը:

Մեր մարդիկ լի են վճռականությամբ՝ անշեղ վերելք ապահովելու շրջանի տնտեսական, սոցիալ-կուլտուրական կյանքի բոլոր ասպարեզներում, հաջողությամբ եզրափակելու տասներորդ հնգամյակը:

---

Սովետական Հայաստանի

և ՀԿԿ կազմավորման

60-ամյակին ընդառաջ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՈՐԱԿԱԿԱՆ ՏԵՂԱՇԱՐԺԵՐԸ

**Ա. Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

*ՍՍՀՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ եղբայրական ընտանիքում հայ ժողովուրդը ո՛չ միայն ստեղծեց ու համակողմանիորեն զարգացրեց իր ազգային պետականությունը, այլև վիթխարի հաջողությունների հասավ արդյունաբերության զարգացման, ինդուստրիալ հզորության շեշտակի վերելքի ասպարեզում։*

*Սովետական Հայաստանը անցյալից ժառանգել էր հետամնաց և գրեթե լիովին քայքայված մի տնտեսություն։ 1920 թվականին Հայաստանի արդյունաբերությունը թողարկում էր 1913 թվականի արդյունաբերական արտադրանքի տասներորդ մասը միայն։ Ամբողջովին կազմալուծված էին գյուղատնտեսությունը, տրանսպորտը, կապը... Հայաստանը դարձել էր գաղթականների երկիր, ամենուրեք մոլեգնում էին սովն ու համաճարակը։*

*Այդ օրհասական պահին, երբ տիրապետող դասակարգերն ու նրանց քաղաքական կուսակցությունները երկիրը հասցրել էին ազգային աղետի եզրին, բոլշևիկների կուսակցությունն իր վրա վերցրեց պատասխանատվությունը հայ ժողովրդի բախտի համար։ Աշխատավորական մասսաներին պայքարի հանելով սովետների իշխանության, սոցիալիզմի համար, նա դրանով իսկ մեր ժողովրդին փրկեց անխուսափելի կործանումից։*

*Ժողովրդական տնտեսության վերականգնումն սկսվեց ծայրահեղ դժվարին պայմաններում։ Դղնձահանքերը հեղեղված էին, պայթեցվել և հրդեհվել էին արդյունաբերական ձեռնարկությունները։ Անհրաժեշտ էր վերստին կառուցել գործարանային շենքեր, դրանք հագեցնել նոր սարքավորումներով։ Չկար արտադրության այնպիսի մի ճյուղ (նույնիսկ այնպիսի ձեռնարկություն), որը հնարավոր լիներ նույնությամբ արագորեն գործի դնել և ստացած եկամուտը տրամադրել տնտեսության մյուս ճյուղերի վերականգնմանը։*

*Կուսակցության և ժողովրդի ջանքերով արդեն 1928 թ. արդյունաբերական ձեռնարկությունները հիմնականում վերականգնվեցին, և արտադրանքի թողարկումը հասավ 1913 թ. մակարդակին։ Դրա հետ մեկտեղ, հատկապես 1926—1928 թթ., աշխատանքներ էին տարվում նաև ժողովրդական տնտեսության վերակառուցման նպատակով։*

*Ժողովրդական տնտեսության վերականգնումը միայն առաջին քայլն էր սոցիալիստական շինարարության ճանապարհին։ Հաջորդ, ավելի բարդ խնդիրը երկրի սոցիալիստական ինդուստրացման իրականացումն էր, սոցիալիզմի նյութական բազայի ստեղծումը։ Հայաստանի ինդուստրացումը, իհարկե, մեկուսի մի պրոցես չէր. այն ողջ Սովետական Միության ինդուստրացման միասնական պրոցեսի բաղկացուցիչ մասն էր։*



*Երկրի բոլոր հանրապետությունների ուժերի ու ռեսուրսների միավորումը հնարավորություն ընձեռեց ամենակարճ ժամկետում հաղթահարելու անցյալից ժառանգած հետամնացությունը, իրականացնելու ինդուստրացումը, սոցիալիստական հիմունքներով վերափոխելու գյուղատնտեսությունը, կատարելու կուլտուրական հեղափոխություն, կառուցելու սոցիալիզմ։*

*ՍՍՀՄ կազմավորման շնորհիվ հանրապետություններն սկսեցին միասնական ժողովրդատնտեսական պլանով օգտագործել իրենց ռեսուրսները, տեղաբաշխել արտադրությունը և յուրացնել բնական հարստությունները, կատարելագործել աշխատանքի միջհանրապետական բաժանման ձևերը, զարգացնել տնտեսական կապերը, հաղթահարել տերիտորիալ անհամամասնությունները, վերացնել ժողովուրդների տնտեսական անհավասարությունը և ապահովել տնտեսապես հետամնաց հանրապետությունների էկոնոմիկայի զարգացման առաջանցիկ տեմպերը։*

*Բացառիկ մեծ էր ռուս ժողովրդի եղբայրական անշահախնդիր օգնությունը։ Այն կոնկրետ կերպով արտահայտվում էր նրանում, որ անհատույց տրամադրվում էին ֆինանսական և նյութական ռեսուրսներ, առաքվում էին սարքավորումներ, նախագծվում և կառուցվում էին առաջատար ձեռնարկություններ, իրականացվում էին երկրաբանական հետախուզություններ, պատրաստվում որակյալ կադրեր և այլն։*

*Ինդուստրացման տարիներին Հայաստանում վերակառուցվեցին և կառուցվեցին շատ ձեռնարկություններ— քիմիական կոմբինատը՝ Երևանում, պղնձարդյունաբերության ձեռնարկությունները՝ Ղափանում և Ալավերդում։ Ստեղծվեցին այնպիսի նոր ճյուղեր, ինչպիսիք են մեքենաշինությունը, քիմիական, տեքստիլ արդյունաբերությունը և այլն։ Այդ նույն տարիներին կառուցվեցին մի շարք էլեկտրակայաններ (Երևանի, Լենինականի, Ձորագէսի, Քանաքեռի և այլն)։ Երևանի հիդրոէլեկտրակայանը, որը գործարկվել է 1932 թվականին, առաջին ավտոմատ կայանն էր ո՛չ միայն Հայաստանում, այլև ՍՍՀՄ-ում։ Արդեն 1937 թվականին հանրապետությունում գործում էր 48 էլեկտրակայան, որոնք արտադրում էին 258,3 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա։*

*Սոցիալիստական ինդուստրացումն արմատապես փոխեց համամասնությունները ժողովրդական տնտեսության մեջ։ Եթե 1928 թվականին Հայաստանի արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը կազմել է արդյունաբերության և գյուղատնտեսության ամբողջ համախառն արտադրանքի 28,3 տոկոսը, ապա 1940 թվականին այն հասավ 80 տոկոսի։ Զգալի փոփոխություններ կատարվեցին նաև արդյունաբերության ճյուղային կառուցվածքում։ Ամբողջ արդյունաբերության արտադրանքը 1940 թվականին նախահեղափոխական մակարդակը գերազանցում էր գրեթե 8,7 անգամ, մինչդեռ ծանր արդյունաբերության արտադրանքը՝ 11,4, իսկ թեթև և սննդի արդյունաբերությունը՝ 6,9 անգամ։*

*Երկրի սոցիալիստական ինդուստրացման շնորհիվ Հայրենական մեծ պատերազմի նախօրյակին հանրապետությունն արդեն ուներ զարգացած, այդ ժամանակաշրջանի համար առաջավոր տեխնիկայով զինված արդյունաբերություն։*

*Պատերազմից հետո Հայաստանի ինդուստրիալ հզորությունը է՛լ ավելի մեծացավ։ 1913 թ. համեմատությամբ արդյունաբերական արտադրության ծավալը 1979 թ. մեծացել է 362 անգամ։ Այժմ մեկ տարում հանրապետության արտադրաուժերը այնպիսի զարգացում են ապրում, որի համար նախկինում կպահանջվեր մի քանի տասնամյակ։ Այսպես, ներկայումս մեկ տարում ավելի շատ կապիտալ ներդրումներ են կատարվում, քան սովետական իշխանության առաջին 35 տարիներին միասին վերցրած։ Կապիտալ ներդրումների առավել խոշոր մասշտաբներ ու առաջանցիկ տեմպեր ունեն հատկապես այն ճյուղերը, որոնց ստեղծումն ու արագ զարգացումը էապես նպաստում են արդի համաշխարհային տեխնիկայի զարգացման հետ համաքայլ ընթանալուն։*

*Ի հակադրություն կապիտալիզմի, սոցիալիզմը ժողովուրդների տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցումը համարում է իր կարևորագույն խնդիրներից մեկը։ Ընդ որում, հավասարեցման պրոցեսը կողմնորոշվում է դեպի բարձրագույն, այլ ոչ թե ցածր կամ միջին մակարդակը։ Այդ պրոցեսի*

առանձնահատկությունը նաև այն է, որ առավել զարգացած հանրապետությունների տնտեսական առաջընթացը չի կասեցվում սպասելու համար, որ մյուս ժողովուրդները կամ հանրապետությունները հասնեն դրանց մակարդակին:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ իրականացված սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումները՝ երկրի սոցիալիստական ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը և ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական վերակառուցումը հանգեցրին կենտրոնի և նախկինում հետամնաց ծայրամասերի միջև եղած տնտեսական հակադրության վերացմանը, սովետական բոլոր հանրապետությունների տնտեսական մակարդակների հավասարեցմանը: Ցարական Ռուսաստանի նախկին ծայրամասերում, այդ թվում և Հայաստանում, հիմնվեցին արդյունաբերական օջախներ, ավելի ինտենսիվորեն աճեցին արտադրաուժերը: Բոլոր ազգային հանրապետություններում ստեղծվել է բարձր զարգացած բազմաճյուղ արդյունաբերություն և մեքենայացված խոշոր գյուղատնտեսություն: Հենց այդ բազայի վրա էլ հիմնականում վերացվեց նախկին տնտեսական անհավասարությունն ազգերի միջև: Այսօր նրանց քաղաքական և իրավական հավասարությունն ամրապնդված է տնտեսական հավասարությամբ:

Հայկական ՍՍՀ-ն, ինչպես և յուրաքանչյուր միութենական հանրապետություն, ունի բազմակողմանի զարգացած էկոնոմիկա՝ էլեկտրաէներգետիկ հզոր բազա, առաջավոր մեքենաշինություն, քիմիական արդյունաբերություն, ժամանակակից տեխնիկայով հագեցված թեթև և սննդի արդյունաբերություն:

Տնտեսության կոմպլեքսային զարգացումը բնավ էլ չի ենթադրում արտադրության անխտիր բոլոր տեսակների զարգացումը յուրաքանչյուր հանրապետությունում: Տնտեսության կոմպլեքսայնությունը ներփակ տնտեսություն չէ և ոչ էլ հանրապետության ավտարկիա, այլ ենթադրում է հանրային աշխատանքի տերիտորիալ բաժանում, հանրապետությունների արտադրական մասնագիտացում, նրանց բարենպաստ բնական ու տնտեսական պայմանների օգտագործում՝ յուրաքանչյուրում հանրային աշխատանքի համակողմանի խնայողությունն ապահովող արտադրության որոշակի տեսակների առավելագույն զարգացման համար:

Հանրապետության կոմպլեքսային զարգացում ասելով մենք հասկանում ենք տնտեսության այնպիսի պլանաչափ զարգացում, որն ապահովում է արտադրության մասնագիտացված ճյուղերի ռացիոնալ զուգակցումը հարակից ճյուղերի ձեռնարկությունների հետ և բոլոր տեսակի ինֆրաստրուկտուրայի հետ՝ տեղական պայմաններին համապատասխան և աշխատանքային ու բնական ռեսուրսների հնարավորին չափ լրիվ օգտագործման նպատակով:

Ազգային հանրապետությունների ժողովրդական տնտեսության անշեղ աճը և արդյունավետության բարձրացումը չեն բացառում, այլ ենթադրում են աշխատանքի հասարակական բաժանման զարգացում: Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը մատնանշում էին, որ «ազգի արտադրողական ուժերի զարգացման մակարդակը ամենից ավելի ակնառու կերպով դրսևորվում է այն բանում, թե այդ ազգի մեջ ինչ աստիճանի է զարգացած աշխատանքի բաժանումը» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 3, стр. 20):

Այդ կապակցությամբ մեծ ուշադրության է արժանի Հայկական ՍՍՀ արտադրության գլխավոր ճյուղերի ձևավորման ու զարգացման բնութագիրը՝ նրա արտադրական մասնագիտացումը:

Արտադրության ժամանակակից կառուցվածքի ձևավորման ժամանակ մեր հանրապետությունը հաղթահարեց մեծ դժվարություններ, որոնք կապված էին էներգետիկայի զարգացման հետ: Հայաստանում վառելիքային ռեսուրսներ չկան: Էներգետիկ բազա ստեղծելու համար կարևոր միջոց էր ծովի մակերևույթից 2000 մետր բարձրության վրա գտնվող Սևանա լճի ջրի օգտագործումը:

Սևանի ջրի դարավոր պաշարների օգտագործման նպատակով ստեղծված Սևան—Հրազդանի ոռոգման-էներգետիկ հզոր կոմպլեքսը ռեալ հնարավորություն էր ընձեռում զարգացնելու հանրապետության էներգետիկ բազան, ստեղծելու արդյունաբերական մի շարք նոր ճյուղեր, Արարատյան հարթավայրի



ոռոգելի հողատարածության ընդարձակման հիման վրա զգալիորեն ավելացնելու այգեգործական ու բոստանային կուլտուրաների, ինչպես նաև բանջարեղենի արտադրությունը:

Սևանա լճի ինտենսիվ օգտագործումն սկսվել է 1937 թվականից, երբ շահագործման հանձնվեց Քանաքեռի հիդրոէլեկտրակայանը: Ամբողջ քառորդ դար (մինչև 1962 թ.) Սևանն ապահովում էր էներգիայի նկատմամբ հանրապետության պահանջը, ինչպես նաև ոռոգման ջրի հանդեպ Արարատյան դաշտի տնտեսությունների կարիքները: Սակայն 60-ական թվականների սկզբներից ակնհայտ դարձավ, որ նախատեսված ռեժիմով լճի ջրի հետագա օգտագործումը սպառնալիքի տակ էր դնում նրա բուն գոյությունը:

Վերջին քսան տարիների ընթացքում ՍՄԿԿ Կենտկոմն ու ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԿԿ Կենտկոմն ու Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը մի շարք որոշումներ ընդունեցին, որոնց իրագործումը նպաստելու է լճի ռեժիմի բարելավմանը, նրա ջրի պաշարների համալրմանը, բնական ռեսուրսների պահպանմանը և ռացիոնալ օգտագործմանը:

Այժմ Սևանի պրոբլեմը միանգամայն այլ նշանակություն է ձեռք բերել: Սևանը կատարել է իր դերը հանրապետության ժողովրդական տնտեսության շեշտակի վերելքի գործում, իսկ հիմա ծառացել է նրա մակարդակը պահպանելու և մասնակիորեն վերականգնելու հարցը:

Հայաստանում կառուցվել են ջրային ու ջերմային շատ էլեկտրակայաններ: 1976 թվականի վերջից գործում է նաև Հայաստանի ատոմային էլեկտրակայանը: 1979 թվականին էլեկտրաէներգիայի արտադրությունը հանրապետությունում կազմեց 12,1 մլրդ կվտ-ժամ: Սովետական Հայաստանն այսօր արտադրում է զգալիորեն ավելի շատ էլեկտրաէներգիա, քան նախատեսված էր ԳՈԷԼՌՈ-ի պլանով (8,8 մլրդ կվտ-ժամ)՝ ողջ երկրի համար: Հայկական ՍՍՀ-ն, որը մի ժամանակ էլեկտրաէներգիայի սուր կարիք ուներ, այսօր ոչ միայն լրիվին բավարարում է էլեկտրաէներգիայի իր խիստ աճած պահանջմունքները, այլև դրա մի մասը միասնական էներգասիստեմով տրամադրում է Անդրկովկասի եղբայրական հանրապետություններին: Սեփական էներգետիկ բազայի ստեղծումը հիմք ծառայեց արտադրության արագ զարգացման համար:

Հայաստանի արդյունաբերության առաջատար և առավել խոշոր ճյուղը մեքենաշինությունն է: Մեքենաշինության և մետաղամշակման տեսակարար կշիռը արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալում 1940 թվականին կազմել է 4 տոկոս, 1970-ին՝ 23, իսկ 1979 թվականին՝ 27 տոկոս:

Հայաստանի մեքենաշինության մասնագիտացման կարևորագույն ոլորտը էլեկտրական մեքենաների ու ապարատների արտադրությունն է, որը տալիս է մեքենաշինության ամբողջ արտադրանքի 60 տոկոսից ավելին: Դա պայմանավորված է հանրապետությունում որակյալ բանվորական ուժի առկայությամբ և գունավոր մետաղների արտադրությամբ: Էլեկտրատեխնիկական արտադրատեսակների արտադրությամբ Հայկական ՍՍՀ-ը Միությունում գրավում է երրորդ տեղը (ՌՍՖՍՀ-ից և Ուկրաինայից հետո): Հայաստանում մեծ զարգացում է ստացել հաստոցաշինությունը, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, կոմպրեսորների, էլեկտրասարքերի, տարբեր հզորության գեներատորների ու շարժական էլեկտրակայանների, ամենանուրբ չափիչ սարքերի, ապարատների և գիտատեխնիկական այլ սարքավորումների թողարկումը:

Առաջատար ճյուղ է նաև գունավոր մետալուրգիան, որը զարգանում է պղնձամոլիբդենային հանքավայրերի կոմպլեքսային օգտագործման բազայի վրա: Անմիջական կապ է ստեղծված գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների և հանրապետությունում արագ զարգացող էլեկտրատեխնիկական արդյունաբերության, սարքաշինության և մեքենաշինության մյուս ճյուղերի միջև:

Տեղական հումքային ռեսուրսների և գունավոր մետալուրգիայի թափոնների օգտագործման հիման վրա ստեղծվեց հանրապետության մեծ քիմիան: Այդ ճյուղում զգալի տեղ են գրավում սինթետիկ մանրաթելերի և կաուչուկի արտադրությունը: Միջոցներ են ձեռնարկվում կաուչուկի արտադրության տեխնոլոգիան արմատապես փոխելու համար: Հանրապետությունում սինթեզվում են

օրգանական քիմիայի բարդ նյութեր: Աղի հարուստ հանքավայրերի բազայի վրա կազմակերպվում է մի շարք արտադրատեսակների արտադրությունը: Լայնորեն զարգացել է շինարարական նյութերի արդյունաբերությունը:

Ստեղծվել են թեթև և սննդի արդյունաբերության բազմաթիվ ճյուղեր: Արտադրանքի ընդհանուր ծավալում թեթև արդյունաբերության բաժինը 1979 թվականին կազմեց 22,1 տոկոս, իսկ սննդինը՝ 22,2 տոկոս:

Արդյունաբերության զարգացման և նրա բազմաթիվ ճյուղերի ստեղծման հետ մեկտեղ բարելավվել է արտադրաուժերի տեղաբաշխումը: Դրա շնորհիվ հիմնվել են նոր քաղաքներ ու արդյունաբերական կենտրոններ: Նոր օբյեկտներ են կառուցվել ո՛չ միայն երիտասարդ քաղաքներում՝ Հրազդանում, Աբովյանում, Չարենցավանում, Սևանում, այլև ավանդական գյուղատնտեսական շրջաններում՝ Մարտունիում, Ապարանում, Թալինում, Աշտարակում և այլուր: Ուշադրության արժանի է վերջին տարիներին արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների մասնաճյուղերի կազմակերպումը փոքր քաղաքներում և գյուղերում: Արդեն ստեղծվել են տասնյակ մասնաճյուղեր, որոնք հնարավորություն ընձեռեցին համեմատաբար ոչ մեծ կապիտալ ներդրումներով ու կարճ ժամկետում կազմակերպելու արտադրություն՝ ներգրավելով տեղական աշխատանքային ռեսուրսները:

Հայաստանի էկոնոմիկայի զարգացմանը զուգընթաց ավելի ու ավելի բազմազան և կայուն են դարձել նրա տնտեսական կապերը երկրի մյուս հանրապետությունների հետ: Հաշվետու միջճյուղային հաշվեկշռի տվյալներով (որի համար սահմանված է արտադրության 114 տեսակների անվանացուցակ) Հայկական ՍՍՀ-ն ստանում է 100 արտադրատեսակ, իսկ միութենական մյուս հանրապետություններն է առաքում 67-ը:

Հայկական ՍՍՀ-ն զբաղեցնում է Սովետական Միության տարածքի 0,13 տոկոսը, իսկ բնակչությունը կազմում է 1,2 տոկոսը: Նրա տեսակարար կշիռը արդյունաբերական արտադրանքի 15 տեսակներով հասնում է ընդհանուր միութենական արտադրության 5-ից մինչև 35 տոկոսին: Հայաստանը գերճշգրիտ հաստոցների մի քանի տեսակների, տուֆաբլոկների, խորդենու, շվեյցարական պանրի արտադրությամբ Միությունում գրավում է առաջին տեղը: Նա երկրորդ տեղում է մոլիբդենի կոնցենտրատի, պղնձարջասպի, շարժական էլեկտրակայանների, հիդրոպոմպերի, ժամացույցների արտադրությամբ: Առաջնակարգ տեղ է գրավում նաև զտված պղնձի, քացախաթթվի, սինթետիկ կաուչուկի, ավտոդողերի, դարբնոցամամլիչային մեքենաների, փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչների արտադրության բնագավառում:

Հայկական ՍՍՀ արդյունաբերությունը զարգանում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ձևավորման խնդիրների լուծման նշանաբանով: Այժմ Հայաստանն ակտիվորեն մասնակցում է երկրի սոցիալ-տնտեսական առաջընթացի գիտատեխնիկական շատ պրոբլեմների լուծմանը:

Հանրապետության գիտությունների ակադեմիայի և գերատեսչությունների մի շարք ինստիտուտներ սերտորեն համագործակցում են այնպիսի ձեռնարկությունների հետ, որտեղ ներդրվում են գիտահետազոտական ավարտուն աշխատանքները: Այսպես, նատրիումի մետասիլիկատը, որը ընդհանուր և անօրգանական քիմիայի ինստիտուտը ստացել է նեֆելինյան սիենիտների կոմպլեքսային վերամշակման շնորհիվ, առաքվում է Միության 35 զանազան կազմակերպությունների ու ձեռնարկությունների, այդ թվում՝ Կազանի քիմիական կոմբինատին, Լենինգրադի և այլ քաղաքների գործարաններին: Ֆոսֆոգիպսի՝ ցեմենտի արտադրության համար անհրաժեշտ այդ արտադրանքի, չորացման ու հատիկավորման նոր տեխնոլոգիան, որ մշակել է Հայկական ՍՍՀ ԳԱ ընդհանուր և անօրգանական քիմիայի ինստիտուտը, ՍՍՀՄ քիմիական արդյունաբերության մինիստրության որոշմամբ արմատավորվում է Գոմելի քիմգործարանում: Այդ նպատակով գործարանում կառուցվում է և 1980 թվականին կգործարկվի ֆոսֆոգիպսի նյութերի չորացման ու հատիկավորման արտադրամաս՝ տարեկան 540 հազար տոննա կարողությամբ: Նրա արտադրանքի մի մասը (150 հազար տոննա) առաքվելու է Հայաստան՝ Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատին:



Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի մշակումների 85 տոկոսից ավելին իրացվում է հանրապետությունից դուրս: Ինստիտուտի մշակած ժամանակակից ԷՀՄ-երի սերիական արտադրությունը կազմակերպված է ՌՍՖՍՀ-ում, Ուկրաինայում, Բելոռուսիայում և այլ հանրապետություններում:

Կիրովականի «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտի մշակումներով Բալխաշի Լենինի շքանշանակիր լեռնամետալուրգիական կոմբինատում անալոգաթվային հաշվիչ սարքերի կիրառմամբ հաջողությամբ գործում է կոնվերտացման պրոցեսի կառավարման ավտոմատ համակարգը, Նորիլսկի լեռնամետալուրգիական կոմբինատում արմատավորվել է պղնձանիկելային հանքաքարերի և կոնցենտրատների էլեկտրաձուլման տեխնոլոգիական պրոցեսի օպտիմալ կառավարման ավտոմատացված համակարգը:

Լիթիումի յոդիտի մոնոկրիստալների ստացման տեխնոլոգիան, որ մշակել է Հայկական ՍՍՀ ԳԱ ֆիզիկական հետազոտությունների ինստիտուտը, արմատավորվել է Մոսկվայի պողպատի ու համաձուլվածքների և Վրացական ՍՍՀ ԳԱ կիբեռնետիկայի ինստիտուտներում:

Հայկական ՍՍՀ ԳԱ քիմիական ֆիզիկայի ինստիտուտի և ՍՍՀՄ ԳԱ քիմիական ֆիզիկայի ինստիտուտի բաժանմունքի գիտնականների համատեղ ջանքերով մշակվել է մոլիբդենի դիսիլիցիդից բարձր ջերմաստիճանային տաքացուցիչների պատրաստման նոր առաջավոր տեխնոլոգիան, որն արմատավորվել է Կիրովականի բարձր ջերմաստիճանային տաքացուցիչների գործարանում: Այդպիսի օրինակներ կարելի է շատ թվարկել:

ՍՍՀՄ ժողովուրդների, բոլոր հանրապետությունների գիտական ու տեխնիկական կադրերի համագործակցությունն ու փոխադարձ օգնությունը հսկայական նշանակություն ունեն ժողովրդատնտեսական խոշոր պրոբլեմների լուծման և առաջին հերթին՝ գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար: Այդ համագործակցության շնորհիվ արագ թափով զարգանում են գիտությունն ու տեխնիկան, դրանց նվաճումները հաջողությամբ ներդրվում են արտադրության մեջ:

Ի տարբերություն նախասովետական Հայաստանի, որտեղ խոսք անգամ չէր կարող լինել արդյունաբերության կոմպլեքսային զարգացման մասին (արդյունահանված պղինձը և գյուղատնտեսական հումքի շատ տեսակներ մշակելու համար ուղարկվում էին Ռուսաստանի կենտրոնական շրջանները, որտեղից այնուհետև ստացվում էին արդյունաբերական զանազան ապրանքներ), այժմ Հայկական ՍՍՀ-ն դարձել է համակողմանի զարգացած արդյունաբերության հանրապետություն:

Արդյունաբերության անշեղ ու արագ զարգացման շնորհիվ զգալիորեն աճել է արտադրանքի արտահանման ծավալը և արմատապես փոխվել դրա կառուցվածքը: Դրանում սկսել են գերակշռել մեքենաշինության և արդյունաբերության մյուս ճյուղերի արտադրանքի բազմաթիվ տեսակներ: Հայաստանը թողարկում է մոտ 180 անուն արտադրատեսակներ, որոնք Սովետական Միությունը արտահանում է 70 երկրներ: Այդ արտադրատեսակներից են էլեկտրաչափիչ սարքերը, տրանսֆորմատորները, մետաղահատ հաստոցները, քիմիական ռեակտիվները, ջերմային սարքերը, ժամացույցները, լյումինեսցենտային լամպերը, կաբելը, քիմիական նյութերը, պոմպերը, մամլակները, մետաղահատ հաստոցները, կոնյակը, գորգերը և այլն:

Սովետական իշխանության տարիներին Հայաստանը տնտեսական զարգացման մեջ հասել է այնպիսի բարձունքների, որ առաջ է անցել ո՛չ միայն իր արտասահմանյան հարևաններից, այլև Եվրոպայի կապիտալիստական շատ երկրներից: Անցյալում հետամնաց գաղութային ծայրամասը՝ Հայաստանը, ՍՍՀՄ ժողովուրդների ու առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ, իր հանրապետության աշխատավորական մասսաների ստեղծագործական ջանքերի շնորհիվ, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ դարձել է ծաղկող սոցիալիստական հանրապետություն՝ բարձր զարգացած արդյունաբերությամբ, մեքենայացված խոշոր գյուղատնտեսությամբ, առաջավոր գիտությամբ ու մշակույթով:

---

# ԿԱՊԻ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԴԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

Թ. Ս. ՄԻՆԱՍՅԱՆՑ
ՀՍՍՀ կապի մինիստր

Կ ԱՊԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ և հասարակական կյանքի բոլոր ոլորտների համագործակցության կարևորագույն գործոն է։

Սովետական Հայաստանի կապի տնտեսության զարգացման և ծառայությունների բարելավման գործում ձեռք բերված հաջողությունները նույնպես անխզելիորեն առնչվում են հանրապետության ժողովրդական տնտեսության հասումների հետ, որի առաջընթացը էապես պայմանավորված է հարաճուն ինֆորմացիայի ժամանակին և արագ մշակման ու ճշգրիտ հաղորդման ապահովմամբ։

Կապի ոլորտում հանրապետության ժողովրդական տնտեսության և ազգաբնակչության աճող պահանջմունքները բավարարելու նպատակով, տասներորդ հնգամյակում ակնառու գործ է կատարվել սեփական նյութատեխնիկական բազայի հարստացման, ծառայությունների կատարելագործման բնագավառում։

Մեծ ուշադրություն է նվիրվել հանրապետության էլեկտրակապի գծային և կայանային տնտեսությունների ընդլայնմանը։ Միջքաղաքային օդային և կաբելային նոր գծերի գործարկումն ու բազմականալ խտացնող սարքավորումների լայն կիրառումը, ինչպես և գործող գծերի հետագա ընդլայնումը, զգալիորեն ավելացրել են միջքաղաքային հեռախոսահեռագրային կապերի թիվն ու երկարությունը, ստեղծել միջքաղաքային հեռախոսահեռագրային կապերի նոր փնջեր հանրապետության բնակավայրերի միջև։

Այս տարվա սկզբին հանրապետության միջքաղաքային հեռախոսային կապերի ընդհանուր երկարությունը 109,3 հազար կիլոմետր է, որից՝ 46.506 կանալակիլոմետրը՝ կաբելային գծերով։ Հանրապետության հարավային շրջանների միջքաղաքային հեռախոսային գծերը լրիվ կաբելավորված են։ Ստորգետնյա կաբելային գծերով ստեղծվող նման կապը, ապահովվելով մթնոլորտային տեղումներից և օդային գծերին հատուկ վնասվածքներից, երաշխավորում է մշտական, հուսալի և բարձրորակ սպասարկում։

Միջքաղաքային հեռախոսակցությունների փոխանակման համար նախատեսված կանալների 60,3 տոկոսը գործում է կիսաավտոմատ և ավտոմատ միացմամբ։ Միայն անցյալ տարի գործարկվել է Հոկտեմբերյան—Թալին կաբելային տեղամասեր, Մեղրիում տեղադրվել է նոր տիպի սարքավորում, ստեղծվել են միջքաղաքային նոր կապեր Քաջարանի հետ։ Միացման կիսաավտոմատ և ավտոմատ եղանակին անցնելու համար Երևանի միջքաղաքային հեռախոսակայանում, Արագածում, Աշտարակում, Վարդենիսում, Նաիրիում, Սիսիանում և էջմիածնում տեղադրվել են մեծ հզորության միջքաղաքային հեռախոսային նոր կայաններ։

Երևանն այսօր ավտոմատ հեռախոսային կապ ունի հանրապետության 17 քաղաքների և շրջանային կենտրոնների, ինչպես նաև Մոսկվա, Բաքու, Թբիլիսի, Դոնի-Ռոստով քաղաքների հետ։ Վերջինիս հետ ունեցած ավտոմատ տարանցիկ գիծը միաժամանակ հնարավորություն է ընձեռում Դոնի-Ռոստովի միջքաղաքային հեռախոսակայանի միջոցով կապ ստեղծելու Կիևի, Օդեսայի և



մի շարք այլ քաղաքների ու բնակավայրերի հետ։ Ավտոմատ միջքաղաքային հեռախոսակապը, բազմաթիվ այլ առավելությունների հետ մեկտեղ, առաջին հերթին ապահովում է մեծ արագություն և տնտեսում բաժանորդի ժամանակը, մի բան, որին հետամուտ ենք կապի բոլոր ծառայությունների կատարելագործման ընթացքում։

Երկրում կապի միասնական սիստեմի ստեղծմանն է ծառայում ներհանրապետական միջքաղաքային ավտոմատ հեռախոսակապը։ Այսօր Լենինականի, Կիրովականի, Դիլիջանի, Սևանի, Հրազդանի, Ղափանի, Ստեփանավանի, Մարտունու, Գորիսի, Վարդենիսի, Նաիրիի, Աշտարակի և էջմիածնի բնակիչները հնարավորություն ունեն, առանց նախնական պատվերի, հեռախոսահամարի անմիջական հավաքումով, խոսել Երևանի հետ։ Այդ շրջաններից շատերը միմյանց հետ նույնպես ունեն միջքաղաքային ավտոմատ հեռախոսակապ։

Ներկայումս հանրապետության 38 քաղաքներում և շրջանային կենտրոններում տեղադրված են միջքաղաքային հեռախոսային խոսակցությունների 172 ավտոմատ խցիկներ։ Միայն մեկ տարում՝ 1979 թ. հանրապետությունում կայացել է մոտ 15 մլն միջքաղաքային հեռախոսային խոսակցություն։ Մեկ օրվա ելից այդպիսի խոսակցությունների թիվը կազմում է 32,5 հազար, որից մոտ 20 հազարը՝ Երևանի միջքաղաքային հեռախոսակայանի միջոցով։ Այստեղ հեռախոսակցությունների 38 տոկոսը իրականացվել է ավտոմատ միացման եղանակով։

Տարեցտարի հանրապետության տնտեսական քարտեզի վրա ավելացող գյուղատնտեսական մասնագիտացված խոշոր համալիրներն ու արդյունաբերական օբյեկտները, հանրապետության ամենահեռավոր վայրերի տնտեսությունների ինտենսիվացումն անհրաժեշտ են դարձնում գերատեսչությունների և դրանց արտադրական օբյեկտների միջև օպերատիվ կապի անընդհատությունը։ Ներկայումս բազմաթիվ գերատեսչություններ իրենց արտադրաօբյեկտների հետ օպերատիվ կապ հաստատելու համար, վարձավճարային կարգով, օգտվում են միջքաղաքային հեռախոսահեռագրային կապի միջոցներից։

Ընդլայնվել են գյուղական և քաղաքային հեռախոսային ցանցերի տնտեսությունները։ Տարեսկզբի տվյալներով, հանրապետությունում գործում են 67 քաղաքային հեռախոսային կայաններ։ Նշված կայաններից 13-ը կոորդինատային սիստեմի են, որոնք նախկինում տեղադրված քայլային սիստեմի կայանների համեմատությամբ, լուրջ առաջընթաց են և ապահովում են հուսալի, բարձրորակ սպասարկում։ Երևանում գործում են 19 հեռախոսային ավտոմատ կայաններ, որոնցից 2-ը (15-րդ թաղամասում գործող ԱՀԿ—34-ը և վերջերս հանրապետական մարզադաշտի մոտ շահագործման հանձնված ԱՀԿ—55-ը) կոորդինատային սիստեմի են։ Հանրապետության քաղաքային հեռախոսային ցանցի հզորությունն անցնում է 300 հազար հեռախոսահամարից, որից կեսը՝ մայրաքաղաքում։ Միայն ընթացիկ հնգամյակի անցած չորս տարիներին քաղաքային հեռախոսային ցանցն ավելացել է 67.000 համարով։ Գործարկվել են ԱՀԿ—34, ԱՀԿ—39, ԱՀԿ—55 Երևանում, Լենինականի 9000 համարանոց, Իջևանի և Չարենցավանի 4000, Ջերմուկի 2000 համարանոց նոր ավտոմատ հեռախոսային կայանները։ Հարյուր շնչին ընկնող քաղաքային հեռախոսների քանակով ներկայումս մեր հանրապետությունը երկրում երրորդն է (100 շնչին՝ 13,9 հեռախոս, միութենական 8,38-ի փոխարեն)։

Հանրապետության գյուղական հեռախոսային ցանցում առկա են լուրջ հասումներ՝ «Գյուղական վայրերում հեռախոսային ցանցի զարգացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման պահանջների բավարարման բնագավառում։ Ներդրվել են գյուղական հեռախոսային ցանցի գծային և կայանային նոր սարքավորումներ, ընդլայնվել և վերակառուցվել են գործողները։ Գյուղական հեռախոսային ցանցում այժմ գործում են 342 կայաններ, որոնց ընդհանուր հզորությունն անցնում է 75.000 համարից։ Նշված կայանների 86,5 տոկոսը՝ 65 հազար ընդհանուր հեռախոսահամարներով, ավտոմատ կայաններ են։

Վերջին տարիներին ձեռքի սպասարկման հին շատ կայաններ փոխարին-

*վել են նոր ավտոմատ կայաններով։ Այժմ Արտաշատի, Աշտարակի, Ղափանի, Կամոյի անվան, Ստեփանավանի, Ախուրյանի, Արթիկի, Գուգարքի և մի շարք այլ շրջանների, Դիլիջանի գյուղական հեռախոսային ցանցն ամբողջովին ավտոմատացված է։ Միայն անցյալ տարի, նոր կարողությունների գործարկմանը զուգահեռ, սպասարկող անձնակազմի ուժերով, հանրապետության գյուղական վայրերում 560 ընդհանուր հեռախոսահամարով ձեռքի սպասարկման հեռախոսային կայաններ փոխարինվել են ավտոմատ կայաններով, կառուցվել, ընդլայնվել և վերափոխվել են հանրապետության 22 պետական և 8 կոլեկտիվ տնտեսությունների ներքին հեռախոսային կայանները։ Գյուղական հեռախոսային ցանցն ավելացել է 6500 համարով, բազմաթիվ գյուղերում տեղադրվել են կոորդինատային սիստեմի ավտոմատ հեռախոսային կայաններ։ Ներշրջանային և միջշրջանային հեռախոսակապի բարելավման նպատակով զգալիորեն ավելացվել է միջկայանային միացնող գծերի թիվը։ Միայն 1979 թ. դրանց թիվն ավելացել է 118 կանալով։ Սամաղար—Էջմիածին, Վեդի—Արարատ, Շիրազլու—Վեդի ուղղություններում ներդրվել են 34 կանալի հնարավորության «Զոնա» տիպի խտացման սարքավորումներ։*

*Այժմ հանրապետության գյուղական վայրերի 100 բնակչին ընկնում է 7 հեռախոս, որը զգալիորեն բարձր է միութենական ցուցանիշից՝ 100 բնակչին՝ 3,2։*

*Ժողովրդական տնտեսության բուռն զարգացումը, հաշվիչ մեքենաների վրա խարսխվող կառավարման համակարգերի օգտագործումը մեծացնում են ինֆորմացիայի ծավալը, որի ժամանակին մշակման ու հաղորդման համար կապի երեկվա միջոցներն ու հնարավորություններն արդեն չեն բավարարում։*

*Տարեսկզբի տվյալներով, միայն անցյալ տարի հանրապետության հեռագրային կապի աշխատողները մշակել և առաքել են շուրջ երկու տասնյակ միլիոն հեռագիր։ Մեկ օրվա հեռագրափոխանակման միջինը կազմել է ավելի քան 50 հազար հեռագիր։*

*Ինֆորմացիայի հաղորդման ժամանակ կապի գծերի գերծանրաբեռնվածությունն ու վերջինիս հետ կապված մյուս օբյեկտիվ դժվարությունները առաջադրում են կապի միջոցների և ծառայությունների կատարելագործման նոր մեթոդներ, որոնք ավելի ճկուն, ընդլայնված համակարգեր ապահովելուց բացի, հնարավորություն կընձեռեն հաղորդումը կատարել ավելի արագ և ճշգրիտ։*

*Արդեն 10 տարի է, ինչ գործում է կապի կենտրոնական գիտահետազոտական ինստիտուտի Երևանի մասնաճյուղը, որի կոլեկտիվին էլ հանձնարարվեց նոր տիպի կոմուտացիոն հեռագրակենտրոնի նախագծման և ներդրման աշխատանքները։ Նոր տիպի կոմուտացիոն հեռագրակենտրոնը մշակվել է հայրենական արդյունաբերության թողարկած սերիական և միասնական սիստեմի էլեկտրոնային հաշվիչ մեքենաների երրորդ սերնդի հիմքի վրա։ Հեռագրակենտրոնի փորձնական մշակումը 1977 թ. ընդունեց պետական հանձնաժողովը, և մասնաճյուղի կոլեկտիվը ձեռնամուխ եղավ դրա տեղակայման տարբերակի ստեղծմանը։ Հեռագրային կոմուտացիոն կենտրոնի թողունակությունը վայրկյանում 3 հեռագիր է։ Արտադրապրոցեսի հուսալիությունն ապահովելու համար այստեղ հաշվիչ համակարգը հիմնվում է զուգահեռաբար աշխատող երկու էլեկտրոնային հաշվիչ մեքենաների վրա։*

*Նոր տիպի կոմուտացիոն հայրենական առաջին հեռագրակենտրոնը 1979 թվականի վերջին պետական հանձնաժողովի կողմից ընդունվեց շահագործման։ Պետք է նշել, որ կապի կենտրոնական գիտահետազոտական ինստիտուտի Երևանի մասնաճյուղի նախագծած և Երևանում կառուցած հեռագրակենտրոնը միակը չէ։ Նախատեսված է և շուտով կկառուցվեն նման մի շարք այլ հեռագրակենտրոններ՝ Միության տարբեր քաղաքներում, որոնց նախագծմանն ու մշակմանը մասնակցել են նաև Երևանի մասնագետները։*

*Երկրորդ խոշոր նորույթը հանրապետության հեռագրային կապում վերջերս գործարկված 1800 հեռագրակապի հզորության նոր կոմուտացիոն հեռագրակայանն է, որը լրիվ անունով կոչվում է տվյալների հաղորդման ուղիղ միացման բաժանորդային հեռագրակայան։ Կոմուտացիոն հեռագրակենտրոնի և նոր հեռագրային կայանի գործարկումը հնարավորություն ընձե-*



*ռեցին ամբողջությամբ ավտոմատացնելու հանրապետության հեռագրային ցանցը, լրիվ բավարարելու ժողովրդական տնտեսության պահանջմունքները բաժանորդային հեռագրային կապի բնագավառում և, քառակի անգամ մեծացնելով ինֆորմացիոն մեկ հաղորդման փոխանակման արագությունը, հիմնովին բարելավելու հեռագրաինֆորմացիոն տվյալների հաղորդման մակարդակը։*

*Արդեն ավարտված են «Գազետա—2»-ի սարքավորումների, ինչպես նաև էջաշարվածքների ընդունման կետի գծային մասի մոնտաժման և կարգավորման աշխատանքները։ Վերջինիս գործարկումից հետո, Մոսկվայից կենտրոնական լրագրերի էջաշարվածքները, կապի գծերով էլեկտրաֆոտոհեռագրի սկզբունքով, անմիջականորեն կհաղորդվեն Երևան, բարելավելով կենտրոնական լրագրերի ժամանակին լույս ընծայումը։*

*Հաջողությամբ են իրագործվում ՀԿԿ Կենտկոմի ցուցումները՝ հանրապետության ազգաբնակչությանը լարային ռադիոկապով առավելագույն ընդգրկման մասին։ Հանրապետությունում գործում է 58 ռադիոհանգույց, որի մեծ մասը (49 ռադիոհանգույց) լարային կապի կանալներով ընդունում է ինչպես հանրապետական, այնպես էլ կենտրոնական ռադիոծրագրեր։ Նշված ռադիոծրագրերից բացի 47 ռադիոհանգույց իրագործում է տեղական նշանակության շրջանային ռադիոծրագրերի հաղորդումներ։*

*Լարային ռադիոկապի տեխնիկական բազայի զարգացման ու կատարելագործման շնորհիվ հանրապետության 15 քաղաքներում և շրջանային կենտրոններում տեղադրվել են եռածրագիր ռադիոհաղորդումների սարքավորումներ։ Հանրապետությունում այժմ գործում է ավելի քան կես միլիոն ռադիոկետ, որից 100 հազարը՝ գյուղական վայրերում։ Նշված ռադիոկետերի զգալի մասը նախատեսված են եռածրագիր ռադիոհաղորդումների համար։*

*Զգալի աշխատանքներ են կատարվել ռադիո և հեռուստատեսային կապերի տեխնիկական բազայի հետագա հարստացման և կատարելագործման նպատակով։ Գործարկվել են նոր հզոր ռադիո ու հեռուստատեսային կայաններ և ռադիոռելեային գծեր։*

*Հանրապետության ռադիոհաղորդիչները գործում են հաղորդումների բոլոր ալիքներով։ Ռադիոհաղորդման ցանցի տարբեր դիապազոնների մի ամբողջ շարք հաղորդիչների կառուցման և գործարկման շնորհիվ հանրապետության ամբողջ տարածքում կարող են ընդունվել տեղական և միութենական բոլոր ռադիոծրագրերը։ Ռադիոծրագրերի և ռադիոկապի կայուն ընդունումն ապահովելու համար գործում են ժամանակակից սարքավորումներ և բարձրարդյունավետության հզոր ռադիոընդունիչ կայան։*

*Հնգամյակի խոշոր կառույցներից էին «Օրբիտա—2» տիեզերական կապի ընդունող-հաղորդող կայանն ու Երևանի նոր՝ 308,5 մետր բարձրության հեռուստատեսային աշտարակը, որոնք մայրաքաղաքի և մերձակա շրջանների բնակիչների համար կենտրոնական հեռուստատեսության գունավոր պատկերմամբ լրացուցիչ նոր ծրագիր ապահովելուց բացի, հնարավորություն ընձեռեցին ստանալու տասնյակ միջքաղաքային հեռախոսային կանալներ Մոսկվայի հետ և Մոսկվայից հաղորդվող ռադիոծրագրերի պահեստային տրակտ։*

*Երևան—Լենինական ռադիոռելեային գծի վերակառուցումից հետո Լենինականի, Արթիկի, Ախուրյանի բնակիչները կարող են դիտել քառածրագիր հեռուստատեսային հաղորդումներ, որոնցից 2-ը՝ գունավոր պատկերմամբ։ Թբիլիսի—Երևան տեղամասում կատարված ռադիոռելեային գծերի սարքավորումների վերակառուցման ու փոփոխությունների շնորհիվ Երևանի, Արարատյան դաշտավայրի, Լենինականի և Շիրակի հարթավայրի բնակիչները ստացան ևս մի նոր ծրագիր՝ կենտրոնական հեռուստատեսության երրորդ ծրագիրը։ Սևանի լեռնանցք—Դիլիջան ռադիոռելեային գծի վերակառուցման շնորհիվ, դիլիջանցիները ապահովվեցին եռածրագիր հեռուստատեսային հաղորդումներով։ Գորիսի շրջանում և Ղափանի շրջանի որոշ բնակավայրերում կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագրով տրվող հաղորդումների գոտին ընդլայնելու նպատակով Գորիսում շահագործվեց ռադիոհեռուստատեսային նոր կայան։*

Կալինինոյի և Ստեփանավանի շրջաններում կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագրով տրվող հաղորդումների ընդունման համար գործարկվեց Պուշկինի լեռնանցք—Ստեփանավան ռադիոռելեային գիծը և Ստեփանավանում տեղադրվեց կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագրի հաղորդիչ: Քաջարան—Վարդանիձոր ռադիոռելեային գծի գործարկումով Մեղրու և Ղափանի շրջանների մի շարք գյուղեր ապահովվեցին երկծրագիր հեռուստատեսային հաղորդումներով: Վեդիում հայկական և կենտրոնական հեռուստատեսությունների առաջին ծրագրերով տրվող հաղորդումների կայուն ընդունման համար կառուցվեց Արտաշատ—Վեդի ռադիոռելեային գիծը:

Ներկայումս հանրապետության բոլոր քաղաքներն ու շրջանային կենտրոնները դիտում են ինչպես հայկական, այնպես էլ կենտրոնական հեռուստատեսությունների առաջին ծրագրով տրվող հաղորդումները, 13 շրջաններ ունեն եռածրագիր հաղորդումներ դիտելու հնարավորություն: Դրանցից բացի հանրապետության 27 քաղաքներ ու շրջաններ կարող են դիտել գունավոր հեռուստատեսային հաղորդումներ:

Հանրապետության փոստային կապի աշխատողները զգալի գործ են կատարել կապի արտադրաբազայի հետագա զարգացման, փոստային առաքումների և պարբերական մամուլի ժամանակին մշակման ու առաքման գործի բարելավման բնագավառում:

Ամեն օր օդային տրանսպորտի միջոցով Երևանի ավիափոստի փոխանակման բաժանմունքը առաքում է տասնյակ տոննա փոստային բեռ:

Միջին հաշվով մեկ օրում հանրապետության փոստային կապի աշխատողները մշակում, առաքում և հասցեատերերին են հանձնում 10 հազար ծանրոց, 500 հազար նամակ, 2,5—3 մլն օրինակ լրագիր ու ամսագիր:

Զգալի բարեփոխություններ են կատարվել կապի ձեռնարկություններում աշխատանքային կատարյալ պայմաններ ստեղծելու համար: Հատուկ ուշադրություն է հատկացվում կապի նոր շենքերի կառուցմանն ու հների վերակառուցմանը: Միայն ընթացիկ հնգամյակում Լենինականում, Աբովյանում, Ղուկասյանում, Կամոյում, Իջևանում կառուցվել են ժամանակակից պահանջները բավարարող կապի հանգույցների նոր շենքեր: Նոր հարմարավետ փոստային բաժանմունքների շենքեր են կառուցվել Անիում, Ապարանում, Ստեփանավանում, Ղափանում, Շամշադինում, Մարտունիում, Մասիսում և այլ շրջաններում:

Աշխատանքի հիանալի պայմաններ ստեղծվեցին հնգամյակի կարևոր կառույցներից մեկում՝ Երևանի փոստատան 17-հարկանի շենքում, ուր տեղավորվեցին փոստատունը, կենտրոնական հեռագրատունը, կապի մինիստրության ապարատը, կապի կառույցների շինարարության դիրեկցիան, էլեկտրակապի ու ռադիոֆիկացիայի հանրապետական հանգույցը և նախկինում Երևանի տարբեր մասերում գտնվող կապի մի շարք այլ հիմնարկ-ձեռնարկություններ:

ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների կենսագործման բնագավառում կապի ծառայություններն ակնբախ հաջողություններ ունեն: Սակայն հանրապետության կապի մարմինները դեռևս ամբողջությամբ չեն օգտագործել այն հնարավորություններն ու միջոցները, որոնք կոչված են արմատապես բարելավելու կապի ծառայությունների որակն ու բարձրացնելու բնակչության ու ժողովրդական տնտեսությանը սպասարկելու կուլտուրան: Մեր աշխատանքում դեռևս նկատվող միջքաղաքային խոսակցությունների պատվերների ուշացման, հեռախոսավարուհիների կոպիտ վերաբերմունքի, հեռախոսային ցանցերում վնասվածքների վերացման ժամկետների խախտման, փոստային և հեռագրային առաքումների, պարբերական մամուլի հասցեատերերին հանձնումը ուշացնելու, ռադիո և հեռուստատեսային ցածրորակ հաղորդումների դեպքերը հրամայաբար առաջադրում են սպասարկման բարձր որակ և կուլտուրա ապահովելու անհրաժեշտությունը:

Հնգամյակի ավարտական տարում գործարկվելու են նոր կառույցներ, որոնք կհարստացնեն կապի տեխնիկական բազան, կընդլայնեն ծառայությունների հնարավորությունները:

Հանրապետության միջքաղաքային հեռախոսային կապը էապես կբարե-



լավվի Երևանում կառուցվող ավտոմատ միջքաղաքային հեռախոսային նոր կայանի շահագործումով: Այստեղ առաջին անգամ կօգտագործվեն քվազիէլեկտրոնային սիստեմի միջքաղաքային հեռախոսակայանի սարքավորումներ: 1500 միջքաղաքային կանալի հզորությամբ այս նոր կայանը ամբողջությամբ կապահովի հանրապետության միջքաղաքային հեռախոսային ցանցի ավտոմատացումը: Կայանի գործարկումից և քաղաքային հեռախոսային ցանցի գծերի «Դատա» սարքավորումներով խտացումից հետո, հանրապետության բոլոր քաղաքներն ու շրջանային կենտրոնները կունենան ավտոմատ միջքաղաքային հեռախոսային կապ ո՛չ միայն մայրաքաղաքի, այլև միմյանց հետ: Երևանն ավտոմատ միջքաղաքային հեռախոսային կապով կկապվի միութենական բոլոր հանրապետությունների մայրաքաղաքների և երկրի խոշոր արդյունաբերական կենտրոնների հետ:

Բացի այդ, նոր մայրուղիների կառուցման ու գործարկման միջոցով կկաբելավորվեն հանրապետության միջքաղաքային և հեռախոսահեռագրային կապերը: Կգործարկվեն Իջևան—Բերդ, Կիրովական—Դիլիջան, Կիրովական—Ստեփանավան—Ալավերդի, Թալին—Լենինական, Մարտունի—Եղեգնաձոր ուղղություններով և մի շարք այլ կաբելային գծեր: Երևան—Լենինական, Երևան—Մարալիկ, Երևան—Արթիկ ուղղություններում կտեղադրվեն խտացման սիստեմի սարքավորումներ, որոնք, մայրաքաղաքի և նշված բնակավայրերի միջև միջքաղաքային հեռախոսահեռագրային կապերի լրացուցիչ նոր փնջեր ստեղծելով, հնարավորություն կընձեռեն ավտոմատացնելու այդ ուղղությունների գծերն ու մեծ հուսալիություն և կայունություն տալու գործող գծերին: Երևանի միջքաղաքային հեռախոսակայանում կտեղադրվեն նոր սիստեմի սարքավորումներ, որոնց օգնությամբ կստանանք 36 միջքաղաքային հեռախոսային կապ Ստեփանակերտի և 24-ը՝ Ղափանի հետ:

Միջքաղաքային հեռախոսային կապի ավտոմատացման նպատակով Իջևանում, Թալինում, Սիսիանում, Եղեգնաձորում կտեղադրվեն 50 ելից և 50 մտից միջքաղաքային հեռախոսակապերի կարողության կիսաավտոմատ սարքավորումներ և ավտոմատ միջքաղաքային հեռախոսային կայաններ:

Մեծ են քաղաքային հեռախոսային ցանցի զարգացման հեռանկարները: Հաջողությամբ են իրագործվել Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակի առթիվ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները՝ Կիրովականի 9000, Կամոյի 4000 և Ղափանի 2000 համարանոց հեռախոսակայանների շահագործումն ապահովելու վերաբերյալ:

Ընթացիկ տարում կգործարկվի նաև 9000 համարանոց կոորդինատային ԱՀԿ—35-ը (15 թաղամաս) Երևանում: 1000 համարանոց հեռախոսակայան կստանան ղուկասյանցիները: 4000 համարանոց նոր հեռախոսակայաններ են նախատեսվում Հրազդանի միկրոշրջանում և Մեծամոր ավանում: Առաջիկա տարիներին Երևանում կկառուցվեն նոր կոորդինատային հեռախոսակայաններ՝ 26 կոմիսարների շրջանում (ԱՀԿ—25), Արարատյան զանգվածում (ԱՀԿ—77), Ավանում (ԱՀԿ—65), ինչպես նաև Հարավ-արևմտյան թաղամասում և Էրեբունի զանգվածում:

Զգալիորեն կավելանան և գյուղական հեռախոսային ցանցի կայանների թիվն ու հզորությունը: Հատուկ ուշադրություն կհատկացվի գյուղական հեռախոսային ցանցի նորացմանը: Մոտիկ ժամանակներում լիովին կավտոմատացվի գյուղական հեռախոսային կապը՝ Էջմիածնի, Աբովյանի, Սևանի, Նոյեմբերյանի և Հոկտեմբերյանի շրջաններում:

Հանրապետության բոլոր քաղաքներն ու շրջանային կենտրոններն ուղիղ միացման ցանցի մեջ ընդգրկելու միջոցով լիովին կօգտագործվի կոմուտացիոն կենտրոնի և նոր հեռագրային կայանի թողունակությունը: Դրա համար հանրապետության մայրաքաղաքի և շրջանային կենտրոնների միջև կստեղծվեն միջքաղաքային հեռախոսահեռագրային կապերի նոր լրացուցիչ փնջեր, շրջանների հեռագրային տնտեսությունները կհարստանան նոր, ժամանակակից սարքավորումներով:

Լարային ռադիոկապի տեխնիկական բազայի հետագա զարգացումը հնարավորություն կընձեռի զգալիորեն ավելացնելու եռածրագիր լարային ռադիո-

հաղորդումներ ընդունող բնակավայրերի թիվը: Նոր տեղադրվող ռադիոկետերը հիմնականում նախատեսվում են եռածրագիր հաղորդումների համար: Լարային ռադիոկապի բնագավառում ձեռք բերված լուրջ հաջողություններով հանդերձ, 100 շնչին ընկնող ռադիոկետերի թվով հանրապետությունը ետ է մնում միութենական ցուցանիշից: Այդ ցուցանիշը ապահովելու նպատակով, Երևանի լարային ռադիոկապի զարգացման գլխավոր սխեմայի համաձայն, կկառուցվեն հենակետային ուժեղացուցիչ նոր կայաններ:

Հեռուստատեսային հզոր հաղորդիչներ կտեղադրվեն Լենինականում և Ամասիայում, որոնք զգալիորեն կբարելավեն այդ շրջաններում հեռուստատեսային հաղորդումների ընդունման որակը: Հանրապետությունում ռադիոռելեային գծերի շառավղային-օղակաձև ցանց ստեղծելու նպատակով կկառուցվի Կիրովական—Լենինական ռադիոռելեային գիծը, որը կապահովի հեռուստատեսային ծրագրերի հաղորդումների հուսալիությունը:

Հեռուստատեսային նոր հզոր կայաններ են նախատեսվում կառուցել Եղեգնաձորում, Կամոյում: Վարդանիձոր—Գեղի ռադիոռելեային գիծը հնարավորություն կընձեռի Ղափանի շրջանի մի շարք բնակավայրերի բնակիչներին առաջին անգամ դիտելու հեռուստատեսային երկու ծրագիր, իսկ Կրասնոսելսկ—Փոլադ ռադիոռելեային գծի գործարկումից հետո նույնպիսի հնարավորություն կստանան Իջևանի շրջանի Փոլադ, Աչաջուր, Լալի գյուղերի ու այլ բնակավայրերի և Կրասնոսելսկի շրջանի մի շարք գյուղերի բնակիչներ: Լենինականում կտեղադրվի 108 մ բարձրության հեռուստատեսային աշտարակ: Այդ ծրագրերի իրագործումից հետո, առաջիկա հինգ տարիների ընթացքում, հանրապետության քաղաքների և շրջանային կենտրոնների մեծ մասը կունենա եռածրագիր հեռուստատեսային հաղորդումների ընդունման հնարավորություն:

Զարգացման լայն հեռանկարներ են նախատեսվում փոստային կապի համար: Այստեղ մեծ ուշադրություն կհատկացվի փոստային գործառնությունների համար նախատեսված մեխանիզմների և սարքավորումների ներդրմանը, որոնք, փոխարինելով ձեռքի աշխատանքին, կապահովեն զգալի որակ և արագություն փոստային առաքումների մշակման և տեղհասցման գործում:

Առաջիկա տարիներին կոմպլեքսային մեքենայացման կենթարկվեն Կալինինոյի, Հրազդանի, Նոյեմբերյանի, Ազիզբեկովի, Սպիտակի, Ղուկասյանի և մի շարք այլ շրջանների փոստային տնտեսությունները:

Երևանի երկաթուղամերձ փոստատանը կներդրվի նամակների խմբավորման, դասավորման և դրոշմանիշման համար նախատեսվող փոստային ավտոմատ համալիր, որի արդյունավետությունը մի քանի անգամ կգերազանցի ներկայումս նույն գործառնությունների համար օգտագործվող ձեռքի աշխատանքը:

Լայնորեն կկիրառվի փոստային ձեռնարկությունների միջև առաքումների փոխանակման կոնտեյներային սիստեմը, որը լիովին կապահովի առաքումների հուսալի պահպանությունը տեղափոխման ժամանակ: Առաջիկա տարիներին փոստային ձեռնարկությունները կապահովվեն համապատասխան հարմարավետ շենքերով: Կապի հանգույցի նոր շենքեր են նախատեսվում Հրազդանում, Կալինինոյում, Սպիտակում, Սևանում և մի շարք այլ շրջաններում: Կառուցվում են կամ նախատեսվում է կառուցել կապի բաժանմունքների նոր, հարմարավետ շենքեր հանրապետության բոլոր քաղաքներում և շրջաններում: Շահագործման կհանձնվի Կիրովականի փոստի փոխանակման բաժանմունքը: Երևանի «Հարավային» օդանավակայանը կունենա ավիափոստի նոր շենք: Կապի կենտրոնական նոր արհեստանոցի գործարկմամբ կլուծվի փոստային կապում օգտագործվող մեքենաների ու սարքերի, ինչպես նաև բաժանորդային արկղերի ու առաքման հենակետերի բարձրորակ վերանորոգման հարցը, փոստային ձեռնարկությունները կապահովվեն հատուկ արտադրական կահույքով: Նոր արհեստանոցը մեկ տարում կթողարկի 100—120 հազար ծանրոցային արկղ, որը լիովին կբավարարի հանրապետության պահանջները:

Կապի տնտեսական բազայի և ծառայությունների հետագա կատարելագործման նպատակով նախատեսվող միջոցառումներն ու կազմվող պլանները խարսխված են հանրապետության կապավորների այսօրվա նվաճումների վրա և ունեն իրականացման բոլոր հնարավորությունները:

ՍՍՀՄ ժողովուրդների

եղբայրական ընտանիքում

# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՈՒԺԸ

**Ա. Է. ՎՈՍ**
Լատվիայի կոմկուսի Կենտկոմի
առաջին քարտուղար

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔՈՒՄ, կոմունիստական ստեղծարար աշխատանքի պատմության մեջ յուրաքանչյուր տարին ունի իր անկրկնելի առանձնահատկությունները: Այժմյան՝ 1980 թվականը սոցիալիստական հայրենիքի տարեգրության մեջ կմտնի որպես Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի տարի, հիտլերյան զավթիչների դեմ տարած մեծ հաղթանակի 35-ամյակի տարի, տասներորդ հնգամյակը հաջողությամբ ավարտելու համար վճռական պայքարի տարի: Հսկայական մոբիլիզացնող նշանակություն ունի 1981 թվականի փետրվարին կուսակցության հերթական՝ XXVI համագումար հրավիրելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1980 թ.) պլենումի ընդունած որոշումը:

Մեր հանրապետության համար այս տարին նշանավոր է նաև սովետական իշխանության վերականգնման 40-ամյակով: Չորս տասնամյակ առաջ լատիշ ժողովուրդը վերացրեց այն պատմական անարդարությունը, որը նրան մի կողմ էր շեղել սոցիալական առաջընթացի մայրուղուց, տապալեց կապիտալիստական հասարակարգը, կատարեց սոցիալիստական հեղափոխություն և մտավ ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքը:

Լատիշ ժողովրդի համար սոցիալիզմ տանող ուղին հեշտ չէր: 1940 թվականի հեղափոխության նվաճումները դեռևս ամբողջովին չէին դրսևորվել, երբ երիտասարդ սովետական հանրապետության աշխատավորներն ստիպված էին զենքը ձեռքը վերցնել և ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների հետ միասին հայրենի հողը պաշտպանել նրա սահմանները ներխուժած ֆաշիստական հրոսակախմբերից:

Մեր մեծ հաղթանակը հսկայական զոհեր արժեցավ: Չկար մի ընտանիք, որը չողբար իր հարազատներին: Հսկայական վնաս հասցրին նվաճողները մեր տնտեսությանն ու մշակույթին: Ընդ որում, մեզանում՝ Լատվիայում, խնդիրը սոսկ ժողովրդական տնտեսությունը վերականգնելն ու առաջ մղելը չէր: Անհրաժեշտ էր հանրապետության տնտեսությունը, ժողովրդի կյանքը վերջնականապես տանել նոր, սոցիալիստական հունով: Պետք էր, որը, անշուշտ, ամենադժվարն էր, վերացնել հին սովորույթները, վերափոխել դասակարգերի ու սոցիալական խավերի, ամբողջությամբ վերցրած, հոգեբանությունը, աշխարհայացքը: Մենք կարողացանք հաղթահարել ամենաբարդ խնդիրները: Անցած քառասուն տարիների ընթացքում մեր հանրապետությունը հին աշխարհից ոտք դրեց նոր սոցիալական աշխարհ, հասարակության դինամիկ զարգացման աշխարհը, անհատի համակողմանի զարգացման աշխարհը:

Անցած ուղու գլխավոր արդյունքն այն է, որ լատվիական հողում ևս կա-

ռուցված է զարգացած սոցիալիզմ, ձեռք է բերվել,— ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը,— «...նոր հասարակության հասունության այնպիսի փուլ, երբ ավարտվում է, ամբողջությամբ վերցված, հասարակական հարաբերությունների վերակառուցումը սոցիալիզմին ներհատուկ կոլեկտիվիստական հիմունքներով: Այստեղից էլ՝ լիակատար ասպարեզը սոցիալիզմի օրենքների գործողության համար, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում նրա առավելությունների ի հայտ գալու համար: Այստեղից էլ՝ սոցիալական սիստեմի օրգանական ամբողջականությունը և դինամիզմը, նրա քաղաքական կայունությունը, ներքին անխորտակ միասնությունը: Այստեղից էլ՝ բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների հարաճուն մերձեցումը և մեղանում մարդկանց սոցիալական ու ինտերնացիոնալ պատմականորեն նոր հանրության՝ սովետական ժողովրդի, կազմավորումը» (Լենինյան կուրսով, հ. 6, էջ 679):

Մտովի հայացք նետելով մեր անցած ուղուն, մենք հպարտությամբ ասում ենք, որ մեր հաղթանակների գլխավոր աղբյուրներից մեկը ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունն է: Այդ բարեկամությունն ունի իր փառապանծ պատմությունը, հենվում է դարերի խորքից եկող վաղեմի ավանդույթների վրա: Բայց հատկապես այն լայն բնույթ ձեռք բերեց պրոլետարիատի պատմական ասպարեզ ելնելուց, հեղափոխական բանվորական շարժման ծավալվելուց հետո:

Լատվիայի կոմունիստական կուսակցությունն իր ծննդյան օրվանից սերտորեն կապված է եղել Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության հետ, բոլշևիկների, Ռուսաստանի պրոլետարիատի առաջնորդ և ուսուցիչ, մեծ ինտերնացիոնալիստ Վլադիմիր Իլյիչ Լենինի հետ: Ռուսաստանի ժողովուրդները, տարբեր ազգության բանվորները միասին պայքարում էին մեծ Հոկտեմբերի հաղթանակի համար: «Ազատ Լատվիան ազատ Ռուսաստանում»— այսպիսին էր նշանաբանը, որ քաղաքացիական պատերազմի տարիներին դրոշմված էր լատիշական կարմիր հրաձիգների դրոշներին: Քսան տարի անց նրանք և իրենց որդիները ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների ներկայացուցիչների հետ միասին մաքառում էին մեր երկրի վրա հարձակված հիտլերյան զավթիչների դեմ:

Ազատագրումից հետո լատիշ ժողովրդի առջև հարց չծառացավ, թե ինչ ուղիով ընթանար դեպի սոցիալիզմ: Նրա առջև էր եղբայրական սովետական հանրապետությունների կյանքում ստուգված փորձը: Սոցիալիստական ինդուստրացում, գյուղատնտեսության կոլեկտիվացում, կուլտուրական հեղափոխության իրականացում— այսպիսին էր մեծ Լենինի կանխանշած այդ ուղին: Մեր հանրապետությունն այն անցավ ավելի արագ, ավելի քիչ ջանք գործադրելով, պատմական սեղմ ժամկետում ո՛չ միայն այն պատճառով, որ այդ ուղին պարզ էր, այլև այն պատճառով, որ մշտապես հենվել ենք ՍՍՀՄ ժողովուրդների անշահախնդիր օգնության վրա:

Սովետական ժողովուրդների բարեկամությունը, որ կռել է մեր կուսակցությունը, սոցիալիզմի մեծ նվաճումն է: Սովետական Լատվիայի աշխատավորներն աչքի լույսի պես են պահպանում այդ բարեկամությունը, հպարտանում են, որ իրենք պատկանում են հանուն խաղաղության ու սոցիալիզմի մղվող պայքարի ավանգարդում ընթացող մեծ, հզոր, միաձույլ համախմբված սովետական ժողովրդին:

«Սովետական բազմազգ ժողովրդի միասնությունը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— ամուր է, ինչպես ադամանդը: Եվ ինչպես որ ադամանդը փայլփլում է երփներանգ գույներով, այնպես էլ մեր ժողովրդի միասնությունը շողշողում է այն կազմող ազգերի բազմազանությամբ, որոնցից յուրաքանչյուրն ապրում է ունևոր, լիարյուն, ազատ ու երջանիկ կյանքով» (Լենինյան կուրսով, հ. 2, էջ 128):

Այս խոսքերի ճշմարտացիությունը կարելի է տեսնել նաև մեր հանրապետության օրինակով: Վերցնենք, թեկուզ, նրա տնտեսությունը: Այն երկրի միասնական, ներդաշնակ զարգացող ժողովրդատնտեսական կոմպլեքսի բաղադրիչ մասն է: ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական համագործակցությունը, նրանց



միասնական, համատեղ աշխատանքն է՝ խարսխված մասնագիտացման ու կոոպերացման համամիութենական համակարգի վրա: Յուրաքանչյուր հանրապետությունում զարգանում են առաջին հերթին արտադրության այն ճյուղերը, որոնց համար կան առավել նպաստավոր տնտեսական, բնական ու սոցիալական պայմաններ: Յուրաքանչյուրն աշխատում է բոլորի, բոլորը՝ յուրաքանչյուրի համար:

Սովետական Լատվիայի 40-ամյակը, եթե հաշվի չառնենք պատերազմական տարիները, ՍՍՀՄ ժողովուրդների համակողմանի համագործակցության և եղբայրական օգնության պայմաններում զարգացող նրա տնտեսության անշեղ աճի տարիներն են: Շատ ցուցանիշներով նույնիսկ դժվար է համեմատել ներկայիս մակարդակը բուրժուական Լատվիայում եղածի հետ: Ներկայումս 7 օրվա ընթացքում մեր հանրապետությունը շատ արդյունաբերական արտադրանք է թողարկում, քան հին Լատվիան ամբողջ տարվա ընթացքում: Բայց բանը նույնիսկ միայն քանակական աճը չէ: Մեր արդյունաբերությունը փոխվել է որակապես, դրա կազմում երևան են եկել նորագույն տեխնիկայով զինված, գիտատեխնիկական պրոգրեսի առջևից ընթացող տասնյակ արդիական ճյուղեր:

Ահա մի քանի օրինակներ: 1940 թվականին Լատվիայում պատրաստվել է 22 հազար ռադիոընդունիչ: 1980 թվականին թողարկված ռադիոապարատների թիվը միլիոններ է կազմում, ընդ որում, այդ սարքերն իսկ փոխվել են որակապես՝ իրենց մեջ մարմնավորելով գիտության ու տեխնիկայի բազում նորագույն հասումներ: Բնական է, որ այդ ճյուղի զարգացման գործում նման թռիչք հանրապետությունը չէր կարողանա իրականացնել սեփական ուժերով: Նրան օգնության հասավ ողջ երկիրը՝ մատակարարելով համապատասխան տեխնիկա, նյութեր, հումք, օգնելով մասնագետներով, տրամադրելով գիտության նորույթները:

Այժմ համամիութենական ժողովրդատնտեսական կոմպլեքսի շրջանակներում Սովետական Լատվիան արտադրում է յուրաքանչյուր երրորդ մագիստրալային մարդատար երկաթուղային վագոնը, չորրորդ տրամվայը, հինգերորդ սառցարանային սարքը, յուրաքանչյուր վեցերորդ ավտոբուսը և այլն: Ցանկանում եմ մեկ անգամ ևս շեշտել, որ առանց ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական օգնության՝ արտադրության նման թափ աներևակայելի կլիներ: Այդ թվերի ետևում, այդպիսով, գտնվում է նաև Մոսկվայի և Լենինգրադի մեքենաշինարարների, Ուրալի և Ուկրաինայի մետաղագործների, մեր հայրենիքի բոլոր եղբայրական հանրապետությունների բանվորների և ինժեներատեխնիկական անձնակազմի աշխատանքը: Իր հերթին, Սովետական Լատվիան եղբայր ժողովուրդների հետ շռայլորեն կիսում է իր աշխատանքի պտուղները:

Որպես ինտերնացիոնալացման պրոցեսի խորացման կարևոր գործոն հանդես է գալիս առավել լայնորեն ծավալվող գիտատեխնիկական հեղափոխությունը: Միացնել վերջինիս նվաճումները սոցիալիզմի առավելությունների հետ— այսպիսին է կուսակցության առաջադրած խնդիրը: Իսկ դա, մասնավորապես, նշանակում է ամենուրեք խոշոր, ժամանակակից տեխնիկայի վրա խարսխված արդյունաբերության ստեղծում, դրա կոմպլեքս մեքենայացում և ավտոմատացում, գիտության նորագույն հասումները հաշվի առնելով՝ թողարկվող արտադրանքի մշտապես նորացում: Մեր հանրապետությունում տասներորդ հնգամյակի չորս տարիների ընթացքում յուրացվել է ավելի քան երկու հազար նոր տեսակի ապրանքների արտադրություն: Դա 1,6 անգամ ավելի է, քան նախորդ տասը տարվա ընթացքում: Նոր արտադրանքի ներդրման տեմպերը մշտապես աճում են: Եվ առանց չափազանցության կարելի է ասել, որ մեր յուրաքանչյուր նորույթն արդյունք է Լատվիայից դուրս գտնվող ընկերների հետ համատեղ աշխատանքի:

Հսկայական նշանակություն ունեն սոցիալիստական մրցությունը, հանրապետությունների, քաղաքների, շրջանների, տարբեր հանրապետությունների նույնատիպ ձեռնարկությունների միջև փորձի փոխանակումը: Սովետական Լատվիայի հարյուրավոր արդյունաբերական ու գյուղատնտեսական ձեռնարկություններ մասնակցում են այդ ազնիվ գործին: Դրա տնտեսական ու բարոյական արդյունքն անկարելի է գերագնահատել:

Հարկ է թեկուզ մի քանի խոսք ասել լատվիական գյուղի սոցիալիստական վերափոխումների մասին։ Բուրժուական Լատվիան, ինչպես հայտնի է, գլխավորապես ագրարային երկիր էր, որի գյուղատնտեսությունը հենվում էր ձեռքի աշխատանքի, էժան բանվորական ուժի վրա։ Գյուղում էր ապրում ու աշխատում բնակչության երկու երրորդը, որն օգտագործում էր պետությունում արտադրվող էլեկտրաէներգիայի մեկ երրորդ տոկոսը։

Այժմ գյուղում փոխվել է տառացիորեն ամեն ինչ։ Գլխավորապես եղբայրական հանրապետություններից ստացվող գյուղատնտեսական տեխնիկան հնարավորություն ընձեռեց գրեթե լրիվին մեքենայացնել բոլոր դաշտային աշխատանքները և անասնապահական աշխատանքների զգալի մասը։ Այլ է դարձել նաև գյուղի արտաքին տեսքը, որն առավել լայնորեն է կառուցապատվում բարեկարգ տներով։ Կոլտնտեսականների բնակարաններն իրենց հարդարանքով, հարմարություններով, ամբողջ կահավորումով այժմ քիչ են տարբերվում քաղաքացիների բնակարաններից։ Աշխատանքի վարձատրությամբ, կրթության, բուժսպասարկման, սոցիալական ապահովության, կենցաղի կազմակերպման մակարդակով գյուղն առավել է մոտենում քաղաքին։ Ժամանակակից գյուղացին, որը մեծացել է կոլեկտիվ աշխատանքի պայմաններում, ապրում է հասարակական մեծ շահերով։ Նա լայն կապեր ունի ամբողջ երկրի հետ, զինվում է այն ամեն արժեքավորով, ինչ գյուղատնտեսական արտադրության ոլորտում ձեռք են բերել մյուս հանրապետությունները։

Ինտերնացիոնալացման պրոցեսը, իհարկե, զարգանում է ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ազգությունների ո՛չ միայն նյութական, այլև հոգևոր կյանքում։ Դրան նպաստում է այն հանգամանքը, որ նրանք բոլորն էլ սովետական իշխանության տարիներին հսկայական թռիչք են կատարել իրենց հոգևոր զարգացման ասպարեզում։ Այսպես, մեր հանրապետությունում մեկ միլիոնից ավելի մարդիկ ունեն բարձրագույն և միջնակարգ կրթություն։ Քաղաքում ու գյուղում գործում են 1,4 հազար մասսայական գրադարաններ, որոնց գրքերի ֆոնդը հասնում է 24 միլիոն օրինակի։ Տարեկան արձանագրվում է կինոնկարների 34 միլիոն հաճախում։ Ամեն տարի 2,5 միլիոն հանդիսատես է այցելում մեր թատրոնները, համերգներին լինում է ավելի քան մեկուկես միլիոն ունկնդիր և այլն։

Ես վկայակոչում եմ այս թվերը, որպեսզի ցույց տամ, թե ինչպես լայնորեն են աշխատավորներն օգտվում մշակույթի նվաճումներից։ Իրենք էլ հանդես են գալիս որպես մշակութային արժեքների ստեղծողներ, որի մասին են վկայում հանրապետությունում անցկացվող երգի տոները, կոլեկտիվների գեղարվեստական ինքնագործունեությունը։

Սոցիալիստական ազգերի միջև տեղի է ունենում մշակութային արժեքների ինտենսիվ փոխանակություն։ Մշակվել և հաջողությամբ կիրառվում են բազմաթիվ ձևեր ու մեթոդներ, որոնք նպաստում են ազգային մշակույթների նվաճումներին փոխադարձաբար ծանոթանալուն և, հետևապես, դրանց մերձեցմանը։ Գեղեցիկ ավանդույթ են դարձել եղբայրական ժողովուրդների գրականությանն ու արվեստին նվիրված շաբաթներն ու օրերը, կինոյի և երաժշտության փառատոները, գեղարվեստական ցուցահանդեսները, ստեղծագործական կոլեկտիվների փոխադարձ հյուրախաղերը, մեր թատրոններում եղբայրական հանրապետությունների դրամատուրգների ու կոմպոզիտորների ստեղծագործությունների բեմադրությունները, ռադիոյով և հեռուստատեսությամբ հատուկ հաղորդումները, թերթերում և ամսագրերում տպագրվող հոդվածները, գրական երկերի թարգմանությունն ու հրատարակումը, կինոնկարների կրկնօրինակումը և շատ ու շատ այլ բաներ։ Այս ամենը ծառայում է սովետական մարդկանց սոցիալիստական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու ազնիվ նպատակին։

Բուրժուական Լատվիայում տիրող դասակարգերը քարոզում էին ազգային ինքնամփոփություն ու մեկուսացածություն։ Դա մշակույթը դատապարտում էր հետամնացության, կաշկանդում ստեղծագործական ուժերը։ Ժամանակին Յան Ռայնիսը շեշտում էր, որ լատիշ ժողովուրդը ցանկանում է «ապրել լայն կյանքով, չպարփակված, չկաշկանդված գերմանամերձբալթյան հնավանդ հայացքների կապանքներում, նա ցանկանում է մասնակցել ռուսական լայնահուն կյանքում, որտեղ կարելի է ծառայել մեծ հայրենիքին բոլոր ուժերով...»։



Այժմ յուրաքանչյուր, այդ թվում նաև լատիշական, մշակույթի գործիչներն ստեղծագործում են ո՛չ միայն սեփական ժողովրդի համար։ Նրանց գործերը հասցեագրվում են մեր ամբողջ երկրին, իսկ հաճախ նրանց լսարանը դուրս է գալիս երկրի սահմաններից։ Յուրաքանչյուր ազգային մշակույթի զարգացման գործում ջերմ շահագրգռվածություն են ցուցաբերում ՍՍՀՄ բոլոր ժողովուրդները։ Արդյունքը լինում է այն, որ ազգային ստեղծագործությունում ծնվող ամեն մի տաղանդավոր աչքի ընկնող գործ դառնում է ընդհանուր, ինտերնացիոնալ սեփականություն։

ՍՍՀՄ ժողովուրդների մշակույթը, ազգային ձևերով բազմազան լինելով հանդերձ, իր զարգացման գլխավոր ուղղությամբ, բովանդակությամբ սոցիալիստական է, իսկ ոգով ու բնույթով՝ ինտերնացիոնալ։ «Սովետական սոցիալիստական կուլտուրայի ազգային ձևերի բազմազանության մեջ,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— ավելի ու ավելի նկատելի են դառնում ընդհանուր ինտերնացիոնալիստական գծերը։ Ազգայինն ավելի ու ավելի է արգասավորվում մյուս եղբայրական ժողովուրդների նվաճումներով։ Սա առաջադիմական պրոցես է։ Այն համապատասխանում է սոցիալիզմի ոգուն, մեր երկրի բոլոր ժողովուրդների շահերին։ Հենց այսպես են դրվում նոր, կոմունիստական կուլտուրայի հիմքերը, որը չգիտե ազգային պատնեշներ և հավասար չափով է ծառայում բոլոր աշխատավոր մարդկանց» (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 80)։

ՍՍՀՄ ժողովուրդների ազգային մշակույթների զարգացման համար մեծ նշանակություն ունեն նաև նրանց արտաքին կապերը սոցիալիզմի երկրների ժողովուրդների մշակույթների, կապիտալիստական ու զարգացող երկրների առաջադիմական մշակույթի հետ։

Ազգամիջյան կապերի ու համագործակցության արագ աճը հանգեցնում է ռուսաց լեզվի լայն տարածմանը։ Մեր հանրապետության լատիշ բնակչության մեծամասնությունը, օրինակ, տիրապետում է ռուսաց լեզվին։ Եվ սա ունի խոշոր դրական նշանակություն, քանզի յուրաքանչյուր մարդու առջև լրացուցիչ հնարավորություններ են բացվում ազգամիջյան հաղորդակցման, համաշխարհային մշակույթի, գիտության, տեխնիկայի նորույթների ուսումնասիրման համար։ Ժամանակին Յան Սուդրաբկալնը գրել է. «Ռուսաց լեզուն իմ առջև բացեց ողջ աշխարհը։ Պուշկինի և Բլոկի, Գոգոլի և Տուրգենևի, Չեխովի և Գորկու գրքերը, որոնց այնուհետև ավելացան շատ ուրիշներ, ինձ օգնեցին ավելի խոր հասկանալ ու զգալ ո՛չ միայն Ռուսաստանի հոգին, այլև սեփական լատիշական երկիրն ու մարդկությանը»։ Իրենց հերթին մեր հանրապետությունում ապրող այլ ազգությունների մարդիկ ուսումնասիրում են լատիշերենը, հաղորդակցվում լատիշական մշակույթի հասումներին, որը նույնպես նրանց համար բարերար նշանակություն ունի։

Այսպիսով, կյանքի որ բնագավառն էլ վերցնելու լինենք՝ տնտեսություն, մշակույթ, սոցիալական կյանք, կենցաղ, բոլորը զարգանում են ժողովուրդների բարեկամության, ինտերնացիոնալացման պրոցեսի որոշիչ ազդեցության ներքո։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ մեր հանրապետությունը հազար-հազարավոր անտեսանելի թելերով կապված է ամբողջ երկրի հետ։ Այդ, ինչպես ասում էր Կ. Մարքսը. այնպիսի «կապեր են, որոնցից չի կարելի պոկվել առանց պատառոտելու սեփական սիրտը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 1, стр. 118)։

Հասուն սոցիալիզմի կառուցումը նոր փուլ է նշանավորում ազգային հարաբերությունների զարգացման գործում, որի համար հատկանշական է ամենից առաջ ՍՍՀՄ ժողովուրդների կյանքի բոլոր կողմերի ինտերնացիոնալացման պրոցեսի խորացումը։ «Որքան ինտենսիվ է ազգային հանրապետություններից յուրաքանչյուրի տնտեսական ու սոցիալական զարգացումը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— այնտեղ այնքան ցայտունորեն է երևան գալիս մեր բովանդակ կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսը» (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 79)։ Դա արտահայտվում է այն բանում, որ ՍՍՀՄ ժողովուրդների միջև բազմաբնույթ կապերը դառնում են ավելի ծավալուն ու սերտ, աճում են նրանց ին-

տերնացիոնալ ընդհանրությունն ու միասնությունը, ազգայինում մշտապես մեծանում է ինտերնացիոնալ գործոնի նշանակությունը:

Ինչպես հայտնի է, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման պայմաններում ազգամիջյան հարաբերությունները բնութագրվում են դիալեկտիկորեն փոխկապակցված երկու միտումով. սոցիալիստական ազգերը զարգանում են բուռն ու համակողմանիորեն և միաժամանակ առավելապես են մերձենում միմյանց: Սոցիալիստական ազգերի ու ազգությունների մերձեցումն ու համագործակցությունը նրանց զարգացման ու բարգավաճման կարևոր նախապայմանն են: Իրենց հերթին սոցիալիստական ազգերի զարգացումն ու բարգավաճումն ավելի սերտ են դարձնում նրանց փոխադարձ կապերը: Այսպիսին է այդ դիալեկտիկական պրոցեսի էությունը:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում առաջատար է դառնում ազգերի մերձեցման միտումը: Սովետական մարդիկ միշտ միասին են՝ ուրախության թե վշտի պահերին, աշխատանքում թե հանգստանալիս, փորձության ժամին: Նրանց հայրենիքը մեկն է, ճակատագիրը՝ մեկ, շահերը՝ մեկ: Աստիճանաբար վճռական են դառնում ընդհանուր, սոցիալական ու ազգային տարբերություններով չպայմանավորվող վարքագծի, բնավորության, աշխարհայացքի ընդհանուր հատկանիշները: Հասուն սոցիալիզմի փուլում ձևավորվող սովետական ժողովուրդը մեր երկրում ապրող ազգերի ու ազգությունների սոսկ քանակական միասնություն չէ: Այն որակապես նոր սոցիալական ու ինտերնացիոնալ հանրություն է, ազգերի ապագա լիակատար միասնության նախատիպը:

Հասուն սոցիալիզմի պայմաններում աճում է ազգային հարաբերությունների զարգացման քաղաքական գործոնի՝ կուսակցության հետևողական, գիտականորեն հիմնավորված ազգային քաղաքականության դերը: ՍՍՀՄ ազգերի ու ազգությունների մերձեցման պրոցեսը տարերայնորեն, ինքնահոսի կարգով տեղի չի ունենում: Դրան ուղղություն է տալիս, ղեկավարում է կոմունիստական կուսակցությունը, որն ըստ այդմ ուշադիր կերպով հաշվի է առնում ինչպես ամբողջ Միության ընդհանուր շահերը, այնպես էլ նրա կազմի մեջ մտնող հանրապետությունների շահերը, յուրաքանչյուր ժողովրդի ազգային առանձնահատկությունները:

Մեր կուսակցությունն իր գոյության առաջին օրերից սկսած բարձր է պահել ինտերնացիոնալիզմի դրոշը: Այն, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, միասնական, կենտրոնացված, մարտական կազմակերպություն էր, որն առանց լեզվի և ազգության խտրության հենվում էր ամբողջ պրոլետարիատի վրա, համախմբված էր տեսական և գործնական, տակտիկական և կազմակերպական հարցերի համատեղ մշտական լուծումով (տե՛ս ԵԼԺ, հ. 7, էջ 153):

Հասուն սոցիալիզմի փուլում, ինչպես և նախկինում, կուսակցությունն իր գաղափարախոսությամբ ու քաղաքականությամբ, իր կազմով ու կառուցվածքով հզոր ինտերնացիոնալիստական ուժ է: Մեր կուսակցությունը, ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը, «ՍՍՀՄ աշխատավորների մարտական ընկերության ու բարեկամության, ամբողջ սովետական ժողովրդի անխախտ միասնության առավել վառ մարմնավորումն է: Մեզանում բոլոր կոմունիստները, ինչ ազգության էլ որ պատկանելիս լինեն, միասնական լենինյան կուսակցության անդամներ են: Նրանք ունեն միատեսակ իրավունքներ ու պարտականություններ, հավասար պատասխանատվություն են կրում երկրի բախտի համար» (Լենինյան կուրսով, հ. 4. էջ 83—84):

ՍՄԿԿ-ն պարբերաբար առաջադրում և հաջողությամբ լուծում է անընդհատ բարդացող քաղաքական, տնտեսական, սոցիալական ու մշակութային խնդիրներ, որոնք հասուն սոցիալիզմի հասարակությունում բխում են ազգային հարաբերություններից: Իր վերափոխող գործունեության մեջ կուսակցության գլխավոր հենարանը բանվոր դասակարգն է: Զարգացած սոցիալիզմի պայմաններում ևս, երբ ՍՄԿԿ-ն դարձել է ամբողջ ժողովրդի կուսակցությունը, այն եղել և մնում է, ինչպես նշվեց XXV համագումարում, բանվոր դասակարգի կուսակցությունը:

Սոցիալիստական վերափոխումների տարիներին բանվոր դասակարգն աճեց քանակապես, անսահմանորեն աճեց նրա կրթական մակարդակը, քաղաքական



ակտիվությունը, ամրապնդվեց նրա՝ որպես հասարակության առաջատար սոցիալ-տնտեսական, քաղաքական ու գաղափարախոսական ուժի, դիրքը: Մեզանում, ինչպես և շատ այլ հանրապետություններում, բանվորներն իրենց ընտանիքների անդամների հետ միասին այժմ կազմում են բնակչության մեծամասնությունը: Բանվոր դասակարգը, որն իր էությամբ ամենաինտերնացիոնալն է, վճռական դեր է խաղում մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների մերձեցման պրոցեսում:

ՍՄԿԿ-ն կարևորում է աշխատավորներին ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելը: Նրա կանոնադրությունում գրված է, որ յուրաքանչյուր կոմունիստ պարտավոր է «լինել աշխատավոր մասսաների մեջ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության գաղափարների ակտիվ կիրառող, պայքար մղել նացիոնալիզմի և շովինիզմի վերապրուկների դեմ, խոսքով ու գործով նպաստել ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդների, բոլոր երկրների պրոլետարների և աշխատավորնեի հետ սովետական ժողովրդի եղբայրական կապերի ամրապնդմանը»:

Մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունն ինտերնացիոնալ դաստիարակությունը համարում է առաջնակարգ կարևորություն ունեցող գործ: Շատ բան է արված, որպեսզի ինտերնացիոնալիզմի սկզբունքները դառնան, ինչպես ասում են, մեր մարդկանց միսն ու արյունը: Անհրաժեշտ է շարունակել այդ աշխատանքն այնպես, որ այն ամենուրեք աչքի ընկնի դասակարգային նպատակասլացությամբ, որպեսզի խոսքը գործից չտարբերվի:

Ցավոք, դեռևս պատահում է այնպես, որ որոշ տեղերում և՛ համապատասխան թեմատիկայով դասախոսություններ են կարդացվում, և՛ ցուցադրական ագիտացիան առկա է, և՛ մեկնում են նույնատիպ ձեռնարկությունները, իսկ առաքումները մյուս հանրապետություններ կատարվում են ոչ նախատեսված ժամանակին կամ երկրորդ հերթին: Մինչդեռ եղբայրական հանրապետություններ առաքումները ժամանակին ու որակով կատարելն աշխատավորական կոլեկտիվների ինտերնացիոնալ պարտքի և հայրենասիրական պատասխանատվության դրսևորումն է, նրանց ինտերնացիոնալ հասունության վկայությունը: Մեզանից յուրաքանչյուրը պետք է հիշի, որ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը ողջ սովետական ժողովրդի վեհ ինտերնացիոնալ խնդիրն է, որը կարելի է լուծել միայն մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների միացյալ ջանքերով:

ՍՄԿԿ-ն դրանից ելնելով է կառուցում իր քաղաքականությունը նաև կադրերի ընտրության ու տեղաբաշխման բնագավառում: Ինչպես հայտնի է, ժողովրդական տնտեսության արագ զարգացումը, արդյունաբերական նոր կենտրոնների ստեղծումը, գիտատեխնիկական հեղափոխության ազդեցության ներքո արտադրության նոր ճյուղերի առաջացումը պահանջում են հանրապետությունների միջև որակյալ մասնագետների փոխանակման ուժեղացում, մեծացնում բնակչության շարժունությունը: Այդ ամենի հետևանքով մեր հանրապետությունները և հատկապես նրանց քաղաքներն առավել բազմազգ են դառնում: Սովետական Լատվիայի օրինակը մի անգամ ևս այդ է հաստատում: Այսպիսին է օբյեկտիվ պրոցեսը, որն ունի դրական նշանակություն: Մեր հանրապետությունն այսօր մի միասնական, համերաշխ բազմազգ աշխատավորական կոլեկտիվ է: Նրա 40-ամյակը տոնն է ո՛չ միայն լատիշների, այլև ռուսների, ուկրաինացիների, բելոռուսների, լիտվացիների, լեհերի, հրեաների, բոլոր ազգությունների աշխատավորների, որոնք ապրում և աշխատում են որպես մի միասնական, համերաշխ ընտանիք:

Ազգային հարցը, ինչպես հայտնի է, մարդկության պատմության մեջ ամենահիվանդագին, դրամատիկական հարցերից մեկն է: Մարդկության լավագույն մտքերը դարերով երազել են ժողովուրդների եղբայրության մասին, անվերջանալի ազգամիջյան երկպառակության վերացման մասին: Այդ իրականացնել կարողացավ միայն սոցիալիզմը: Այդ իսկ պատճառով միջազգային հասարակայնության լայն շրջանների ուշադրությունը բևեռված է ՍՄԿԿ-ի ազգային քաղաքականությանը: Եվ այդ իսկ պատճառով էլ այն փորձում են վարկաբեկել

բուրժուական գաղափարախոսները։ Նրանց նպատակը պարզ է։ Նրանք ցանկանում են խանգարել ժողովուրդներին, նախ և առաջ «երրորդ աշխարհի» ժողովուրդներին, ընտրություն կատարելու հօգուտ սոցիալիզմի։ Միաժամանակ նրանք կուզենային արդարացնել իմպերիալիզմը, որն ազգային ճնշման գլխավոր աղբյուրն է։

Մեզ թշնամի պրոպագանդան ձգտում է միմյանց հակադրել ՍՍՀՄ ժողովուրդներին։ Այն ներկայացնում է ազգամիջյան կապերի սերտացումն իբրև ոչ ռուս ազգերի «ամբողջականության» սպառնալիք։ Արտասահմանից կեղծավոր հառաչանքներ են լսվում ՍՍՀՄ ժողովուրդների «բռնի ուծացման» առթիվ։ Սովետագետների կարծիքով, ազգային հանրապետությունների տնտեսական առաջընթացը բացասական երևույթ է, քանի որ այն, իբր, փոփոխություն է առաջացնում նախկին ապրելակերպում, որը թեպետև հենվում էր հետամնացության վրա, բայց և այնպես ավելի էր համապատասխանում ազգային ավանդույթներին։

Այնուհետև պնդում են, թե ազգային մշակույթների մերձեցումը, իբր, «օտարածին ազդեցությունների» պատճառով հանգեցնում է ազգային ինքնատիպության կորստյանը։ Այսպիսով, նրանք նենգափոխում են «ազգայինի» բուն հասկացությունը, այն հավասարեցնում հեռավոր անցյալից եկող ինչ-որ բանի։ Ինչ վերաբերում է ինտերնացիոնալիզմին, ապա սովետագետներն այն մեկնաբանում են իբրև ազգայինի ժխտում, դրանից հրաժարում։ Նրանք պայքարում են, որպեսզի ազգայինը զերծ պահեն արտաքին ազդեցություններից, հավերժ անփոփոխ դարձնեն։ Սոցիալիզմը, ինչպես նրանք են պնդում, «վերացնում է» ազգայինը, այն զոհում հանուն ինտերնացիոնալականի։

Մինչդեռ, իրականում սոցիալիզմն ամենևին էլ չի «վերացնում» ազգերը, այն վերափոխում է նրանց փոխհարաբերությունները նոր, նախկինում գոյություն չունեցող հիմունքներով, կազմակերպում է ազգամիջյան համագործակցություն՝ հանուն ընդհանուր իդեալների իրականացման, պայմաններ է ստեղծում ազգերի ազատ զարգացման համար։ Ինտերնացիոնալ սկզբունքի ուժեղացումն ամենևին էլ չի նշանակում ազգայինը զոհաբերել։ Ընդհակառակը, ազգայինը հարստանում է ազգամիջյան շփման մեծացման շնորհիվ, միաժամանակ պահպանելով իր ինքնատիպությունը։ Այս կապակցությամբ տեղին է հիշեցնել Լ. Ի. Բրեժնևի հետևյալ արտահայտությունը. «Սովետական ժողովրդի սոցիալ-քաղաքական միասնությունն ամենևին էլ չի նշանակում ազգային տարբերությունների անհետացում։ Լենինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառման շնորհիվ մենք, կառուցելով սոցիալիզմ, միաժամանակ, պատմության մեջ առաջին անգամ, հաջողությամբ լուծեցինք ազգային հարցը։ Անխախտ է սովետական ժողովուրդների բարեկամությունը, կոմունիստական շինարարության պրոցեսում անշեղորեն տեղի է ունենում նրանց մերձեցում, նրանց հոգևոր կյանքի փոխադարձ հարստացում։ Բայց մենք վտանգավոր ուղու վրա կկանգնեինք, եթե սկսեինք արհեստականորեն արագացնել ազգերի մերձեցման այդ օբյեկտիվ պրոցեսը։ Դրանից հաստատակամորեն նախազգուշացնում էր Վ. Ի. Լենինը, և նրա պատգամներից մենք չենք նահանջի» (Լենինյան կուրսով, հ. 6, էջ 664—665)։

Մերձբալթիկային ուղղված բուրժուական պրոպագանդան նշված ընդհանուր, միանգամայն սնանկ դրույթների կողքին ունի նաև մի շարք նրբերանգներ։ Այսպես, ահա արդեն շատ տարիներ շարունակ լուրեր են տարածվում, թե, իբր, սովետական իշխանությունը 1940 թվականի հուլիսյան օրերին լատիշ ժողովրդին բռնի է պարտադրվել, այսպես ասած, ներմուծված է դրսից՝ 1940 թ. հունիսին մուտք գործած սովետական զորքերի լրացուցիչ կոնտինգենտի կողմից։ Նրա համար, ում գեթ փոքր-ինչ ծանոթ է պատմությունը, աչքի կզարնի նման հայտարարությունների կեղծ, ծառայության բերումով պարտադրված լինելը։ Հանուն սովետների իշխանության պայքարելու Լատվիայի ժողովրդի վճռականությունը դրսևորվեց դեռևս Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նախապատրաստման ու իրականացման շրջանում։ Հիշեցնենք, սահմանադիր ժողովի ընտրությունների ժամանակ բոլշևիկների ցուցակի օգտին, որտեղ առաջինը նշված էր Վ. Ի. Լենինի անունը, Լատվիայում տրվեց ձայ-



ների 72 տոկոսը, իսկ լատիշական հրաձգային գնդերում՝ 95 տոկոսը։ Լատիշական կարմիր հրաձիգներին, Լատվիայի զինվորական շինել հագած այդ բանվորներին ու գյուղացիներին, այն տարիներին կուսակցությունն ուղարկում էր հակահեղափոխության դեմ պայքարի առաջավոր գծերը։ 1919 թվականին լատիշական հրաձիգների և կարմիր բանակի այլ զորամասերի վճռական հարձակումից, Ռիգայի պրոլետարիատի ապստամբությունից հետո Լատվիայում հաղթանակեց սովետական իշխանությունը։ Միայն միջազգային իմպերիալիզմի և ներքին հակահեղափոխության միացյալ ուժերը կարողացան այն կործանել։

Բուրժուազիայի տիրապետության բոլոր տարիներին տիրող դասակարգերն անխնա ճնշում էին հեղափոխական շարժումը, ձգտում էին ժողովրդի հիշողությունից ջնջել այն ժամանակը, երբ նա ինքն էր իր բախտի տերը։ 1940 թվականի ամառը ցույց տվեց, որ այդ բանն անել նրանց չհաջողվեց։ Հենց որ ստեղծվեցին նպաստավոր պայմաններ, սովետական իշխանության վերականգնման համար պայքարն ամենալայն, իսկապես համաժողովրդական բնույթ կրեց։ Այդ մասին էին խոսում Լատվիայի պատմության ընթացքում խոշորագույն՝ 1940 թվականի հունիս—հուլիսյան ցույցերը, վերջապես, այդ էին վկայում հուլիսի 14-ին և 15-ին անցկացված ընտրությունների արդյունքները, երբ հանրապետության բնակչության ճնշող մեծամասնությունն արտահայտվեց հօգուտ Լատվիայի աշխատավոր ժողովրդի բլոկի ծրագրի։

Այդ իսկ պատճառով լատիշ ժողովրդին սովետական իշխանությունը կարծեցյալ բռնությամբ պարտադրելու վերաբերյալ զրպարտչական շաղակրատանքներին մենք պատասխանում ենք.— Ո՛չ, պարոնայք։ Եթե ինչ-որ բան ժողովրդին բռնի կերպով պարտադրվել է, ապա դա բուրժուազիայի 20-ամյա տիրապետությունն էր, որն ընդմիշտ կմնա իբրև նրա պատմության սև բիծը։

Սովետական կարգերի գոյության 40 տարիների ընթացքում մեր հանրապետության բնակչությունը կյանքի մեծ դպրոց է անցել, սեփական փորձով հասկացել է ով է իր բարեկամը իսկ ով՝ թշնամին։ Մեր դասակարգային թշնամիների ոչ մի խարդավանք նախկինում չի կարողացել, այսուհետ ևս չի կարողանա սասանել սովետական ժողովրդի անքակտելի միասնությունը։ Սոցիալիստական շինարարության ընթացքում ինտերնացիոնալիզմը կոմունիստների իդեալից վերածվել է ժողովրդական լայն մասսաների խորին համոզմունքի ու վարքի նորմայի։

Լավ ավանդույթ է հոբելյանական հանդիսությունների օրերին նշելով ձեռք բերած հաջողությունները, ամբողջ ձայնով մեկ խոսել նաև չլուծված խնդիրների, թերությունների մասին։ Իսկ դրանք, ցավոք, դեռևս քիչ չեն։ Ընդ որում, մեր առջև ծառացած են լուրջ խնդիրներ, որոնք պահանջում են ուժերի նոր լարում, միասնական, համերաշխ աշխատանք։ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1979 թ.) պլենումում, դրանից հետո տեղի ունեցած Լատվիայի կոմկուսի Կենտկոմի պլենումում շիտակորեն ու բացեիբաց խոսվեց այն մասին, որ մեր տնտեսության որոշ ճյուղեր, մի շարք ձեռնարկություններ չեն կարողանում կատարել պետական առաջադրանքները, որ դժվարություններ կան բնակչությանը որոշ մթերքներ և արդյունաբերական ապրանքներ մատակարարելու գործում, որ դեռևս մեր ոչ բոլոր մարդիկ են աշխատում իրենց ուժերի ներածին չափով, պահպանում պետական կարգապահությունը։ Մեզ անհրաժեշտ է առավել հետևողականությամբ, առավել եռանդով կենսագործել կուսակցության քաղաքականությունը, մեր ամբողջ աշխատանքում հասնել արդյունավետության ու որակի բարձրացման։ Այդ բանի համար քիչ ռեզերվներ չկան։

Վերցնենք, օրինակ, այնպիսի հարց, ինչպիսին նյութական պաշարների, հումքի և վառելիքի լավագույն օգտագործումն է։ Ինչպես հայտնի է, տնտեսման ռեժիմը սոցիալիստական տնտեսավարման կարևորագույն սկզբունքն է։ Այն պետք է հետևողականորեն կիրառվի յուրաքանչյուր ճյուղում, յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվում, յուրաքանչյուր աշխատատեղում։ Նյութական ծախսերն ընդամենը մեկ տոկոսով կրճատելը երկրի ազգային եկամուտն ավելացնում է վեց միլիարդ ռուբլով, իսկ հանրապետությանը՝ 75 միլիոնով։ Ցավոք, մենք դեռևս ամենուրեք նյութական արժեքների նկատմամբ չենք հասել

*խսկական տիրոջ վերաբերմունքի։ Մեր աշխատանքում զգալի դժվարություններ են հարուցում կապիտալ շինարարության թերությունները։ Շատ բան կա անելու գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, ժողովրդական սպառման առարկաների որակը բարելավելու համար։*

*Հանրապետության կուսակցական կազմակերպությունը հստակորեն տեսնում է եղած թերությունները, բացեիբաց խոսում դրանց մասին, բոլոր աշխատավորներին նպատակամղում դրանց վերացմանը։*

*Կասկած չկա, որ կուսակցության XXVI համագումարն անցկացնելու լուրը կառաջացնի սովետական մարդկանց քաղաքական ու աշխատանքային ակտիվության նոր վերելք, առավել մեծ թափ կհաղորդի մեր տնտեսական ու սոցիալական պլանների կատարման ու գերակատարման, աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման նպատակով ծավալված սոցիալիստական մրցությանը։ Յուրաքանչյուր համագումար,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1980 թ. հունիսի 23-ին,— նոր հորիզոններ է բացել մեր կուսակցության և երկրի առջև։ Վստահ եմ, որ այդպիսին կլինի նաև առաջիկա համագումարը, որը կոչված է որոշելու պայքարի ստրատեգիան ու տակտիկան կոմունիստական շինարարության սկսվող փուլում։*

*Պլենումում մեր կուսակցության գլխավոր քարտուղարի զեկուցման մեջ առաջադրվեցին կուսակցական աշխատանքի, մեր տնտեսության զարգացման, միջազգային կյանքի մի ամբողջ շարք հանգուցային հարցեր։ Այդ հարցերի լուծմանը բևեռված կլինի ողջ կուսակցության, ողջ ժողովրդի ուշադրությունը։ Մեր կուսակցության իմաստուն ղեկավարությունը, սովետական ժողովուրդների եղբայրական միությունը, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության անձնուրաց աշխատանքը կոմունիստական ստեղծագործ աշխատանքի նոր հաջողությունների երաշխիքն են։*

«Коммунист Советской Латвии», № 7, 1980 г.

---



# ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ՀԵՏԱԽՈՒԶԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆԸ ԱՄՆ-Ի ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԻՔՆ Է

Գ. Հ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ և սոցիալիստական համագործակցության երկրների դեմ ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանների գաղափարախոսական պայքարի զինանոցում կարևոր տեղ է հատկացվում Կենտրոնական հետախուզական վարչությանը (ԿՀՎ), որն ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության գործիքն է, և կառավարող շրջաններն այն օգտագործում են ամերիկյան իմպերիալիզմի շահերը պաշտպանելու նպատակով, սոցիալական առաջընթացի ու սոցիալիզմի աճող ազդեցության դեմ մղվող պայքարում։*

*ԿՀՎ-ն ստեղծվել է 1947 թվականին՝ պատերազմից անմիջապես հետո լուծարքի ենթարկված ստրատեգիական ծառայությունների վարչության հիման վրա։ ԱՄՆ-ի կառավարության և նրա ապարատի՝ ազգային անվտանգության խորհրդի առաջին ցուցումներից մեկով ԿՀՎ-ին հանձնարարվում էր անմիջապես ընդարձակել գաղտնի օպերացիաների և կիսառազմական բնույթի գործունեության մասշտաբները։ ԿՀՎ-ի գործունեության հիմքը, գլխավոր գործող մարմինն արտասահմանյան ռեզիդենտուրաներն են, որոնց թիվն այժմ անցնում է հարյուրից։ Դիվանագիտական անձնագրերով ու ժուռնալիստական վկայականներով քողարկված, հանդես գալով իբրև բիզնեսմեններ, դասատուներ, գիդեր, տուրիստներ կամ գիտնականներ, ԿՀՎ-ի հետախույզները դարձել են ամերիկյան իմպերիալիզմի հարվածային ջոկատը։ ԿՀՎ-ն հարյուր միլիոնավոր դոլարներ է ծախսում առաջին հերթին ՍՍՀՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների դեմ լրտեսության ու քայքայիչ աշխատանքների նպատակով։ Լրտեսական գործունեություն է ծավալվում նաև ԱՄՆ-ի դաշնակից երկրներում։ ԿՀՎ-ն հավաքագրում է ծախու քաղաքագետներին ու զինվորականներին, ոստիկաններին և ուսանողներին, եկեղեցու սպասավորներին ու լրագրերի աշխատակիցներին, մատուցողներին ու հյուրանոցների սպասավորներին։*

*Այս և ուրիշ գործակալների օգնությամբ ԿՀՎ-ն կազմակերպում է պետական հեղաշրջումներ և ավազակային հարձակումներ, սպանություններ ու առևանգումներ։ Ամերիկյան հետախույզները զինված են ամենաարդիական տեխնիկայով՝ սկսած անաղմուկ ատրճանակներից մինչև նորագույն էլեկտրոնային-հաշվիչ համակարգերը։*

*ԱՄՆ-ի կառավարող շրջանների կարծիքով, եթե նրանց շահերին վտանգ է սպառնում, իրենք կազմակերպում են, այսպես կոչված, կիսառազմական օպերացիաներ, իսկ, ըստ էության, պատերազմներ՝ ուղղված ամերիկյան թելադրանքին ենթարկվել չցանկացող ժողովուրդների դեմ։ Այդպես էր Իրանում 1953 և*

հրահանգավորում էին արտասահման մեկնելուց առաջ, զրուցում նրանց վերադառնալուց հետո և օգտագործում որպես արտասահմանյան գործակալների հետ կապ պահպանելու միջնորդների:

Վերջերս սովետական և արտասահմանյան մամուլում հրապարակված նյութերը համոզիչ կերպով ցույց տվեցին, որ չնայած «Ազատ Եվրոպա» ռադիոկայանի դիրեկտոր Ռ. Կուկի այն շաղակրատանքներին, թե «ռադիոկայանում չկան այնպիսի ծառայողներ, որոնք ԿՀՎ-ի հետ անգամ նվազագույն կապեր ունենան», իրականում «Ազատություն» և «Ազատ Եվրոպա» ռադիոկայաններն առաջվա նման լիովին գտնվում են ամերիկյան հետախուզության հսկողության տակ, իսկ ռադիոկայանների ղեկավար պաշտոնյաները ԿՀՎ-ի կադրային հետախույզներ են:

Այդ ռադիոկայանների հետախուզական գործունեությունը զանազան բնույթի է և անմիջականորեն ուղղված է ՍՍՀՄ-ի և սոցիալիստական պետությունների դեմ: «Ազատություն» ռադիոկայանի շուրջ երեսուն թղթակիցներ զանազան զրպարտություններ են հավաքում ամբողջ աշխարհում և ուղարկում Մյունխեն՝ իրենց տերերին: Այդ իսկ նպատակով ԳՖՀ-ի տարածքում գործում են մի շարք ինստիտուտներ, ինչպես նաև բունդեսվերի բաժանմունքներ, որոնք մասնագիտանում են «հոգեբանական պատերազմ» վարելու գործում: «Ազատություն» և «Ազատ Եվրոպա» ռադիոկայանները Արևմտյան Գերմանիայում և Արևմուտքի այլ երկրներում օտարերկրյա ներկայացուցչությունների ռադիոհաղորդումներին ու հեռախոսային խոսակցություններին ականջ դնելու ծառայություն ունեն: «Ազատություն» կայանը բաժանմունքներ ունի Հռոմում, Լոնդոնում, Փարիզում և արևմտաեվրոպական այլ մայրաքաղաքներում, ինչպես նաև Վաշինգտոնում և Նյու-Յորքում: Այդ ռադիոկայանի հետ է կապված ռուս էմիգրանտների «Պոսև» հրատարակչությունը, որը հրատարակում է ո՛չ միայն նույնանուն ամսագիր, այլև Սովետական Միություն ուղարկվելիք թշնամական գրականություն, այդ նպատակով պատրաստում է գործակալներ, օգտագործում որոշ օտարերկրյա տուրիստների:

Այդ ռադիոկայանների գոյությունը հակասում է Հելսինկիի եզրափակիչ ակտին, որի համաձայն անթույլատրելի է ուրիշ պետությունների ներքին գործերին որևէ կերպ, այդ թվում նաև մասսայական ինֆորմացիայի միջոցների օգնությամբ միջամտելը:

Ամերիկյան շատ համալսարանների և ինստիտուտների համար Պենտագոնի և ԿՀՎ-ի հետ կասկածելի կապերը դարձել են մեծ բիզնեսի մի տարատեսակը, որի հետևանքով առաջացել է «սոցիոլոգիական հետազոտություններ» կոչվող յուրահատուկ մի գործունեություն: Այդ ի՞նչ «ուսումնասիրություններ» են: Այս առումով պերճախոս փաստեր է պարունակում արգենտինացի սոցիոլոգ Գրիգորիո Սելսերի մի քանի տարի առաջ հրատարակած Լրտեսությունը Լատինական Ամերիկայում: Պենտագոնը և սոցիոլոգիական եղանակները գիրքը: Հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես ԱՄՆ-ի հետախուզական ծառայությունները, իբրև քող օգտագործելով զանազան գիտական կազմակերպություններ, լատինաամերիկյան երկրներում համընդհանուր լրտեսությամբ են զբաղվում:

Այդ գործունեությունում խոշոր դեր է խաղում Վաշինգտոնի ամերիկյան համալսարանին առընթեր, այսպես կոչված, «հատուկ օպերացիաների հետազոտական բաժինը»: Մասաչուսետսի տեխնոլոգիական ինստիտուտին առընթեր ԿՀՎ-ի օգնությամբ 1950 թվականին ստեղծվել է միջազգային հարցերի ուսումնասիրման նմանօրինակ կենտրոն, որին ամենից առաջ ֆինանսավորում է ամերիկյան հետախուզությունը: ԿՀՎ-ի հետ նման «ազգակցական» կապեր է պահպանում նաև Միչիգանի համալսարանը:

Տարի չի անցնում, որ ԿՀՎ-ի կեղտոտ գործունեության շուրջ հրապարակային սկանդալներ չծագեն: Բանն այն է, որ ամերիկյան գաղտնի օպերացիաները հաճախ հանգեցնում են բացահայտ ձախողումների: Այդ կապակցությամբ, ԿՀՎ-ի կազմակերպման օրից ի վեր, այսինքն՝ երեք տասնամյակից ավելի ժամանակամիջոցում, կոնգրեսի հաստատմանն է ներկայացվել ավելի քան 200 օրինագիծ: Ամերիկյան օրենսդիրները ձեռք չեն բարձրացրել և չեն էլ բարձրացնի հետախուզական ծառայությունների վրա: Նրանք ո՛չ միայն չեն



դատապարտում, այլև պատրաստ են ծափահարելու ԿՀՎ-ի ամեն մի գործողություն, լինի դա դավադրություն օտարերկրյա կառավարությունների դեմ, լրտեսություն, կաշառում, մարդկանց առևանգում ու փաստաթղթերի գողություն, կեղծ լուրերի տարածում կամ դիվանագետներին, լրագրողներին, գիտաշխատողներին որպես գաղտնի ծառայությունների գործակալներ օգտագործելը, թե այլ բան: ԿՀՎ-ից դժգոհում են ո՛չ թե իր արածի համար, այլ՝ որ շատ դեպքերում չի կարողանում հետքերը կոծկել:. ԿՀՎ-ի դիրեկտորներին փոխում են ո՛չ թե այն բանի համար, որ նրանց պակասում է քաղաքական ցինիզմը, այլ՝ որ այն մինչև վերջ չեն կիրառում: Իսկապես, միայն ԿՀՎ-ի մեկ դիրեկտոր, այսպես ասած, կեղտոտ գործերի գերատեսչության «նահապետ» Ալեն Դալեսն էր ամուր նստած իր բազմաթոռին, իսկ այնուհետև սկսեցին արագորեն փոխվել նրա հետնորդները:

ԱՄՆ-ում և արտասահմանում մարդու իրավունքների խախտման առումով ԿՀՎ-ի գործունեության վերաբերյալ ամերիկյան մի խումբ հասարակական կազմակերպությունների 1978 թ. գարնանը հրատարակած բրոշյուրում ասված է. «1967 թ. Սպիտակ տան հրամանով ԿՀՎ-ն սկսեց իրականացնել ներքին լրտեսության ծրագիրը, որը հայտնի էր օպերացիա «Քաոս» անվամբ: Երբ 1973 թ. այդ ծրագիրը դադարեցվեց, ԿՀՎ-ն ամերիկացիների վերաբերյալ կազմել էր 300 հազար գործ, 1000 գործ՝ ներքին «բողոքի կազմակերպությունների» վերաբերյալ և նախապատրաստել էր 7000 մանրամասն զեկուցագիր-բնութագրեր՝ ԱՄՆ-ի քաղաքացիների վերաբերյալ: ԿՀՎ-ն ձեռք էր գցում ու կարդում ԱՄՆ-ի քաղաքացիների արտասահմանյան նամակները՝ տվյալներ հաղորդելով հետաքննությունների ֆեդերալ բյուրոյին և այլ կառավարական հիմնարկություններին: Հսկողության տակ գտնվողների ցուցակում էին քաղաքական գործիչներ, գրողներ, կոնգրեսի անդամներ և նույնիսկ մեկ պրեզիդենտ, որի գրագրությունն ընթերցվում էր:

ԱՄՆ-ի հետախուզական մարմինների գործունեությունը 1975—1976 թթ. ուսումնասիրած Ֆ. Չերչի սենատային հանձնաժողովի զեկուցման փաստերը համոզիչ կերպով ապացուցեցին, որ Միացյալ Նահանգները, օգտագործելով ԿՀՎ-ն, դիմել են հանցավոր գործողությունների, որոնց մասնակից են եղել մի քանի պրեզիդենտ: Հայտնի են դարձել նոր փաստաթղթեր մարդկանց պսիխիկան վերահսկելու հնարավորության գաղտնի հետազոտությունների վերաբերյալ, որոնք ձեռնարկել էր ԿՀՎ-ն: Ազգային անվտանգության վերաբերյալ 1947 թ. օրենքը, որի հիման վրա ստեղծվեց ԿՀՎ-ն, գաղտնի օպերացիաներ անցկացնելու հատուկ թույլտվություն չէր տալիս: Այն, սակայն, նախատեսում էր ստեղծել ազգային անվտանգության խորհուրդ, որին լիազորում էր ղեկավարել ԿՀՎ-ն, նպատակ ունենալով իրականացնել հետախուզական օպերացիաներ անցկացնելու հետ կապված և երկրի ազգային անվտանգությունը շոշափող այնպիսի ֆունկցիաներ և պարտականություններ, որոնք երբեմն-երբեմն նրան հանձնարարելու կլիներ ազգային անվտանգության խորհուրդը: Այդ ցուցումով ազգային անվտանգության խորհուրդը հանձնարարում էր ԿՀՎ-ին՝ դիմակայել «միջազգային կոմունիզմին», նպաստել վերջինիս թուլացմանը և աշխարհում ամենուր այն վարկաբեկել այնպիսի մեթոդներով, որոնք համապատասխանում են ԱՄՆ-ի արտաքին և ռազմական քաղաքականությանը: Հրահանգը նաև առաջարկում էր ԿՀՎ-ին այդ նպատակին հասնելու համար ձեռնարկել գաղտնի օպերացիաների անցկացմանը, դրանք համարելով պրոպագանդայի, տնտեսական պատերազմի, քաղաքական գործողությունների (ներառյալ դիվերսիաները, ավերածություններն ու խռովություններին աջակցելը) հետ առնչվող գաղտնի գործունեություն:

Այսպիսով, ստացվում է, որ օտարերկրյա պետությունների գործիչներին սպանելու նպատակով դավադրությունների կազմակերպումը միանգամայն օրինական գործ է, քանի որ այն իրականացվում է ազգային անվտանգության խորհրդի հրահանգին համաձայն:

Եվ իսկապես, ԿՀՎ-ի մատն անմիջականորեն խառն է մի ամբողջ շարք օտարերկրյա պետությունների ղեկավարների դեմ տեռորիստական ակտերի նախապատրաստմանն ու անցկացմանը: Այսպես, Չերչի հանձնաժողովն ապա-

ցուցել է, որ ԱՄՆ-ը սպանության նպատակով դավադրությունների է մասնակցել հինգ երկրներում՝ Կուբայում, Կոնգոյում (Զաիրում), Դոմինիկյան Հանրապետությունում, Չիլիում, Հարավային Վիետնամում: Բնական է, որ Չերչի հանձնաժողովի զեկուցագրի հրապարակումը, չնայած այն բանին, որ դրա հեղինակները մեծ ջանադրությամբ էին ընտրել արտահայտությունները և այս կամ այն հանգամանքը վկայակոչելով ամեն կերպ մեղմացրել էին ԿՀՎ-ի դեմ մեղադրանքները, ռումբի պայթյունի տպավորություն գործեց ԱՄՆ-ում:

Իր նոր տնօրենի՝ ծովակալ Տերների ղեկավարությամբ ԿՀՎ-ն ձեռնամուխ է եղել նոր կեղտոտ գործեր իրականացնելուն, առանց որևէ ռեֆորմի մասին խոսքի: Ուղղակի վտարեցին հետախուզության այն ղեկավարներին, որոնց հեղինակությունն արատավորվել էր և նրանց փոխարինեցին նորերով:

Ռազմաարդյունաբերական կոմպլեքսի այդ հարվածային ջոկատի արարքները չեն սահմանափակվում միայն լրտեսությամբ ու շանտաժով, պետական հեղաշրջումներով ու սպանություններով, որոնցով այն չարագույժ համբավ է ձեռք բերել ամբողջ աշխարհում: ԿՀՎ-ն հսկայական ազդեցություն ունի երկրի արտաքին-քաղաքական կուրսի ձևավորման գործում՝ ելնելով ամենահետադիմական ուժերի շահերից:

Դեռևս անցած նախընտրական կոմպանիայի ժամանակ Ջ. Քարտերը ի լուր ամենքի հայտարարեց, որ եթե ինքը պրեզիդենտ դառնա, ապա իր վարչակազմը, ի տարբերություն հանրապետականի, հաշվետու կլինի ժողովրդին, իսկ գաղտնի օպերացիաները կդադարեցվեն:

Դառնալով Սպիտակ տան տերը, Ջ. Քարտերը 1978 թ. սկզբին հրամայեց վերակառուցել հետախուզական գերատեսչությունը: ԿՀՎ-ն լարված կերպով սկսեց մշակել լրտեսության արդիական մեթոդներ, որոնք, ըստ մամուլի հաղորդման, բացառում են ծայրահեղությունները և, ընդհակառակը, համապատասխանում են, այսպես կոչված, վերլուծական արվեստի պահանջներին: Սակայն դիմահարդարման այդ միջոցները ևս առաջացրին Վաշինգտոնում իշխանության ղեկի մոտ գտնվողների դժգոհությունը: Առաջինը դժգոհություն արտահայտեց ազգային անվտանգության գծով պրեզիդենտի օգնական Զ. Բժեզինսկին:

Իրանում և Աֆղանստանում հեղափոխական փոփոխությունները ցանկալի պատրվակ դարձան նրանց համար, ովքեր երազում էին մինչև վերջ ազատ արձակել օրենսդրական պրոցեդուրայի բարակ թելիկներով թեթևակի կաշկանդված ԿՀՎ-ի ձեռքերը: Միանգամայն ակնհայտ է, որ իրադարձություններն այդ երկրներում ո՛չ թե պատճառ էին, այլ առիթ, որպեսզի Սպիտակ տունը վերջնականապես թողություն շնորհեր ԿՀՎ-ին, ինչպես նաև այդ պատրվակով ձախողեր միջազգային լարվածության թուլացումը, սրեր ամերիկա-սովետական հարաբերությունները, ուժեղացներ ամերիկյան իմպերիալիզմի ժանդարմական բռունցքը:

Մամուլի էջերից, հեռուստաէկրաններից ավելի հաճախ են հնչում ԿՀՎ-ի կառավարման ուժեղացման, նրան ավելի մեծ ինքնավարություն տալու կոչեր: Ճակատագրի ծաղրն է, կարծես, որ այժմ Սպիտակ տունը ստիպում է կոնգրեսին՝ վերանայելու հետախուզության գործունեությունը վերահսկելու միջոցառումները, որոնք ընդունվել են դեռևս հանրապետական վարչակարգի օրոք: Խոսքն առաջին հերթին Հյուզ-Ռայանի ուղղման մասին է, որով ԿՀՎ-ն պարտավորեցվում էր հայտնել կոնգրեսի մի շարք հանձնաժողովներին այն ծրագրվող գաղտնի օպերացիաների մասին, որոնք կարող են իրականացվել միայն պրեզիդենտի թույլտվությամբ: Այսպիսով, մեղմելով գայրույթի ալիքը, փոքր-ինչ թարմացնելով հետախուզական վարչության ճակատը, պրեզիդենտը հրաժարվեց կեղտոտ, գաղտնի օպերացիաներին վերջ տալու վերաբերյալ իր նախընտրական խոստումներից:

Չնայած Սպիտակ տան բարձրագոչ հայտարարություններին, ամերիկյան հետախուզության գաղտնի քայքայիչ օպերացիաները չդադարեցին: «1978 թվականի ապրիլյան հեղափոխության առաջին իսկ օրերից ԿՀՎ-ն սկսեց տենդորեն զենք մատակարարել հակահեղափոխական բանդաներին: Մեր կառավարության ձեռքի տակ կան մեր երկրի ներքին գործերին այդ կոպիտ մի-



ջամտության բազմաթիվ փաստեր»,— «Պրավդայի» թղթակցին այդ առթիվ ասաց Աֆղանստանի արտաքին գործերի մինիստր Շ. Մ. Դոստը:

Աֆղանստանի ներքին գործերին ԿՀՎ-ի միջամտության փաստն ընդունում են նաև իրենք՝ ամերիկացիները: Այսպես, Վաշինգտոնում հրատարակվող «Քաունտերսպայ» հանդեսի խմբագիր Կոնրադ Իգլը հայտարարել է, որ աֆղանական ազգային-հեղափոխական ուժերի դեմ շատ ամիսներ ի վեր գործում է ԿՀՎ-ի հատուկ խումբը, որի գլխավոր կայանը գտնվում է Իսլամաբադում՝ ԱՄՆ-ի դեսպանատանը:

Քաբուլում ԱՄՆ-ի դեսպան Ա. Դոբսի առևանգումն ու սպանությունը, ամերիկյան լրագրողի կարծիքով, նույնպես վաղօրոք մշակել էր ԿՀՎ-ն: Այս պատրվակով Վաշինգտոնը սանձազերծեց Աֆղանստանի հեղափոխական կառավարության դեմ ուղղված նախապես ծրագրված մի կամպանիա, որը նման էր Ս. Ալյենդեի կառավարության դեմ ուղղված կամպանիային:

ԱՄՆ-ը, գրում է Կ. Իգլը, միջամտում է Աֆղանստանի գործերին առնվազն մեկ տարի ի վեր: Այդ միջամտության նպատակն է աֆղան ժողովրդին պրոամերիկյան վարչակարգ պարտադրելը, երկիրը ՍԵՆՏՕ-ի տիպի ռազմական բլոկի մեջ ներքաշելը, նրա տերիտորիան ռազմական բազաների համար օգտագործելը:

ԿՀՎ-ի թիրախն այսօր միայն Աֆղանստանը չէ: Աֆրիկյան մայրցամաքում այսօր «աշխատում են» 900 փորձառու գործակալներ և շուրջ երկու հազար ինֆորմատորներ: Աֆրիկայում ամերիկյան հետախուզության հիմնական նպատակներից մեկը, ինչպես գրում է «Ժյոն Աֆրիկ» հանդեսը,— «պայքարն է ԱՄՆ-ին անցանկալի կառավարությունների ու ազգային-ազատագրական պայքար մղող կազմակերպությունների դեմ»:

Այսպիսով, ԿՀՎ-ի պատմությունը «սառը պատերազմի» գաղտնի պատմությունն է, որի նոր էջն այժմ գրում է դեմոկրատների վարչակազմը: Երեկ՝ Գվատեմալան, Կուբան, Չիլին, Վիետնամը, այսօր՝ Աֆղանստանը, Իրանը, աֆրիկյան երկրները, Գրենադան: Ամերիկյան իմպերիալիզմը դիմել ու դիմում է ամենազազրելի կեղտոտ մեթոդների, գաղտնի քայքայիչ օպերացիաների, որպեսզի ճնշի ժողովուրդների ազատության ու անկախության ձգտումը:

# ՎԵՐՍՏԻՆ ԿՆՈՋ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԴԵՐԻ ՄԱՍԻՆ

Ս. Գ. ԱԴՈՅԱՆ

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխությունը, որը սասանեց հին աշխարհը, պատմական ու դարակազմիկ վիթխարի պրոբլեմներ լուծեց: Արդ, սովետական հանրությունն ընթանում է կոմունիստական ֆորմացիայի հունով: Յուր օրինաչափ ընթացքում Հոկտեմբերն ընդմիշտ լուծեց նաև կնոջ ազատագրման ու իրավահավասարության կնճռոտ հանգույցը: Ավելի քան վեց տասնամյակում սովետական կանանց հոծ զանգվածն իր հոյակապ ստեղծարար ջանքերով, տղամարդկանց հետ ուս-ուսի, առաջ է սլանում զարգացած սոցիալիզմի իր լուսավոր հայրենիքում. նրանց աշխատանքային անսպառ սխրանքները հանրահայտ են:

Յավոք, մեզ մոտ տակավին կան բարավանից ետ մնացած առանձին անհատներ, որոնք այս կամ այն դժվարությունից գլխակորույս, ձգտում են կնոջը հանրային արտադրությունից վերադարձնել տնային խոհանոց:

Երկու ամիս առաջ մի նամակ ստացվեց՝ Ս. Ավետիքյան ստորագրությամբ: Նամակագիրը միտում էր նսեմացնել արյան գնով ձեռք բերված կանանց ազատությունն ու իրավահավասարությունը, ճգնում «համոզիչ» պատասխան տալ իրեն հուզող «Պե՞տք է արդյոք կանայք աշխատեն արտադրության մեջ» հարցին և պատասխանում՝ ո՛չ:

Կանխավ նշենք, որ նամակագիրը ջանում է ամենամռայլ գույներով ներկայացնել սովետական մանկապարտեզների արդի վիճակը և մայրերի «անելանելի» կացությունը: Նամակի տողերից կարելի է ենթադրել, որ նամակագիրը հոռի պատկերացում ունի այս կարևոր հարցի մասին և անտեղյակ է դրան վերաբերող գրականությանը:

Չնայած այն իրողությանը, որ նամակագրի նման «էն գլխեն իմաստուններն» աննշան թիվ են կազմում, անհրաժեշտ ենք համարում համառոտակի լուսաբանել այդ վերաբերմունքի վնասակարությունը:

Եվ այսպես, Ավետիքյանը պնդում է, թե կանանց ազատագրումը հասարակությանն «ավելի շատ վնաս, քան օգուտ տվեց»: Իսկ որևէ լուրջ ապացույց, փաստեր, համոզիչ հետևություններ ունի՞ մեր նամակագիրը: Ցավոք, նա դրա կարիքն անգամ չի զգում և պարզապես հայտարարում է, թե կանանց ազատագրողները «գուցե և ճիշտ չըմբռնելով» հարցի էությունը, նրանց «մղեցին դեպի արդյունաբերություն, դեպի աշխատանք»: Խոսքը հասարակական արտադրության մասին է: Եվ սա գրում է մի մարդ, որը պարծենում է, թե ինքը բարձրագույն կրթության դիպլոմավոր է:

Դիմենք փաստերին: Արդյունաբերական հեղաշրջումն Անգլիայում կանանց ու դեռահասների զանգվածաբար նետեց գործարանային հնոցի երախը: Տակավին 1850 թ. Անգլիայի գործարաններում աշխատել են մինչև 13 տարեկան 18.865 աղջիկներ, իսկ 1861 թ.՝ 32.667 դեռահաս աղջիկներ: Մինչդեռ 13 տարեկանից բարձր կանայք ու աղջիկներ Անգլիայում աշխատել են գործարաններում՝ 1850 թ. 260.378, իսկ 1861 թ.՝ 338.500 հոգի:



Արդ, կարծում ենք, օգտակար կլինի, որ Ս. Ավետիքյանն իմանա, թե դեռևս մեր դարասկզբին, վարձու աշխատողների մեջ կանանց թիվը կապիտալի երկրներում կազմել է. Ավստրիայում՝ 47,4, Ֆրանսիայում՝ 39,0, Դանիայում՝ 34,2, Իտալիայում՝ 32,4, Գերմանիայում՝ 30,4, Նորվեգիայում՝ 29,4, Բելգիայում՝ 29,2, Շվեյցարիայում՝ 28,8, Շվեդիայում՝ 28,3, Հունգարիայում՝ 27,6, Շոտլանդիայում՝ 25,8, Անգլիայում՝ 24,8, Իռլանդիայում՝ 24,3, Նիդեռլանդներում՝ 18,3, Իսպանիայում՝ 14,2, Ռուսաստանում՝ 8,7 տոկոս (տե՛ս Э. Сюллеро. История и социология женского труда. М., 1973, стр. 68): Ասենք և այն, որ ԱՄՆ-ում 1917 թ. աշխատել են 16.390 հազար բանվորուհիներ, որը կազմել է երկրի բոլոր աշխատողների 26,7 տոկոսը: Իսկ 1965 թ.՝ 26.108 հազար կանայք, համապատասխանաբար՝ 36 տոկոսը: Բնորոշն այն է, որ բանող կանանց տեսակարար կշիռը զարգացած կապիտալիստական երկրներում վարձու աշխատողների ընդհանուր թվի մեկ երրորդից ավելին է: Ուշագրավ է և այն, որ 1969 թ. Անգլիայում վարձու աշխատող կանանց 82, ԱՄՆ-ում՝ 50, ԳՖՀ-ում՝ 40 տոկոսը միևնույն աշխատանքների համար տղամարդկանցից պակաս աշխատավարձ են ստացել (նույն տեղը, էջ 7): Այնտեղ սա կանոն է:

Հավանաբար այս փաստերը բավական են՝ հերքելու նամակագրի այն թյուրըմբռնումը, թե կանանց արտատնային աշխատանքի նախաձեռնությունը կոմունիստներին է պատկանում: Հիշենք, որ դեռևս 1931 թ. Հռոմի Պիոս XI պապը նզովեց կանանց արտատնային աշխատանքը և նրանց ազատագրումը: Հիտլերը ևս կանանց արգելեց պետական պաշտոններ վարել և ուսուցչությամբ զբաղվել: Մինչդեռ մարքսիզմի հիմնադիրները կնոջ ներգրավումը հասարակական արտադրապրոցեսում համարել են պրոգրեսիվ երևույթ: Սակայն շեշտենք, որ դարերով կեղեքված կանայք սոսկ կրավորական և անբան արարածներ չեն եղել, ինչպես Ավետիքյանն է պատկերացնում: Նրանք էական դեր են խաղացել հասարակական պրոգրեսում, ակտիվ մասնակցել հեղափոխական իրադարձություններին:

Կապիտալիզմի վերընթացի տարիներին սկսվել ու ծավալվել է ֆեմինիստական շարժումը: Հայտնի է, որ Կ. Մարքսը 1868 թ. գրել է Կուգելմանին, թե յուրաքանչյուր ոք, ով որևէ չափով ծանոթ է պատմությանը, գիտե նաև, որ հասարակական մեծ հեղաբեկումներն անհնար են առանց կանանց ֆերմենտի:

Հայտնի է, որ եվրոպական ֆեմինիստական շարժման ակտիվ գործիչ, շվեդուհի Էլեն Քեյը զգալի ջանքեր է գործադրել տիրող ծանր վիճակից կանանց դուրս բերելու համար: Բայց ապարդյուն, որովհետև նա իր հայացքներով ու պրակտիկայով դեմ էր հեղափոխական շարժմանը:

Իսկ ի՞նչ էր քարոզում ռեֆորմիստ Քեյը: Նա խորհուրդ էր տալիս կանանց անշեղորեն կիրառել Ավետարանի սկզբունքը՝ մայրություն և միայն սերնդագործություն: Նրա հայեցակետով կնոջ գլխավոր ու միակ ֆունկցիան մանկածնությունն ու երեխաների խնամքն է՝ տնապարությամբ հանդերձ: Իսկ ամուսինն ընտանիքի գլխավորն է, հասարակական գործիչ: Քեյի համոզմամբ կնոջ և ամուսնու միջև աշխատանքի բնական բաժանումն է այս, որը, ըստ Ավետիքյանի և նրա նմանների, պետք է պահպանվի նաև սովետական ապրելակերպում:

Հայտնի է, որ կապիտալիզմը ո՛չ միայն կանանց ներգրավեց արտադրության ոլորտը, այլև տղամարդկանց հանձնեց խոհարարի, մանկավարժի, դաստիարակի, սպասավորի և «կանացի» այլ ֆունկցիաներ:

Հանդես գալով իբրև «ազատ սիրո» ջատագով՝ Էլեն Քեյն ու նրա համախոհ ֆեմինիստները փաստորեն շփոթում էին հասարակականի ու բնականի, սիրո ու սեռի հասկացությունները և ոչ մի ռեալ ելք չէին նշմարում կնոջ ազատագրման համար: Ավելին, բացահայտ տուրք տալով բուրժուական ու կրոնական աշխարհայացքին, նրանք կոչ էին անում կանանց քավելու իրենց «նախածին մեղքը», որը «գործել էր» Եվան. ընտանիքում պահպանել կրոնական դոգմաները, հրաժարվել հասարակական դեր խաղալու «վտանգավոր» պատրանքից և շարունակել հավատարիմ մնալ ամուսնուն: Այս էր ուսուցում իր հետևորդներին տիկին Քեյը: Նրա նկրտումն էր՝ կնոջ էության զարգացմամբ և ամուսնու անհատականության խրախուսմամբ «աշխարհը փրկել կործանումից»:

Նամակագիրը գրում է, թե «դարեր շարունակ կնոջ սուրբ պարտականությունն է եղել տվյալ հասարակարգի և հասարակության համար առողջ ու բարոյական սերունդ դաստիարակելը»: Չենք տարակուսում, որ նման պնդումը հօդս կցնդի, եթե հարցը քննենք պատմագիտական առումով: Չծավալվելով այս հարցում՝ ասենք միայն, որ պատմության ընթացքում եղել են շատ ինքնակոչ մարգարեներ ու գուշակներ, որոնք «կանխատեսել» են զանազան աղետներ ու փառավոր անցքեր, բայց՝ զուր:

Այժմ լսենք Լենինին՝ այն հանճարին, որը գլխավորում էր պրոլետարիատի ազատագրա-

կան շարժումը՝ համոզված, որ եթե պրոլետարիատը լիովին չազատագրի կանանց, ինքը ևս չի կարող ազատ լինել։ «Աշխարհում ոչ մի դեմոկրատական կուսակցություն ամենից առաջավոր բուրժուական հանրապետություններից և ոչ մեկում տասնյակ տարիների ընթացքում, այդ տեսակետից, չի արել հարյուրերորդ մասն անգամ այն բանի, ինչ մենք արեցինք մեր իշխանության առաջին իսկ տարում։ Մենք բառիս բուն իմաստով քարը քարի վրա չթողեցինք կնոջ անիրավահավասարության, ամուսնալուծության խոչընդոտների, դրան շրջապատող նողկալի ձևականությունների, արտամուսնական զավակները չճանաչելու, նրանց հայրերը որոնելու վերաբերյալ և մյուս այն ստոր օրենքներից, որոնց մնացորդները բազմաթիվ են բոլոր քաղաքակրթված երկրներում, ի նախատինս բուրժուազիայի և կապիտալիզմի։ Մենք հազար անգամ իրավունք ունենք հպարտանալու նրանով, ինչ արել ենք այդ բնագավառում։ Բայց որքան ավելի մաքուր մաքրեցինք հողը հին, բուրժուական օրենքների և հաստատությունների հնոտիից, այնքան ավելի պարզ դարձավ մեզ համար, որ դա միայն գետնի մաքրումն է շինության համար, բայց դեռևս ոչ բուն շինությունը։

Կինը շարունակում է մնալ տնային ստրկուհի. չնայած ազատագրական բոլոր օրենքներին, որովհետև նրան ճզմում, խեղդում, բթացնում, նվաստացնում է մանր տնային տնտեսությունը, շղթայելով նրան խոհանոցին և մանկանոցին, հափշտակելով նրա աշխատանքը մինչև վայրենության աստիճանի անարտադրողական, մանր, ջղայնացնող, բթացնող, ճնշող աշխատանքով։ Կնոջ իսկական ազատագրումը, իսկական կոմունիզմը կսկսվի միայն այնտեղ և այն ժամանակ, որտեղ և երբ կսկսվի մասսայական պայքարը (պետական իշխանությունը տիրապետող պրոլետարիատի ղեկավարությամբ) տնային այդ մանր տնտեսության դեմ, կամ, ավելի ճիշտ՝ նրա մասսայական վերակառուցումը որպես խոշոր սոցիալիստական տնտեսություն» (Երկեր, հ. 29, էջ 526)։ Այդ պայքարը,— շեշտել է Լենինը,— տևական է, որը պահանջում է և՛ հանրային տեխնիկայի, և՛ բարքերի արմատական վերափոխություն։ Բայց այդ պայքարը կավարտվի կոմունիզմի լիակատար հաղթանակով։

Հետևաբար, որպեսզի տնային ստրկությունից կինը ձերբազատվի, կոմունիստները հարցը լուծում են արմատապես, իրական հեռանկարով հանդերձ և այժմ էլ շարունակում են ստեղծել սնուցման, դաստիարակման ու կրթության այնպիսի սպասարկման ծառայություն, որի պայմաններում խոհանոցի առկայությունը տներում կդառնա ոչ հրամայական, իսկ կենցաղային պահանջմունքների հանրային մասշտաբով բավարարումը՝ հուսալի ու բարձրորակ։ Լենինը սա էր համարում մեր ընտանեկան նիստուկացի հիմնական խնդիրը։ Այս ասպարեզում, հիրավի, շատ բան է արված, բայց դեռևս կան լուրջ անելիքներ։ Չմոռանանք, սակայն, որ այստեղ պայքարը տևական է, քանզի մեզ անհրաժեշտ է հին «բարքերի արմատական վերափոխություն»։

Ավետիքյանը գտնում է, որ կնոջ արդի վիճակը միանգամայն անբավարար է։ Նա գրում է, թե «ստիպված մի բաժակ ջրի մեջ փոթորիկ ենք բարձրացնում, արհեստականորեն արդարացնելու համար մեր անբնական վիճակը» (ընդգծումը մերն է— Ա. Ա.)։

Ըստ ՄԱԿ-ի մանկական ֆոնդի տվյալների, ոչ սոցիալիստական երկրներում հարյուր միլիոնավոր մանուկներ գտնվում են ամենաթշվառ վիճակում, տառապում թերսնումից, հարկադրված են վարձվել ծանրագույն աշխատանքի։ Պանամերիկյան առողջապահական բյուրոյի տվյալներով, վերջին տասը տարում Լատինական Ամերիկայի երկրներում շուրջ 10 միլիոն մանուկներ մահացել են բժշկական օգնությունից զուրկ լինելու պատճառով։ Այժմ աշխարհում 350 միլիոն դպրոցահասակ երեխաներ չունեն դպրոց հաճախելու հնարավորություն։ Կնոջ տնային հանգստի համար շատ բան է արված ՍՍՀՄ-ում՝ սկսած հարմարավետ կառուցումներից և վերջացրած նորագույն կենցաղսպասարկման մեքենաներով և բազմազան օժանդակ հարմարանքներով ու պարագաներով։ Այլ բան է, որ տակավին շատ տղամարդ՝կ ձգտում են տնային «ստրկուհուն» չկորցնել։

Մոր ու մանկան առողջության պահպանման, աճող սերնդի դաստիարակության կազմակերպման գործում մեր հասումները ակնբախ են։ Բայց, ինչպես երևում է, ոմանք անբնական են համարում այսօրվա վիճակը։ Կինն իրավահավասար է տղամարդուն, ակտիվ մասնակցում է հասարակական կյանքի բոլոր մարզերում։ Նրանք վախենում են, թե «կանայք տղամարդկանց աշխատանքը կատարելու հետևանքով անհարկի ուժեղանում են հոգեպես և ֆիզիկապես, ազատվում են ընտանիքի գլուխ հանդիսացող տղամարդուց ունեցած ֆինանսական կախվածությունից, երբեմն նրանից շատ են վաստակում, որն էլ հանգեցնում է ոչ ցանկալի հետևանքների»։ Վաղուց իր դարն ապրած հայրիշխանական ընտանիքի



բարք ու վարքի, կարգ ու սարքի մոլի ջատագովի մտքեր են սրանք։ Երբ տղամարդն է ուժեղանում հոգեպես ու ֆիզիկապես, այդ համարվում է աշխատանքի բաժանման բնական հետևանք և օգտակար։ Բայց երբ կանայք են լավ վաստակում, հոգով ու մարմնով ուժեղանում, դա ողբերգության պես մի իրողություն է, մանավանդ, երբ տղամարդը կորցնում է ընտանիքի գլխավորի ու նյութական մատակարարի մենաշնորհը։ Այս կերպ մտածողների կարծիքով կանանց վերընթացը նույնիսկ ամուսնալուծությունների «պատճառներից մեկն» է։ Նրանք չեն կարողանում հաշտվել այն փաստի հետ, որ ամուսնաընտանեկան կյանքում կատարված սոցիալ-հոգեբանական ու տնտեսական, իրավական հարաբերությունները կոչված են առավել բարձրացնելու սովետական ընտանիքի մակարդակը, նոր լիցք հաղորդելու սովետական ապրելակերպին։ Ներընտանեկան հարաբերությունների վերաբերյալ նման պատկերացումները հակասում են ընտանիքի թե՛ անցյալի, թե՛ այսօրվա վիճակին։ Ընտանիքում խախտվում են բոլոր բնական հարաբերությունները,— կարդում ենք նամակում,— երբեմն իշխող են դառնում կանայք, տղամարդիկ կորցնում են իրենց դերը, դադարելով իրենց տղաների համար ասպետներ թվալուց։

Բայց ահա թե ինչ է գրել Էնգելսը. «Մայրական իրավունքի տապալումը կանանցի սեռի համաշխարհային-պատմական պարտությունն էր։ Տղամարդն իր ձեռքն առավ նաև տան ղեկավարությունը, իսկ կինը կորցրեց իր պատվավոր դիրքը, ստրկացվեց, դարձավ նրա ցանկությունների հլու կատարողը, երեխա ծնելու մի հասարակ գործիք» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 3, «Հայաստան» հրատ., 1978, էջ 301)։ Դժվար չէ տեսնել, որ դարեր շարունակ ընտանիքն այնպես սրբապատկեր չի եղել, ինչպես փորձում են ներկայացնել հին ապրելակերպի պաշտպանները։ Նրանք ցավում են, որ աղջիկները համարյա ուժեղ ու հավասար են տղաներին, որի հետևանքով տղաները չունեն ասպետական վարքագիծ։ Հայրիշխանական վիրավորված ինքնասիրության արտահայտություն է այս։ Տղաները զուրկ են ասպետականությունից, որովհետև աղջիկներն են ուժեղացել ու հավասար իրավունքներ ունեն։ Կա՞ որևէ նշույլ և կապ իրականության հետ։ Իհարկե, ո՛չ։ Ասելով, թե մեզ պետք են շատ ուժեղ, ազնիվ տղամարդիկ, որ կարող են գեղեցկացնել մեր կյանքը, նրանք գրում են. կանանց սոփիզողաբար մղել ենք գործարան, փաբրիկա, շինարարություն և այդ բացը ծածկելու համար կառուցել բազմահազար մանկապարտեզներ ու մանկամսուրներ, մայրերին զրկելով իրենց բնական, երեխաներին փայփայելու ու դաստիարակելու իրավունքից։

Նորի զգացումը կորցրած, անցյալի փոշին չթոթափած մարդը միայն կփորձի նսեմացնել մոր և մանկան պաշտպանության ոլորտում ՍՍՀՄ-ի վիթխարի հասումները։ Մեզ մոտ գործում են 125 հազար մանկապարտեզներ ու մանկամսուրներ, ուր դաստիարակվում են 13 միլիոնից ավելի մանուկներ։ Հնգամյակի վերջում կավելանան նախադպրոցական նոր հիմնարկություններ՝ 2,5—2,8 միլիոն տեղով։ Երկրի առողջարաններում բուժվում և հանգստանում են 1, 5 միլիոն մանուկներ ու դեռահասներ։ Մոր և մանկան հանգստի համար գործում են մեծաթիվ սանատորիաներ ու պանսիոնատներ՝ 7.3 հազար տեղով, 300 հանգստյան տներ ու պանսիոնատներ՝ 107 հազար տեղով։ 1974—1978 թթ. կառուցվել են 1075 պիոներական ճամբարներ։ Միայն անցյալ տարի 48 հազար տարբեր ճամբարներում 12 միլիոն մանուկներ ու դեռահասներ հանգստացել են բնության գեղատեսիլ վայրերում, մեկ միլիոն ծնողներ ու մանուկներ հանգստացել են անվճար ու զեղչով տրամադրվող տուրիստական ուղեգրերով։ Անցած 15 տարիներում մանկական հիվանդանոցային մահճակալների թիվն ավելացել է 1,6 անգամ, հասնելով 550 հազարի։ Իսկ հղի և ծննդաբերող կանանց, գինեկոլոգիական հիվանդներին սպասարկող մահճակալների թիվը 1962 թ. 69 հազարից 1977 թ. հասել է 590 հազարի։

Աշխարհի և ոչ մի երկրում մոր ու մանկան նկատմամբ չկա այնքան հոգատարություն ու խնամք, որքան ՍՍՀՄ-ում։ Այո՛, այս բնագավառում հսկայական առաջընթաց ունենք։ Անշուշտ, այս չի նշանակում, թե մեր հսկայածավալ երկրի բոլոր վայրերում չկան բյուրոկրատական, ձևամոլական և այլ բնույթի օրինախախտումներ, լավ որոշումների վատ կատարումներ։ Ուստի դեռևս շատ բան է արվելու մոր ու մանկան երջանկության համար։

Ոչ ավելի, ոչ պակաս, առաջարկվում է կանանց վերադարձնել տնային «դրախտը», իսկ «մոր և մանկան պահպանության նպատակով ծախսվող ահռելի գումարը տալ ամուսիններին, որպեսզի կանայք կարողանան նորմալ սնուցել ու դաստիարակել մանուկներին»։ Լավ է, որ խոստովանում են, թե մեր երկրում ահռելի գումարներ են ծախսվում մոր ու մանկան պահպանության համար, լավ է, որ տեսնում են կառուցված բազմահազար մանկապարտեզները ու մանկամսուրները։ Բայց առաջարկում են... վերացնել դրանք։

Կանանց ազատագրական պայքարը վարող կոմունիստական կուսակցությունը դավանել ու

# ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿՅԱՆՔԻ ԽՈՒԹԵՐԸ

ԱԴԱ ԲԱՍԿԻՆԱ

ՎԱՂՈՒՑ ԽՈՐՀՈՒՄ ԷԻ գրել այդ ընտանիքի մասին։ Բայց ամեն անգամ գրիչ վերցնելիս չէի իմանում՝ ինչ առիթով այդ անել։ Ինչո՞ւ հատկապես ա՛յդ ընտանիքի մասին, ուր առանձնապես աչքի ընկնող ոչինչ չկար. ո՛չ ծնողների մանկավարժական ակնբախ ունակություն, ո՛չ երեխաների արտակարգ հաջողություններ։ Ո՛չ հերոսներ կան այս ընտանիքում, ո՛չ էլ ձախողված ճակատագրով մարդիկ։ Միլիոնավոր այդպիսի ընտանիքներ կան։

Ինչևէ... չէ՛ որ ինչ-որ բան ստիպել է ինձ ծոցատետրս լցնել մանրամասներով, ժամերով զրուցել ընտանիքի անդամների հետ՝ փորձելով ուսումնասիրել, հասկանալ... Ի՞նչը հասկանալ։ Ընտանիքի ոգին։ Ջերմության ու բարության այն մթնոլորտը, որ ամեն անգամ զգում ես՝ ոտք դնելով այդ տունը։ Վերջերս ես, վերջապես, հասկացա. չէ՛ որ այդ չորս հոգին էլ հենց կազմում են այդ երջանիկ ընտանիքը։

Այնպես պատահեց, որ վերջին անգամ, երբ եղա Երևանում, չհանդիպեցի բարեկամներիս և չգիտեմ, թե ինչ փոփոխություններ են տեղի ունեցել նրանց կյանքում այն երկու տարիներին, երբ մենք չենք տեսել իրար։ Եվ մասամբ այն պատճառով, որ չեմ կամենում շրջանցել այդ ընտանիքի կյանքում տեղ գտած բախումները, կփոխեմ նրանց անունները։ Մնացածը կպատմեմ այնպես, ինչպես եղել է։

## ԱԿՈՒՆՔԻ ՄՈՏ

Մի անգամ պոլիտեխնիկական ինստիտուտի երեկույթում, մի ընկերախմբում հայտնվեցին Նորան ու Սուրենը։ Եվ սիրեցին իրար։ Տարիներ անց Սուրենը պատմում է.

— Ես ուզում էի ստուգել միայն մի բան. իրո՞ք այդ սեր է։ Որքան էլ տարօրինակ է, ստուգել ոչ թե Նորայինն, նրան ես անմիջապես հավատացի, այլ՝ ինձ։ Արդյոք այդ կիրք կամ պատահական հրապուրանք չէ՞։ Կա՞ մեզ մոտ հոգիների այն դաշինքը, հոգևոր այն կապը, որն ամենակարևորն է ամուսնության մեջ։ Որքան էլ տարօրինակ է այդ հիշել, բայց ինձ ամենից շատ շփոթեցնում էր հենց մեր զգացմունքների բուռն լինելը։ Եվ ես, տեսնելով՝ ինչպես է Նորային զայրացնում իմ համառությունը, այնուամենայնիվ, հետաձգում ու հետաձգում էի։ Ինձ էի ստուգում։ Մի անգամ մենք երեք օրով անջատվեցինք։ Եվ հանկարծ ես այնպե՜ս թախծեցի. այնպե՜ս ցավագին էր իմ թախիծը։ Եվ անչափ ուրախացա։ Այո՛, ես սիրում եմ։ Ասես մինչև օրս էլ Նորան չի կարողանում մոռանալ վճռական ակորդին նախորդած այդ ձգձգված դադարը։ Ամեն հարմար առիթով նա խայթում է. «Քո անվճռականությամբ քիչ էր մնում ինձ ձեռքից բաց թողնեիր։ Քիչ էր մնում ես թողնեի քեզ»։

Իսկ ինձ Նորան գաղտնի պատմեց.

— Այն ժամանակ նրա վարքագիծն ինձ դուր էր գալիս։ Եվ հատկապես այդ հաստատակամությունը, ծանրակշռությունը։ Դուր էր գալիս նույնիսկ այն, որ չէր շտապում առաջարկություն անել։ Չնայած անհամբերությունից քիչ էր մնում խենթանայի։ Բայց և երբ ես լսեցի երկար սպասված խոսքերը՝ «Դու... մենք... մենք միշտ միասին կլինե՞նք»— հասկացա՝ այդ հաստատ է և մինչև կյանքներիս վերջը։

Բայց մինչև հարսանիքը մի տարի էլ անցավ։ Նրանք որոշեցին. նախ պետք է ուսումն ավարտել։ Մտածել բնակարանի, կյանքը կարգավորելու միջոցների մասին։ Երկուսն էլ մեծ պատասխանատվություն էին զգում ստեղծվելիք ընտանիքի նկատմամբ։

Պատահական չէ, որ «նախերգանքի» մասին այսքան երկար խոսեցի։ Ինձ թվում է հենց այստեղ թաքնված է ինչ-որ կարևոր բան, այն, որով պայմանավորված են դաշինքի ամրությունն ու դրա երջանկաբերությունը։

Սեր և պատասխանատվություն։ Որքա՜ն հաճախ են երիտասարդները սիրո տեղ ընդունում սոսկ հրապուրանքը, կիրքը։ Որքա՜ն հիասթափված, հոգեպես սնանկ են զգում իրենց մարդիկ, երբ պոռթկումը մարում է։ Այժմ մոդա է դարձել ասել, թե, իբր, զգացմունքն ամուսնության պարտադիր պայմանը չէ։ Իբրև թե նույնիսկ ստուգված է, որ ոչ թե սիրո, այլ ողջամիտ վճռի վրա հիմնված ընտանիքը երբեմն նույնիսկ ավելի հաստատուն է։ Գուցե և նույնիսկ ավելի հաստատուն։ Բայց արդյո՞ք երջանիկ։

## ՓՈՐՁԱՔԱՐԵՐԸ

Երկուսն էլ աշխատանքի նշանակվեցին Երևանում։ Դրամը բավականացնում էր ամենօրյա ծախսերին։ Բայց սենյակ վարձելու և, մանավանդ, կոոպերատիվ գրվելու մասին խոսք լինել չէր կարող։ Երկուսին էլ մեծացրել էին մայրերը. հայրերը զոհվել էին ռազմաճակատում։ Երկուսն էլ ունեին մեկական քույր։ Այնպես որ ծնողների օգնության վրա հույս դնել չէր լինի։

Սուրենի մայրն այդ ժամանակ մենակ էր ապրում։ Նրա սենյակը կիսեցին և այդտեղ էլ տեղավորվեցին։ Դրախտ՝ հյուղակո՞ւմ։ Թերևս հյուղակում նույնիսկ ավելի լավ է։ Այնտեղ միայն երկուսով են։ Իսկ այստեղ՝ միշտ երեքով։ Մայրը ջանում է բարեհամբույր լինել։ Նրան թվում է, որ ինքը թաքցնում է իր բոլոր հանդիմանություններն ու կասկածները։ Բայց նորապսակները հիվանդագին են ընդունում ամեն մի դիտողություն, ամենաանմեղն իսկ. «Սուրե՛ն, հո չե՞ս մոռացել թաշկինակ վերցնել»,— հարցնում է մայրը, իսկ Նորան հոնքերն է կիտում. մի՞թե սկեսուրը չի հասկանում, որ ինքն առանց մաքուր թաշկինակի նրան դուրս չէր թողնի։ Երեկոյան ջահելները կինո կգնան, հապա մայրի՞կը։ Հրավիրե՞ն, բայց չէ որ նրանք ցանկանում են երկուսով մնալ։ Չհրավիրե՞ն՝ մայրիկը կվիրավորվի։ Ցանկանում ես հյուրեր հրավիրել։ Մայրիկը, իհարկե, դեմ չէ։ Բայց ահա Նորայի ընկերուհին սկսում է ծխել։ Մայրիկը ցուցադրաբար դուրս է գալիս սենյակից...

Մի անգամ Սուրենը հայտնեց. սկսվում է Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի շինարարությունը։ Հրավիրվում են մասնագետներ։ Այդ, իրոք, խոշոր կառույց է, աշխատանքը հետաքրքրական կլինի. չէ՛ որ շինարար ինժեներներ են իրենք։ Անշուշտ, բնակարան ևս կտանան։ Պետք է մտածել այս մասին։ Ի՞նչ անել։ «Իհարկե, գնում ենք», մեկեն վճռեց Նորան։ Նա միշտ էլ ամեն ինչ վճռում էր անվարան, մեկեն։ Սուրենին հիացնում էր բնավորության այդ գիծը և փոքր-ինչ վախեցնում։ Չէ՛ որ Նորան ծանոթ չէր նորակառույցի տհաճ պայմաններին։ Նա վարժված էր քաղաքի լավ կազմակերպված կենցաղին։ Կդիմանա՞։

Պայմանները շատ ավելի վատ էին, քան ինքը ենթադրում էր։ Ցոգից ոչ մի տեղ չես թաքնվի։ Գիշերը պետք է զգույշ լինել, կարող է խայթել օձը կամ մորմը։ Եվ, իհարկե, ոչ ջրմուղ, ո՛չ կոյուղի։ Իսկ թատրոնի, համերգասրահների մասին արդեն մոռացել էին։ Ո՛չ, Նորան չէր մոռացել, կարոտում էր լավ երաժշտության։ Բայց ոչինչ չէր ափսոսում. շինարարության բուռն թափ, ինքնուրույն աշխատանք, սեր՝ երկուսով, առանձին բնակարան։ Նա երջանիկ էր։

Հետո սկսեցին փոքրիկի սպասել։ Սուրենը քնքշանքով հարցնում էր. «Նո՛րա, պետք չէ՞, որ դու քաղաք գնաս։ Շինարարությունը հղի կնոջ համար լավագույն տեղը չէ»։ Նորան փայլում էր իր ջինջ, ճերմակատամ ժպիտով, որն այնպես սիրում էր Սուրենը, և ծիծաղում. «Ի՞նչ է, ջահել ինժեներ աղջիկնե՞ր են եկել։ Կինդ խանգարո՞ւմ է»։ Նա մռայլվում էր. չէր ընդունում ընտանեկան հավատարմությունը մթագնող ոչ մի կատակ ու անեկդոտ։ Երբ պատմում էին դրանք տղամարդկանց շրջանում, նա ձևացնում էր, թե չի լսում։ «Հիմարություններ մի՛ ասիր», բայց և Նորայի մեկնելու մասին որոշ ժամանակ չխոսեց։

Պայծառ, շոգ օր էր։ Առավոտից Նորան մեկնել էր շրջկենտրոն։ Ինչ-ինչ պատճառներով աղյուսը ժամանակին չէին բերել։ Նորան մեկնեց իմանալու, թե ինչ է եղել։ Սուրենը հուզվում էր. «Այսպիսի շոգին, ջրափոսերով։ Ինչո՞ւ անպայման դու պետք է մեկնես»։ Եվ անընդհատ ասում էր վարորդին. «Զգո՛ւյշ, ի սեր աստծո, զգո՛ւյշ»։

Ճաշին նա չվերադարձավ։ «Նման սարսափ ես այլևս երբեք չեմ զգացել»։ Պատմում էր ինձ Սուրենը։ Երեկոյան, երբ սարսափից նա քարացել էր, Նորան եկավ։ Ծիծաղելով, նրան համբուրելով, քաշքշելով, պատմում էր, որ իրենց մեքենան շրջվե՜ց։ Երկար նրանք սպասեցին պատահական մեքենայի։ Բայց, տեսնո՞ւմ ես, ամեն ինչ անցավ։ Բոլորը ողջ առողջ են։ Նորան անընդհատ ծիծաղո՜ւմ էր, ծիծաղում։ Նա դեռևս չգիտեր, թե երբեմն որքա՜ն խաբուսիկ է այն, ինչ արդեն «անցած» է թվում։

Չնայած ամուսնու համառ խնդրանքներին, նա այդպես էլ չմեկնեց։ «Ինչո՞ւ,— Նորան փորձում է հիշել, թե այդ ժամանակ ինչպիսին էր ինքը.— մի քիչ թեթևամտությունից, համենայնդեպս, այդպես էր մտածում Սուրենը, և ես

տեղ նա տեսել է... Դե, իհարկե, հեռուստացույցով հաղորդում էին ռեպորտաժ մանկական մեծ լողավազանից, և այնտեղ կային ամենևին էլ ոչ ջահել կանայք, նրանք նույնիսկ ծիծաղում էին մի գեր կնոջ վրա:

«Մոսկվայում գուցե այդ ընդունված է, իսկ Հայաստանում՝ ոչ: Այդ պետք է հաշվի առնել: Ամուսնացած կինը պետք է մտածի իր հեղինակության մասին: Թե չէ արդեն իմ աշխատավայրում էլ ասացին ինձ, որ տեսել են քեզ լողավազանում»: Նա խոսում էր հանգիստ, ներողամտաբար: Եվ իր համար շատ անակնկալ էր այդ պոռթկումը: «Ի՞նչ հիմարություն,— բղավեց Նորան,— ի՞նչ հիմար դատողություններ են՝ ընդունված է, ընդունված չէ: Եվ ինչպե՞ս դու կարողացար առաջարկել ինձ հրաժարվել բավականությունից միայն նրա համար, որ ինչ-որ հիմարի այդ դուր չի եկել: Ի դեպ, իսկ ի՞նքն ինչ գործ ուներ լողավազանում»: «Տանյան մենակ չէր, այլ իր դպրոցական աղջկա հետ: Եվ նա բոլորովին էլ հիմար չէ, այլ ողջախոհ կին է: Հուսով եմ, չես ժխտի, որ ողջախոհությունն ավելի լավ է, քան անխոհեմությունը»: Նորան քարացավ: Նրան ցնցեց հենց նոր լսածը: Ի՞նչ գործ ունի այստեղ անխոհեմությունը: Չէ՞ որ ինքը հոգնել է. մանկան հիվանդությունները, լարվածությունն աշխատավայրում՝ ուշանալու, սխալների պատճառով (այնպե՞ս դժվար է խուսափել դրանցից մանկան մահճակալի մոտ անցկացրած անքուն գիշերներից հետո), ծանր է նրա համար: Բայց այդ ծանրությունը նա չի զգել Սուրենի ուսերին: Ու հիմա էլ ցանկանում է թոթափել այն: Եվ ելքը գտել է՝ լողավազանը: Իսկ Սուրենը չի հասկանում: Նրա համար հիմար մարդկանց կարծիքն ավելի կարևոր է...

«Եթե Նորան այդ ամենը պարզ, տրամաբանված ասեր ինձ այն ժամանակ, ես թերևս կհաշտվեի այդ անիծյալ լողավազանի հետ», ասում է ինձ Սուրենը: Բայց նա հպարտորեն շրջեց դեմքը, պատասխանի իսկ չարժանացրեց ինձ: Եվ գնաց՝ թափահարելով պոլիէթիլենե պայուսակը, որի մեջ լողազգեստն էր:

Այստեղ հենց նրանք երկուսն էլ պետք է կանգ առնեին: Նայեին իրար աչքերի, ժպտային: Հարթեին նման աննշան բախումը: Բայց...

Նորան մի փոքր խոցված էր զգում: Վիրավորանքը թույլ չէր տալիս փափկել, անողոք էր դարձել: Այդ անողոքությունը, իր հերթին, զայրացնում էր ամուսնուն: Բացի այդ, Նորան ոչ թե այլևս լողավազան չէր գնում, հակառակը, ավելի կանոնավոր էր գնում: Ամեն ինչ ասես ծռվել էր: Բորշչը, որ Նորան արդեն սովորել էր մայրիկից լավ պատրաստել, հիմա մերթ աղի էր, մերթ անալի: Սուրենի ամեն մի ծխախոտը զայրացնում էր կնոջը: Նա հազում է, գիտե, որ ծխելը պետք է թողնել: Ինչպիսի՜ թուլակամություն: Ժամանակն է աղջկան մանկապարտեզ տալու, ու վիճում են. մեկը՝ հա, մեկը՝ չէ: «Դու երեխային երես ես տալիս»: «Իսկ դու ոչ մի ուշադրություն չես դարձնում նրա վրա»: Եվ այսպես՝ անընդհատ վեճեր: Գրգռված վիճակ: Խորթացում: Համատեղ կյանքն անտանելի էր դառնում:

Մի անգամ Սուրենը հյուր գնաց մայրիկին: Նա արդեն ապրում էր քրոջ հետ: Մայրը հառաչեց՝ տեսնելով որդու խոնարհած հայացքը, կորացած մեջքը: Ի՞նչ է պատահել: Լռելն արդեն շատ էր դժվար, և նա ակամա սկսեց պատմել: Տանն անտանելի է: Նորան գոռոզամիտ է դարձել, իրեն հաշվի չի առնում: Անում է միայն այն, ինչ ինքը անհրաժեշտ է համարում: Մայրը ցավակցում է, տառապում սիրելի որդու համար, որին մեծ զոհողություններով մեծացրել, ուսման է տվել, սովորեցրել, պատրաստել է երջանկության... Իսկ Սուրենն այդ ընթացքում հասել էր իրենց բախման ակունքին՝ լողավազանին: Եվ այստեղ մայրը մեկեն կրկնեց հարցը. «Իսկ ինչո՞ւ նրան թույլ չտվեցիր այնտեղ գնալ»: «Թույլ չես տա նրան, ինչպե՞ս չէ, իր կամակոր բնավորությա՞մբ: Ես խնդրեցի միայն»: «Բայց ինչո՞ւ»: «Որովհետև անվայել է: Աշխատավայրում էլ ինձ ասացին՝ այդ ի՞նչ է, ձեր կինը ջահել աղջկա պես լողավազաններն է վազում: Տանը գո՞րծ չունի, ինչ է»: Մի քանի վայրկյան մայրը զարմանքով նայում էր որդուն:

— Աստվա՜ծ իմ,— վերջապես բացականչեց նա,— բոլորովին չգիտեի, որ իմ որդին այսքան հետադեմ է: Չէ՞ որ դու դիպլոմավոր մասնագետ ես, ինտելիգենտ մարդ: Ինչպե՞ս չես ամաչում:

Բայց Սուրենը չէր լսում: Միևնույն է, նա համոզված էր, որ մայրը կուրախանա այս խզման համար: «Մայրի՛կ, ախր, ես գիտեմ, Նորային դու չես սիրում»: Բայց մայրը թափահարեց ձեռքերը. «Ո՞վ է քեզ ասել: Ինձ համար հեշտ չէ Նորայի հետ: Նա ինքնուրույն կին է, վճռական, անկախ: Բայց ես խորապես հարգում եմ նրան: Արժանավոր, ես կասեի, նույնիսկ սքանչելի մարդ է նա»: Սուրենը կանգնել էր զարմացած: «Գնա՛, գնա՛ նրա մոտ,— և տալիս էր գլխարկն ու շարֆը:— Չէ՞ որ Նորան տառապում է այնտեղ: Հպարտությունն էլ վիրավորված է: Եվ նա սպասում է միայն, որ դու կկատարես առաջին քայլը...»:

— Նո՛րա,— ասաց նա դեռ շեմից, չզգեստափոխվելով,— ես ուզում էի քեզ հարցնել. դու ինձ դեռ գոնե մի քիչ սիրո՞ւմ ես...

Ինն ամիս անց նրանք տղա ունեցան:



## ԵՐԵԽԱՆԵՐԸ

Եվ այսպես, այս ընտանիքն ունի երկու երեխա՝ Աստղիկը և Ռուբենը: Տարբերությունը երեք տարվա է: Դեմքով իրար շատ նման են: Բայց քույր և եղբոր նմանությունը սրանով սպառվում է:

Աստղիկը աշխույժ, սրամիտ, շուտ արձագանքող աղջիկ է: Նրա մարդամոտության շնորհիվ է, որ տանը միշտ շատ ջահելներ կան:

Ռուբենը քրոջ հակապատկերն է: Դանդաղաշարժ, մի քիչ ծույլ: Դժվար է նրա հետ կռվել. նա զինաթափ է անում մարդուն իր բարությամբ, անկեղծ ժպիտով: Նորան, որքան էլ այդ տարօրինակ է, համբերությամբ էր տանում տղայի ծանրաշարժությունը: Իսկ Սուրենին զայրացնում էր այդ: Բարկանում էր Ռուբենի վրա, քարոզ կարդում: Իսկ տղան, լսելով քարոզը, փաթաթվում է հոր պարանոցին... դե՛, արի ու բարկացիր:

Աստղիկը վատ չի կարում, բայց ամեն առիթով խույս է տալիս տնային գործերից: Հենց որ ազատ ժամանակ է գտնում, սկսում է գիրք կարդալ կամ դաշնամուր նվագել: Ռուբենին հաց մի տա, միայն թե թող տնտեսությամբ զբաղվի: Ընդ որում, նրան բավականություն են պատճառում տնային բոլոր գործերը՝ և՛ կանացի, և՛ տղամարդու: Նա կարողանում է շերտավոր տորթ պատրաստել՝ եփովի կրեմով: Կարող է նորոգել էլեկտրալարը, վերանորոգել կահույքը, գրադարակներ պատրաստել: Միայն թե գրասեղանի առաջ չնստի:

Երբ Աստղիկը սովորում էր դպրոցում, ծնողներին անհանգստացնում էր բոլոր առարկաներից անպայման հինգ ստանալու նրա բուռն ձգտումը: Հեշտությամբ էր սովորում: Բայց եթե օրագրում «4» երևար, կարող էր ողջ երեկո լաց լինել: Ծնողներին դուր չէր գալիս ուսման նկատմամբ նրա այս վերաբերմունքը: Նրանք կցանկանային, որ աղջկա ուսումնատենչությունն ավելի անշահախնդիր լիներ: Ռուբենի մոտ ամեն ինչ այլ է: Նա սովորում էր մեծ դժվարությամբ:

Երեխաները... ուրախություն են, հոգսեր... Հայրը մինչև օրս չի կարողանում մոռանալ, թե ծննդատնից ինչպես բերեց երեքշաբաթական Աստղիկին: «Այնքա՜ն լավիկն էր նա: Ոչ թե կարմրաթշիկ, այլ սպիտա՛կ, սպիտա՛կ, ալ կարմիր շրթունքներով»: Նա անմիջապես ըզգաց, որ ամբողջովին, անմնացորդ նվիրված է այդ էակին: Գիշերը չքնեց, նրան թվում էր, թե աղջիկը կշրջվի փորիկի վրա, կխեղդվի: «Հոր թուլությունն է», այդպես էին ասում տանը Աստղիկի մասին: Եվ ո՛չ միայն հոր. երես էին տալիս նրան բոլորը: Գուրգուրում, խնամում, զուգում-զարդարում էին: Թվում էր, կշփացնեն նրան դրանով: Սակայն Աստղիկը շատ կազմակերպված երեխա դարձավ. և՛ հանրակրթական, և՛ երաժշտական դպրոցներում չէին կարող չպարծենալ:

Երբ ծնվեց Ռուբենը, ծնողական բուռն ըզգացմունքները մի փոքր մեղմացել էին: Տատիկն առանձին էր ապրում: Նորան ու Սուրենը մտածելով, որ երես են տվել աղջկան, Ռուբենի հետ խիստ էին: Եվ ի՞նչ: Ուսման մեջ՝ միշտ անախորժություններ: Ճիշտ է, որդին միշտ լավ հարաբերությունների մեջ էր մարդկանց հետ, ծնողների հետ նույնպես շատ պարզ էր, անմիջական:

Աստղիկի մոտ ամեն ինչ բարդ էր, խճճված: Հինգերորդ դասարանում հանկարծ մի անգամ տուն եկավ դասղեկը. «Ինչո՞ւ աղջիկը դպրոց չի գալիս»: Ինչպե՞ս թե. ամեն առավոտ նա վերցնում է պայուսակը, հագնում դպրոցական համազգեստը և գնում դպրոց:

Իսկ հետո, ինչպես պարզվեց, թափառում է փողոցներում, գնում կինո: Ծնողները լրջորեն վախեցան: Նույնիսկ ոչ թե նրա համար, որ դասերից բացակայում է, այլ նրա, որ խաբում է: Պարզվեց՝ Աստղիկը վիճել է դասղեկի հետ, ասել է նրան այն, ինչ մտածում է...

Ծնողները, բնականաբար, պաշտպանեցին ուսուցչին: Աստղիկն սկսեց զուսպ վարվել: Սակայն այդ բախումն ավելի լուրջ հետևանքներ ունեցավ: Աղջիկը, որ մանկուց երազում էր ուսուցչուհի դառնալ, վճռականապես հրաժարվեց այդ մտքից:

Միշտ չէ, որ ծնողներին հաջողվում է լավ հասկանալ զավակներին: Ամեն ինչ չէ, որ նրանց դուր է գալիս: Բայց մի սկզբունք նրանք պահպանում են. ջանում են երեխաների հետ միշտ բարեկամ մնալ:

## ԱՀԱ ԵՎ ՀԱՆԳԻՍՏԸ

— Երբ ամուսնացա, շատ էի ուզում լավ տնտեսուհի լինել: Եվ բոլոր ազատ ժամերս անց էի կացնում գազօջախի, կարի մեքենայի մոտ, կամ լվացք էի անում: Եվ մի անգամ հասկացա, որ այդպես չի լինի:

Այսպես պատահեց: Նորան սպիտակեղենն էր հարթուկում: Սուրենը լրագիր էր կարդում: Ինչ-որ հաղորդագրություն նրան զարմացրեց: Նա գնաց խոհանոց և այդ մասին պատմեց կնոջը: Վերջինիս վրա այդ լուրը ոչ մի տպավորություն չգործեց: Սուրենը վիրավորված փնթփնթաց: Ի՞նչ են հասկանում դրանից կանայք: Նա զանգահարեց ընկերոջը, պարզվեց այնտեղ ուրիշներն էլ կային, և հրավիրեցին իրենց մոտ: Նա հարցրեց Նորային՝ դեմ չէ՞, որ ինքը գնա: Ո՞չ, ինչո՞ւ, թո՛ղ գնա: Բայց

երբ Սուրենը հասավ աստիճաններին, բացականչեց՝ սպասի՜ր: Անջատեց հարթուկը, հանեց խալաթը, հագավ շրջազգեստը և նրա հետ դուրս եկավ: «Այդ ժամանակ ես հասկացա, որ դառնում եմ թխսկան, տաղտկալի կին: Եվ որոշեցի՝ ո՛չ, այդպես չպետք է լինի: Եվ հետո ես չէի ուզում, որ ամուսինս վարժվի ազատ ժամերն առանց ինձ անցկացնելուն: Ընկերների հետ լինել՝ ինձ հետ միասին»:

Այդ երեկոյից Նորան, ընդհանրապես, վերակարգավորեց ընտանեկան կենցաղը: Տնտեսական բոլոր գործերը բաշխված էին սկզբում իրենց երկուսի միջև, իսկ երբ երեխաները մեծացան, նրանք էլ որոշ գործեր ստանձնեցին: Ամռանն ամբողջ ընտանիքը ձմեռվա համար բանջարեղենի, մրգի պահածոներ է պատրաստում: Մի քանի աշխատանքով լի օրերն զգալիորեն թեթևացնում են ձմեռվա հոգսերը: Բացում ես բոզբաշի կամ կանաչ լոբու, տաքդեղի, պոմիդորի բանկան, եփում մի կտոր միս, և ճաշը պատրաստ է:

Ընդհանրապես, կենցաղում աշխատանքի գիտական կազմակերպմամբ Նորան վաղուց է զբաղվել. որոնել է տնտեսավարման առավել ռացիոնալ միջոցներ: Հիմա ամեն ինչ բաշխված, հաշվարկված է ըստ ժամերի: Ամիսը մեկ անգամ լվացք է անում: Շաբաթ օրերը խմորեղեն է պատրաստում, բայց ինքը սակավադեպ է ճաշակում. «Ահա ինձ տանջողը,— և նա ոտքով հրեց կշեռքը,— դրա պատճառով ես զրկում եմ ինձ խմորեղենից ու քաղցրից: Կազմվածքը պետք է պահպանել, թե չէ ամուսինս էլ չի սիրի ինձ: Բացի դրանից, աղջկաս համար էլ վատ օրինակ կլինեմ»:

Մինչև օրս Նորան ոչ մի համերգ բաց չի թողնում: Իսկ գրական նորությունները նա կարդում է աղջկան հավասար: «Ի՞նչ անել: Եթե կամենում եք երեխաների հետ ընդհանուր լեզու գտնել, ապրեցեք նրանց հետաքրքրություններով: Իհարկե, երեխաներս ինձ չեն արհամարհի, եթե ես չկարդամ մեր սիրած գրողի վերջին երկը: Սակայն այդ ժամանակ ես ուղղակի չեմ հասկանա՝ ինչո՛վ են նրանք հիանում, ինչի՛ շուրջ են վիճում»:

Կիրակին այստեղ, ըստ սահմանված կարգի, «նվիրական օր է»: Նվիրական այն առումով, որ բոլոր գործերը փոխանցվում են հաջորդ օրվան: Կիրակին հանգստյան օր է: Ընտանյոք հանդերձ դուրս են գալիս զբոսանքի: Ամռանը քաղաքից դուրս, ծայրահեղ դեպքում՝ զբոսայգի: Սովորաբար նրանց միանում են և ընկերները: Բաց դաշտում կապում են ցանցը, վոլեյբոլ խաղում, կամ փետրագնդակ... Տղամարդիկ սիրում են ֆուտբոլ խաղալ: Ձմռանը նրանց միջանցքում իրենց մշտական տեղն ունեն 4 զույգ դահուկները...

Իհարկե, նրանք գնում են նաև լողավազան: Չորսով: Եվ երբեք չեն հիշում այն անախորժությունը, որ կապված էր սպորտի այս անմեղ ձևի հետ:

Մի անգամ Սևանում էին, Սուրենի հենց այն աշխատակցուհու հետ, որը մի ժամանակ պատճառ էր դարձել նրանց գժտության: Նորան երեխաների հետ միասին մտնում էր ջուրը և կտրելով լճի երկնագույն հայելին՝ լողանցում էին միմյանց: «Ի՞նչ քաջն է կինդ,— ասում էր Սուրենին աշխատակցուհին, ափին նստած.— իսկ ես, ահա, լողալ չգիտեմ»: Նա, իհարկե, մոռացել էր իր երբեմնի ասածը: Իսկ Սուրենը նայում էր իր երեք ուրախ, արևահարված լողորդներին ու մտածում... Ո՛չ, ինչ խոսք, ես չգիտեմ, թե ինչ էր մտածում նա այն ժամանակ: Իսկ հետո ինձ ասաց.

— Անկեղծորեն խոստովանում եմ. ես շատ երջանիկ եմ իմ ընտանեկան կյանքում: Երբեմն նույնիսկ մի փոքր ամաչում եմ: Շրջապատում այնքա՜ն շատ ես լսում անհաջողակ ամուսնությունների, ամուսնալուծությունների մասին: Իսկ մեզ մոտ այսպես լավ եղավ:

Եվ մտածում եմ. լավ չէ բանը: Ավելի շատ՝ ստեղծագործելը: Այո՛, և՛ տղամարդը, և՛ կինը, սիրելով միմյանց ու միացնելով իրենց կյանքը, մեծ ջանքեր են գործադրում իրենց սերը պահպանելու համար: Ընտանիքի կերտման այս ստեղծարար պրոցեսում միաձուլվում են նրանց բնավորությունները, նրանք դառնում են ավելի համերաշխ: Հարցրե՛ք նրանց՝ մոռացվե՞լ է սերը: Նրանք շատ կզարմանան: Հակառա՜կը: Տարիների հետ այն դարձել է ավելի խոր, ավելի հարատև:



# ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՔԻԱԹՆԵՐ

**ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻՆ** չափազանց հատուկ է հեքիաթներ ստեղծելը,— գրել է Մարիետա Շահինյանը 1933 թ. հայկական հեքիաթների ռուսերեն ժողովածուի «Ներածականում»: Այդ դրույթի լավագույն ապացույցը կարելի է համարել Հայկական ժողովրդական հեքիաթների 10-հատորյակը, որը լույս է ընծայել ՀՍՍՀ ԳԱ հրատարակչությունը: Դժվար է գերագնահատել այդ փաստի հասարակական ու գիտական նշանակությունը: Բանահյուսական ստեղծագործությունը, որ դարեր շարունակ համարվել է «ժողովրդի հույսերի ու ակնկալիքների» արտահայտությունը, դարձավ մատչելի և՛ բանասեր-հետազոտողին, և՛ ազգագրագետին, և՛ կուլտուրայի ուսումնասիրությամբ զբաղվողին, և՛, վերջապես, բոլոր նրանց, ովքեր սիրում են հեքիաթը, ովքեր մշտապես հիանում են ժողովրդի անսպառ երևակայությամբ, նրա լեզվի ապշեցուցիչ հարստությամբ ու դիպուկությամբ:

Հիշյալ հրատարակությունն սկսվել է 21 տարի առաջ (1959 թ.), ակադեմիկոս Ի. Ա. Օրբելու խմբագրությամբ: Ճիշտ է, 25-հատորյակի համար նախանշված ծրագիրը դեռ հեռու է իրագործումից, սակայն կատարվածը շատ նշանակալի է և որոշ եզրահանգումների հնարավորություն է ընձեռում:

Տասը հատորներում (որոնք լույս են տեսել հետևյալ հերթականությամբ— I, II հատորները 1959 թ., III-ը՝ 1962 թ., IV-ը՝ 1963 թ., V-ը՝ 1966 թ., VI-ը՝ 1973 թ., VII-ը՝ 1979 թ., VIII-ը՝ 1977 թ., IX-ը՝ 1968 թ., X-ը՝ 1967 թ.) հրապարակված են 1377 տեքստեր, որոնցից 1180-ը՝ առաջին անգամ: Եթե դրան ավելացնենք, որ բնագրերի նշանակալի մասն արդեն հրատարակվել է հեղափոխությունից առաջ և փոքր տպաքանակի պատճառով դրանք դժվար մատչելի են, ապա պարզ կդառնա, որ այս տասհատորյակի տպագրությամբ գիտական լայն շրջանառության մեջ է դրվել ազգագրական մեծ նշանակություն ունեցող վիթխարի նյութ:

Հայկական ժողովրդական հեքիաթների ներկա ժողովածուի նպատակն է ներկայացնել հայկական հեքիաթներն առանց բնագրային որևէ փոփոխության, որպեսզի այն հիմք հանդիսանա բազմակողմանի ուսումնասիրության համար, ինչպես նաև հարուստ նյութ ընձեռի ազգագրության, պատմության, լեզվաբանության և մի շարք այլ բնագավառների հետազոտողներին:

Ժողովածուն հրատարակելիս ամենից առաջ հարկ է լուծել նյութերի դասակարգման հարցը. այն կարելի է կատարել մի քանի ձևով— ըստ սյուժետախմբերի, ըստ բանահավաքների ու հեքիաթասացների և, վերջապես, ըստ ազգագրական, աշխարհագրական շրջանների: Գրախոսվող հրատարակությունում ընդունվել է վերջին սկզբունքը, որը, ինչպես գրում են կազմողները, բացատրվում է հայ ժողովրդի պատմական ճակատագրի առանձնահատկություններով և արխիվային նյութերի վիճակով, որոնք առաջին իսկ գրառումից ունեին տեղային բնույթ:

Ելնելով այդ սկզբունքից՝ հրատարակված նյութը դասավորված է հետևյալ կերպ. յուրաքանչյուր հատոր բովանդակում է որևէ շրջանում գրառված բնագրեր: Այսպես. I—III հատորներում տպագրված են Այրարատյան հեքիաթները, IV-ում՝ Շիրակի, Բասենի, Ջավախքի, V-ում՝ Արցախի, Լեռնային Ղարաբաղի, VI-ում՝ Արցախ—Ուտիքի, Ղարաբաղի, Գանձակ—Տավուշի, VII-ում՝ Արցախ—Սյունիքի, Ղարաբաղ—Զանգեզուրի, VIII-ում՝ Գուգարքի (Լոռի), IX-ում՝ Բագրևանդի, Ալաշկերտի, Մանազկերտի, X հատորում՝ Մուշ—Բուլանըխի հեքիաթները: Հաջորդ հատորները, որոնց մի մասն արդեն պատրաստ է տպագրության (XI, XII, XIII...) կնվիրվեն պատմական Հայաստանի (Տուրուբերանի, Վասպուրականի) շրջաններին և արտասահմանյան գաղթօջախներին:

Տեքստերի նման դասավորությունն ունի մի շարք առավելություններ. ակնբախ է դառնում յուրաքանչյուր ռեգիոնի հեքիաթային բանահյուսության ամբողջականությունը: Այս կամ այն ռեգիոնում հավաքված հեքիաթներով կարելի է դատել ինչպես տվյալ ազգագրական շրջանի ռեպերտուարի ժանրային և սյուժետային կազմի, նույնպես և բանահավաքի գործունեության բնույթի մասին այդ ռեգիոնում, միկրոշրջանում կամ գյուղում:

Հիրավի, վիթխարի աշխատանք է կատարել

բանահավաքների ավագ սերունդը: Հայ կուլտուրայի պատմության մեջ անմոռաց կմնան Բահաթրյան եղբայրների, Ս. Հայկունու, Տ. Նավասարդյանցի, Ա. Մխիթարյանցի, Ն. Մարտիրոսյանի, Ս. Մովսիսյանի (Բենսե) և այլոց գործունեությունը: Սակայն առաջին հերթին հարկ է հիշատակել, իհարկե, ականավոր գիտնական, ազգագրագետ և բանահավաք Երվանդ Լալայանին: Նրա ջանքերի ու կազմակերպած գիտարշավների շնորհիվ գրի առնվեցին և ապագա հետազոտությունների համար պահպանվեցին Այրարատի ու Գուգարքի, Ջավախքի ու Բագրևանդի հեքիաթները: Լալայանի և նրա արշավախմբի մասնակիցների կատարած վիթխարի աշխատանքի վկայությունն են I, II, IV, VIII և IX հատորներում ամփոփված տեքստերը:

Ըստ ազգագրական շրջանների, ինչպես և ըստ գյուղերի դասավորված նյութերը հնարավորություն են ընձեռում առանձնացնելու նույն հեքիաթասացներից գրառած տեքստերը: Դրանց վերլուծությունը թույլ է տալիս բացահայտել ինչպես յուրաքանչյուր հեքիաթասացի ռեպերտուարի առանձնահատկությունները, նույնպես և նրա անհատական պատմելաձևը՝ լեզուն և ոճը:

Բոլոր հատորների կառուցվածքը միատեսակ է: Ամեն մի հատոր ունի իր համառոտ առաջաբանը, որին հաջորդում են տեքստերը (հիմնականներն ու տարբերակները), բարբառային բառերի բառարանը, բնագրերի ծանոթությունները, հեքիաթասացի հեքիաթների ցանկը և գրառման վայրը, հեքիաթների այբբենական ցանկը:

Հատորի առաջաբանը պատմաաշխարհագրական ակնարկ է ռեգիոնի մասին, տեղեկություններ այն բանահավաքի վերաբերյալ, որի գրառումներն ընդգրկված են հատորում, տվյալ բարբառի բնութագիրը, ցանկն այն թեմաների, ըստ որոնց խմբավորված են հեքիաթները:

Տեքստերը՝ հիմնականներն ու տարբերակները, դասավորված են հետևյալ հերթականությամբ. նախ՝ հրաշապատում հեքիաթներն են, ապա՝ իրապատումը, հեքիաթ-անեկդոտները: Տարբերակները տրված են ծանոթագրություններում. դրանց մեջ կան և թերի, կիսատպռատ, վատ պատմված բնագրեր: Տեքստի տպագրության ժամանակ կազմողները հետևվում են մի սկզբունքի, բացառվում է խմբագրական ամեն մի աշխատանք: Տեքստը տպագրվում է այնպես, ինչպես թողել է բանահավաքը— բոլոր թերություններով, պատմվածքի շարադրանքի խախտումներով, անունների, թվերի խառնաշփոթությամբ, որոնք մեկնաբանվում են տողատակի ծանոթագրություններում: Եթե հեքիաթասացը չի վերնագրել տեքստը, ապա այդ ևս նշվում է:

Տեքստերի ծանոթագրություններն ունեն արխիվային նյութերի վիճակը բնութագրող կարճ ներածականներ, ապա յուրաքանչյուր համարին կցվում են տեղեկություններ առաջին հրատարակության և վերատպությունների (եթե այդպիսիք եղել են), հեքիաթասացի, գրառման կոնկրետ վայրի և ժամանակի վերաբերյալ: Այդ վերջին տվյալները, սովորաբար, բանահավաքինն են: Ցավոք, ոչ բոլոր բանահավաքներն են (մասնավորապես XIX դարի վերջերին) տեքստերին կցում տեղեկատու լրիվ տվյալներ: Նման տեղեկությունների կարիքն այժմ շատ է զգացվում, երբ փորձում ենք պարզել հեքիաթասացների սոցիալական կազմը և հեքիաթների տեղաշարժը:

Այժմ նշենք ուսումնասիրության առավել հետաքրքրական ու հրատապ այն ասպեկտները, որոնց համար սկզբնաղբյուր կարող է ծառայել հայկական հեքիաթների ժողովածուն: Անշուշտ, ամենից առաջ հետազոտման առարկա պետք է դառնան բուն տեքստերը: Նման հետազոտման սկիզբը դրված է հենց հրատարակության մեջ— նյութերի դասավորվածությունը, գիտական մեկնաբանությունները, տարբեր կարգի տեղեկություններ: Կազմողները բազմաթիվ բնագրերի հեղեղից առանձնացրել են հեքիաթների տեսակները— հրաշապատում, իրապատում, մի շարք հատորներում՝ նաև երգիծական, կենդանիների մասին հեքիաթներ: Նման ծավալուն նյութի վրա այսպիսի աշխատանք կատարվում է առաջին անգամ: Առաջին երեք հատորներում փորձ է արվել խմբավորել հեքիաթներն ըստ թեմաների: I—IV, V—VII հատորներն ունեն հատուկ և աշխարհագրական անունների ցանկեր: III, IV, VII, VIII հատորները՝ առարկայական ցանկեր:

Հեքիաթներն ուշագրավ երևույթ են ինչպես ընթերցողների լայն շրջանի, նույնպես և մասնագետների համար. ուստի հարկ է հաշվի առնել ժամանակակից հեքիաթագիտության նվաճումները, մասնավորապես, հեքիաթային սյուժեների գիտական դասակարգման և համակարգման առումով: Ցավոք, ՀՍՍՀ ԳԱ հրատարակած հայկական հեքիաթների հարուստ ժողովածուն զուրկ է սյուժետային ցանկից, միայն կարող է պատասխանել այն հարցին, թե ո՛ր հեքիաթներն են պատմվում հայերեն, ո՛ր սյուժեներն են առավել տարածված ռեպերտուարում, ո՛ր սյուժեները կարելի է համարել ավանդական և այլն: Թեմաների ու սյուժեների այն ցուցակը, ըստ որոնց խմբավորված են հեքիաթները I, II, III հատորներում, չի կարող փոխարինել ցանկին, քանի որ դա պատկերացում չի տալիս ժողովածուի



կոնկրետ բովանդակության մասին: Մի քանի խմբեր այնքան անորոշ ու մոտավոր են սահմանված, որ դրանց կարելի է վերագրել ամենատարբեր տեսակի սյուժեներ: Օրինակ, «Նենգ, անարդար ու դաժան վրիժառուն միշտ պատժվում է»: «Ծնողներից հեռանալը, բազմաթիվ դժվարություններ հաղթահարելը և ընտանիքի մոտ վերադառնալը», «բարությունն ու երախտիքը միշտ փոխհատուցվում են» և այլն:

Ժողովածուի սյուժետային կազմը պետք է ակնբախ լինի, որպեսզի ամեն մի ընթերցող, լինի նա գիտնական-բանահավաք, թե պարզապես ժողովրդական ստեղծագործության գնահատող, կարողանա հեշտությամբ կողմնորոշվել դրանում, բազմապիսի պատումներից գտնել հենց այն, ինչ իրեն պետք է: Ազգային հեքիաթային ֆոնդի հետազոտման խնդիրը չի կարող լուծվել առանց Աարնե-Թոմսոնի միջազգային կատալոգի գիտական դասակարգման, կատալոգ, որի մասին «Արևելասլավոնական հեքիաթների սյուժեների համեմատական ցանկ» (ռուս.) կազմողները գրել են. այն մի գործիք է, առանց որի ներկայումս ոչ մի հեքիաթաբան չի կարող ուսումնասիրել հեքիաթը՝ ինչ տեսանկյունով կամ ասպեկտով էլ այն լինի (տե՛ս Л. «Наука», 1979, стр. 11): Մեր երկրում վերջին տարիներս ակտիվացել են ազգային ուղեցույցների կազմման աշխատանքները. անցած տարիներին լույս ընծայված ՍՍՀՄ ժողովուրդների՝ էստոնական, լատիշական, լիտվական, մորդովական և ռուսական հեքիաթների ցանկերին այժմ կարելի է ավելացնել վերջերս հրապարակված վրացականը, ինչպես և լրացված ու վերանայված լատիշականը: Ցավոք, հայկական հեքիաթների նման ցանկ չունենք, չնայած 30-ական թվականներին արդեն այդ ասպարեզում որոշ գործ արվել էր՝ 1933 թ. «Համաշխարհային գրականության գանձարան» մատենաշարով Մոսկվայում լույս տեսավ Հայկական հեքիաթների երկրորդ, զգալի չափով լրացված և ուղղված հրատարակությունը: Դրանց թարգմանությունը կատարել է Յա. Ս. Խաչատրյանցը, ներածականը գրել է Մ. Ս. Շահինյանը: Գիտական մեկնաբանությունները ռուս ճանաչված բանագետ Ն. Պ. Անդրեևինն են: Վերջինս թարգմանել էր և համալրել Աարնեի Ցանկը ռուսերեն: Այդ ցանկի նմանությամբ նա կազմել է ժողովածուում զետեղված հայկական հեքիաթների ցանկը և բերել դրանց ռուսական զուգահեռները: Սյուժեների դասակարգման աշխատանքը շարունակել է Ա. Տ. Ղանալանյանը իր Հայկական ժողովրդական հեքիաթներ գրքում (Ե., 1965 թ., ռուսերեն):

Սակայն կատարվածը հույժ անբավարար է. այժմ անհրաժեշտ է կատալոգ, ուր ներառվեն թեկուզ գրախոսվող 10 հատորներում տպագրված 1377 տեքստերը: Անշուշտ, ի հայտ կգան շատ հետաքրքրական երևույթներ և՛ սյուժեների, և՛ տարբերակների ոլորտում: Իսկ հիմնականը՝ ազգային կատալոգի ստեղծումը հնարավորություն կընձեռի հայկական հարուստ նյութը միջազգային ասպարեզ հանելու, որը խիստ անբավարար է ներկայացված Թոմսոնի Ցանկում:

Այսպիսով, սյուժեների ազգային կատալոգի ստեղծումը մի կողմից կսկզբնավորի գիտական հիմունքներով սիստեմավորված հայկական հեքիաթների ուսումնասիրման նոր փուլ, մյուս կողմից՝ մեծարժեք ներդրում կհանդիսանա միջազգային հեքիաթագիտության բնագավառում:

Հրապարակված տեքստերի գրառումների ժամանակն ընդգրկում է ավելի քան 100 տարի՝ 1860—1960 թթ.: Ուսումնասիրելով ժողովածուն՝ հավաստի նյութի հիման վրա կարելի է ցույց տալ հայկական բնակչության տարբեր շրջանների հեքիաթային ավանդույթները, դրանց զարգացումը բավական երկար ժամանակահատվածում: Ամեն մի տասնամյակի, պատմաազգագրական ամեն մի ռեգիոնի գրառումների, ինչպես նաև հեքիաթասացների թվի հաշվառումը կտա հետաքրքրական ինֆորմացիա այն մասին, թե ինչպես է բանավոր կուլտուրան ժամանակաբաշխվում, տեղաբաշխվում և տարածվում այս կամ այն սոցիալական միջավայրում:

Վերլուծական հետազոտության նման սիստեմը, որը մշակել է բանասիրական գիտությունների դոկտոր Ի. Գ. Լևինը 1970 թ., ընդունվեց Հայկական ՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտում և հաջողությամբ կիրառվում է արխիվային նյութերի ընդգրկման, կարգավորման ու դասակարգման, ամենատարբեր ինֆորմացիաներ քաղելու, ինչպես և կատալոգներ, աղյուսներ, ժողովածուներ կազմելու համար: Կարծում ենք, որ այդ սիստեմը հնարավորություն կընձեռի նորովի, նոր առումներով ուսումնասիրելու հեքիաթների այս 10 հատորյակում ամփոփված նյութերը:

Բանահյուսական ստեղծագործության հրատարակումը կուլտուր-պատմական մեծ նշանակություն ունեցող գործ է, որին հաջողությամբ է ձեռնամուխ եղել Հայկական ՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի աշխատակիցների կոլեկտիվը (գլխ. խմբագիր՝ Ա. Մ. Նազինյան, կազմողներ՝ Մ. Մկրտչյան, Վ. Սվազլյան, Ռ. Գրիգորյան, Մ. Գրիգորյան-Սպանդարյան, Մ. Առաքելյան, Ս. Տարոնցի): Ցանկանք, որ հաջողությամբ, առանց ձգձգումների իրականացվի մտահղացված ծրագիրը:

ՍՅՈՒԶԱՆՆԱ ԳՈՒԼԱԿՅԱՆ

Սովետական մարդկանց բարեկեցության աճը բուրժուական գաղափարախոսները դիտում են որպես մերձեցում «ամերիկյան ապրելակերպին», իսկ նորանձև սանրվածքը՝ որպես «արևմտյան իդեալների» նկատմամբ հակման դրսևորում: Ցույց տալով, թե ինչպես նման պնդումների հեղինակները կամենում են ցանկալին ներկայացնել իբրև իրականություն, Վ. Տ. Լիսովսկին հանգամանորեն անդրադառնում է բուրժուական աշխարհի՝ երիտասարդության իրական կյանքից շեղող մի քանի շարժումների բնութագրմանը: Արևմուտքում ավելի ու ավելի շատ երիտասարդներ են սկսում հասկանալ, որ անարխիստական խռովությունը տանում է դեպի փակուղի, որ ճիչերի ու աղմուկի միջոցով չես կարող փոխել բուրժուական հասարակարգը, որ սոցիալական անարդարությունը չի վերանա, եթե նույնիսկ ողջ երիտասարդությունը հագնի «մոդայիկ վերնաշապիկներ և հիպիների զանգակ-շալվարներ»:

Ավելի ու ավելի շատ երիտասարդներ են Արևմուտքում իրենց ապագան կապում կոմունիզմի հետ, համոզվելով, որ միայն նա է ի վիճակի լուծելու արդիականության սուր պրոբլեմները:

Ժամանակակից սովետական երիտասարդը զինված է կոմունիստական աշխարհայացքով, առանց որի այսօր չի կարելի լինել իսկական ժամանակակից մարդ: Մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը ենթադրում է գիտելիքների լուրջ և սիստեմատիկ յուրացում, հիշողության, գիտելիքների հարստացում: Կոմունիզմը, որպես համակողմանի զարգացած, ներդաշնակ անհատների հասարակություն, մարմնացումն է ազատության ու հումանիզմի, բարու և արդարության բարոյական ազնիվ իդեալների:

Վ. Ի. Լենինը միշտ հիշեցնում էր երիտասարդության և ավագ ընկերների միջև ամուր կապեր ստեղծելու անհրաժեշտության մասին: Հետևելով Լենինի պատգամներին՝ կուսակցությունն ապահովում է սերունդների միասնությունն ու հաջորդականությունը: Դա միտում է այն նպատակը, որպեսզի երիտասարդությունը կարողանա հաջողությամբ կատարել ավագների գործը շարունակողի իր դերը: «Մեր պարտքն է,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— նոր սերունդներին հաղորդել մեր քաղաքական փորձը, տնտեսական և կուլտուրական շինարարության պրոբլեմների լուծման փորձը, ղեկավարել երիտասարդության գաղափարական դաստիարակությունը, ամեն ինչ անել, որպեսզի նա ըստ արժանվույն շարունակի իր հայրերի գործը, մեծ Լենինի գործը»:

ՍՄԿԿ-ն խնդիր է դնում՝ ապահովել երիտասարդության առավել ակտիվ մասնակցությունը մեր հասարակության կյանքի բոլոր հարցերի լուծմանը, ավելի լայնորեն զարգացնել նրա նախաձեռնությունը: Կուսակցությունը հատուկ ուշադրություն է նվիրում երիտասարդության կոմունիստական գաղափարայնության և սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելուն:

Վ. Տ. Լիսովսկու Ի՞նչ է նշանակում լինել ժամանակակից գիրքն օգտակար է մեր երիտասարդության համար: Նման գրքերը համակում են մարդուն սկզբունքայնությամբ, ազնվությամբ, անկեղծությամբ, բարյացակամությամբ, սոցիալական պատասխանատվության զգացումով, մղում նրան ակտիվ կենսադիրքորոշման, նպատակասլացության, ինքնաքննադատության, աշխարհում տեղի ունեցող իրադարձությունների դասակարգային գնահատման:

Ցանկանք, որ հրապարակի վրա նման գրքեր ավելի շատ լինեն:

ԶՈՒԼԻԵՏԱ ԱՎԱԳՅԱՆ


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Գ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ), ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ.

Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04002  Պատվեր 1904  Թղթի չափսը 70×108 1/16:  Տիրաժ՝ 15.840  Գինը՝ 20 կոպ.*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ:  Ստորագրված է տպագրության 8/IX 1980 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*




## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 30: Հուլիս 1916—փետրվար 1917: «Հայաստան» հրատ., 1980:*

ՀՍՍՀ գործող օրենսդրության համակարգված ժողովածու: *Հ. 17: Հոդված XXIV. Հասարակական կարգի պահպանության վերաբերյալ օրենսդրություն: Հոդված XXV. Վարչական պատասխանատվության վերաբերյալ օրենսդրություն: «Հայաստան» հրատ., 1980:*

Գրականությունը և ժամանակը: *Սովետահայ գրականության զարգացման հարցեր: Ե., ԳԱ հրատ., 1980:*

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Սովետական Հայաստանի բանվոր դասակարգի ձևավորումը և զարգացումը (1920—1940): *Ե., ԳԱ հրատ., 1980:*

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Սոցիալ-տնտեսագիտական միտքը բոլշևիկյան հայ պարբերական մամուլում: *(Սկզբներից մինչև 1917 թվականը): ԵՊՀ հրատ., 1980:*

Հ. ՍԱՄԱՐՅԱՆ— Իտալական ազգային-ազատագրական շարժումները և նրանց արձագանքները հայ իրականության մեջ: *Ե., Խ. Աբովյանի անվ. ՀՄԻ հրատ., 1980:*

Ի. ՍՆԽՉՅԱՆ— Հայ ազատագրական շարժման կողմնորոշման պատմագրությունից: *Ե., Խ. Աբովյանի անվ. ՀՄԻ հրատ., 1980:*

Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Սոցիալիստական արդյունքը տնտեսական հարաբերությունների համակարգում: *(Տեսության հարցեր): «Հայաստան» հրատ., 1980:*

Ա. ՄԻՐՍԵԿ— Բանվորի տնտեսագիտական բառարան-տեղեկատու: *«Հայաստան» հրատ., 1980:*

Ն. ՊԵՏՐՈՎԻՉ— Զրույցներ գյուտարարության մասին: *«Հայաստան» հրատ., 1980:*

Г. РОМАНОВ—**Избранные речи и статьи.** М., Политиздат, 1980.

К. ДЕМИРЧЯН—**Советская Армения.** М., Политиздат, 1980.

**КПСС. СПРАВОЧНИК.** Изд. 4-е, доп. и перераб. М., Политиздат, 1980.

**История Коммунистической партии Советского Союза.** Изд. 5-е, доп. М., Политиздат, 1980.

А. СОБОЛЕВ—**Ленинизм и мировой революционный процесс.** М., «Знание», 1980.

**Революционное наследие Коммунистического Интернационала.** Научная конференция, посвященная 60-летию основания Коммунистического Интернационала. Москва, 16 марта 1979 г. М., Политиздат, 1980.

**СССР.** 100 вопросов и 100 ответов. М., изд. АПН, 1980.

**Рассказы о партии.** В 4-х т. Т. I. Изд. 3-е, доп. М., Политиздат, 1980.

**Рабочий класс в мировом революционном процессе.** Ежегодник. М., «Наука», 1980.

В. РОГОВИН—**Социальная политика в развитом социалистическом обществе.** Направления, тенденции, проблемы. М., «Наука», 1980.

**Учение, преобразующее мир.** М., Политиздат, 1980.

**Ленинская теория социалистической революции и современность.** Изд. 3-е, доп. М., Политиздат, 1980.

**Международное рабочее движение.** Справочник. М., Политиздат, 1980.

ЛАРИСА КУЗНЕЦОВА — **Женщина на работе и дома.** М., Политиздат, 1980.

**Молодые хозяева земли.** Коллективный рассказ об опыте Костромской областной партийной организации по подготовке, воспитанию и закреплению на селе кадров массовых профессий. М., Политиздат, 1980.

**Экономические проблемы развитого социализма. Опыт СССР и ПНР.** Коллективная монография. М., «Наука», 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԻՆՔՆԱՍՊԱՍԱՐԿՈՂ ԱՆՑԱՍԵՆՅԱԿ

*Գործարանի անցաթողման սենյակում կան մետրոյի պտուտադռնակներ հիշեցնող փոքր սյուներ։ Բայց գրամի փոխարեն աշխատանքի շտապող բանվորները ճեղքի մեջ են գցում անցաթուղթ-քարտերը, որոնց վրա նշված է գործարանում աշխատողների անձնական ծածկագիրը։ Էլեկտրոնային հաշվիչ մեքենան, որին միացած են բոլոր սյունիկները (դրանց թիվը կարող է հասնել մինչև 128-ի), հաշվառողի փոխարեն հաշվառում է յուրաքանչյուր աշխատողի գալու և գնալու ժամանակը։*

*Այսպես է բանում* АСКОП—200-*ը, որը մշակվել է Սոֆիայի հաշվիչ տեխնիկայի գործարանում։ ԷՀՄ-ը կարող է «դեմքով ճանաչել» քարտ-անցաթուղթ ունեցող 100 հազար հոգու։ Ձեռնարկության կամ հիմնարկության ղեկավարի առանձնասենյակում կա սեղանաշարով տերմինալ։ Տերմինալի ճեղքի մեջ գցելով իր անցաթուղթը՝ ղեկավարը կարող է մեքենային հաղորդել, որ այսինչ համարի անցաթուղթ ունեցողները կա՛մ գործուղման մեջ են, կա՛մ նրանց թույլատրված է որոշակի ժամանակով դուրս գալ տերիտորիայից անձնական, ծառայողական գործերով։*

## ՀՐԱԿԱՅՈՒՆ ԵՎ ՋԵՐՄԱԴԻՄԱՑԿՈՒՆ

*Արևմտագերմանական «Դրեգերվերկ» ֆիրման թողարկում է սառեցնող կուրտկաներ՝ տաք արտադրամասերում աշխատողների համար։ Բանվորի մեջքին ամրացված ռեզերվուարը լիցքավորվում է չոր սառույցով և մինչև* C *60 աստիճան ջերմաստիճանում մեկ ու կես ժամով ապահովում բավարար սառնություն։ Սառնություն է պահպանվում և սաղավարտի մեջ։*

*Մինչև այժմ ամենահրակայուն նյութը համարվում էր ասբեստը։ Բայց մինչև 500—700 աստիճան տաքացման դեպքում այն կորցնում էր ամրությունը (գոլորշիանում էր բյուրեղացած ջուրը), իսկ մոտ 1500 աստիճանում՝ հալվում։ ԱՄՆ-ում ստեղծված կերամիկական ալյումինաբորասիլիկատային նրբաթելը երկար ժամանակ դիմանում է մինչև 1400 աստիճան ջերմության, իսկ կարճ ժամանակով՝ մինչև 1650։ Այդ նրբաթելից պատրաստված գործվածքը կկիրառվի տիեզերական տեխնիկայում։*

## ԱՎԵԼԻ ԱՐԱԳ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ

*Ռյազանի մարզի «Գյուղտնտեխնիկա» միավորումում պահեստային մասերի և դետալների ստացման, հանձնման, ընդունման ու հաշվառման բոլոր գործողությունները կատարում է կառավարման ավտոմատ համակարգը։ Դետալների վերաբերյալ անհրաժեշտ տեղեկությունները (դարակների տեղը, մասերի քանակը, գինը) պահվում են ԷՀՄ-երում։ Եթե պահանջվում է այս կամ այն դետալը, օպերատորը հավաքում է անհրաժեշտ ծածկագիրը, էկրանի վրա կարդում հայտնված տեղեկությունները և անում համապատասխան կարգադրություն։ Այժմ սպառողները շատ արագ են ստանում դետալները. պատվիրատուների պահանջմունքների մասին օպերատիվ տեղեկությունների առկայությունը հնարավորություն է ընձեռում ապահովելու վերանորոգման արհեստանոցների անխափան մատակարարումը։*

## ԽՈՍՈՂ ՋԵՐՄՈՒԹՅՈՒՆ

*Շվեյցարացի մասնագետներն ստեղծել են ինֆրակարմիր ճառագայթներով բանող հեռախոս։ Այն հատկապես հարմար է նրանց համար, ովքեր սիրում են հեռախոսային խոսակցության ժամանակ քայլել սենյակում։ Սարքն ունի հաստատուն մաս, որն ամրացվում է, օրինակ, պատին, և լսափող, որն ապարատի հետ կապող լար չունի։ Իմպուլսները հաղորդվում են լսափողին ինֆրակարմիր ճառագայթների տեսքով և ընդունվում են հեռախոսի հաստատուն մասով, որտեղից էլ սովորական ճանապարհով հաղորդվում են ավելի հեռու։*